### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 ՀՈՒՆԻՍ . 1968
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание



# ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՅՈՒՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Սովետական ժողովուրդն արժանավայել գործերով սկսեց սոցիալիստական հայրենիքի գոյության երկրորդ հիսնամյակը: Կոմունիստական կուսակցությունն ընթացիկ հնգամյակի վիթխարի խնդիրների լուծման նպատակով մոբիլիզացնում է ժողովրդի ընդերքում կուտակված ստեղծագործական հսկայական ուժերը: Առաջիկայում մեր երկիրը նորանոր բարձունքներ կնվաճի սովետական մարդկանց միահամուռ կամքով, նրանց մտքի ու բազկի լարումով:

Մեծ ու դժվարին են մեր առջև կանգնած խնդիրները, որոնք սակայն լուծելի են և համապատասխան մեր հնարավորություններին: Սովետական ժողովուրդն ի վիճակի է նախատեսված ժամկետին կենսագործելու կուսակցության մեծ նախագծումները: Իսկ դա պահանջում է մարդկանց ուժերի առավելագույն լարում: Չէ՛ որ հաջողությունները նվաճվում են համառ աշխատանքով:

Մեր երկրում կոմունիզմի կառուցման համար ծավալված համաժողովրդական պայքարում կոմունիստական կուսակցությունը հանդես է գալիս իր շարքերի անխախտ միասնությամբ և երկաթյա կարգապահությամբ, անսահմանորեն հավատարիմ մնալով մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, Վլադիմիր Իլյիչ Լենինի թողած ավանդներին:

Ինչպես միշտ, մեր օրերում նույնպես կոմունիստական կուսակցության ստեղծագործական վիթխարի գործունեությունը խարսխված է մարքս-լենինյան տեսության կայուն հիմքերի վրա: Նա շարունակում է անշեղորեն հետևել Վ. Ի. Լենինի այն ցուցումին, որ *առաջավոր մարտիկի դերը կատարել կարող է միայն այն կուսակցությունը, որը ղեկավարվում է առաջավոր տեսությամբ:*

Հեղափոխական տեսությունը աշխարհի ճանաչողության ու վերափոխման հզոր գործիք է, այն ճանապարհ է հարթում պրակտիկայի համար, լուսավորում սովետական մարդկանց առաջընթաց ուղին: Ահա թե ինչու սոցիալիստական ու կոմունիստական շինարարության բոլոր էտապներում կուսակցությունը հսկայական աշխատանք է ծավալել մարքսիզմ-լենինիզմի տեսության պրոպագանդման ուղղությամբ, իր անդամների ջանքերը նպատակաուղղել է մասսաների գաղափարական ու քաղաքական դաստիարակության չափազանց կարևոր գործին:

Մարքս-լենինյան տեսության բազմակողմանի ուսումնասիրությունը թելադրված է կյանքի պահանջներով: Չէ՛ որ վիթխարի չափերով աճել է տնտեսությունը, մեծ բարձունքների են հասել սովետական ժողովրդի կուլտուրան, գիտությունը, արվեստը: Այսպիսի պայմաններում հասարակական կյանքի ղեկա-

վարությունը, բնականաբար, շատ է բարդանում: Կյանքը նորանոր, ավելի մեծ պահանջներ է ներկայացնում կուսակցական, սովետական, տնտեսական կադրերին, որոնց խորթ է նեղ գործամոլությունը, հիվանդոտ տեղայնությունը, գործին ոչ պետական մոտեցումը: Նոր պայմաններում անհնար է բավարարվել գիտության միայն այս կամ այն բնագավառից ստացած էմպիրիկ գիտելիքներով: Բնության ու հասարակական կյանքի երևույթները կարող են ճիշտ բացատրվել և նպատակահարմար օգտագործվել միայն այն դեպքում, երբ գործի գլուխ կանգնած մարդիկ խորապես տիրապետում են մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, ունակ են գիտականորեն ըմբռնելու և ճշմարտացիորեն իմաստավորելու կյանքի բազմապան երևույթները:

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կոմունիստական դաստիարակության պրոցեսում մարդը չպետք է պասսիվ օբյեկտի դեր խաղա, որի վրա ներգործում են բացառապես դրսից, իր կամքին հակառակ ձևավորում նրա գիտակցությունը: Այդպիսի պատկերացումն արմատապես սխալ է: Ամեն մի սովետական մարդ պետք է ինքը խորապես շահագրգռված լինի գիտելիքների ձեռքբերմամբ և ձգտի ձևավորվել ու հաստատուն հիմքերի վրա խարսխել կոմունիստական իր համոզմունքը: Կոմունիստական համոզմունքը մարդուն դարձնում է արիական, կարգացնում և բյուրեղացնում է նրա այնպիսի հատկություններ, ինչպիսիք են՝ սովետական հայրենասիրությունը, քաղաքացիական պարտքի զգացումը, խոր հավատը կուսակցության և ժողովրդի արդար գործի հաղթանակի նկատմամբ, ապնվությունը, գործիմացությունն ու պայծառ գաղափարայնությունը: Կոմունիստական աշխարհայացքի մշակման ու կոփման տևական գործը պահանջում է թե՛ մարքսիզմ-լենինիզմի քրտնաջան ուսումնասիրություն, թե՛ բեղմնավոր պրակտիկ գործունեություն կոմունիզմի կառուցման տարբեր մարզերում:

Կոմունիստների գիտական աշխարհայացքի մշակման գործում հատկապես մեծ է կուսակցական կրթության դերը: Ահա թե ինչու կոմունիստների ուսուցումը դարձել է կուսակցական կոմիտեների գաղափարական աշխատանքի կարևորագույն տեղամասը, կուսակցական բոլոր կազմակերպությունների ամենօրյա հոգացողության առարկան: Երկար տարիներ է, ինչ մեր կուսակցության, նրա կենտկոմի ուշադրության կենտրոնում են կուսակցական կրթության սիստեմի կազմակերպման, կատարելագործման և ընդլայնման պրակտիկ հարցերը: Կյանքի տարբեր ժամանակներում կիրառվել են ուսուցման տարբեր ձևեր ու մեթոդներ: Դրանց մի մասը չի դիմացել ժամանակի քննությանը և մերժվել է կյանքի կողմից: Մյուսները գործադրվել են ժամանակի այս կամ այն հատվածում: Սակայն բոլոր դեպքերում էլ ուսուցման ձևերի բազմազանությունը դրական դեր է խաղացել: Դա կուսակցությանը հնարավորություն է տվել կյանքում փորձել և ընտրել ամենալավագույն ու արդյունավետ ձևերը:

Երեք տարի է, ինչ կոմունիստների ուսուցումն ընթանում է նոր սիստեմով: Ուսուցման նոր սիստեմի նպատակն այն է, որ կոմունիստը ոչ թե ուսումնասիրի մարքսիզմ-լենինիզմի առանձին մասերը, այլ հաշվի առնելով սեփական պատրաստականության աստիճանը, քայլ առ քայլ տիրապետի գիտական կոմունիզմի ամբողջական տեսությանը պատշաճ ծավալով: Նախկին «տեղաքայլի» կամ «շրջանակի մեջ շարժվելու» փոխարեն, երբ կոմունիստները ստիպված էին լինում տարիներ շարունակ ուսումնասիրել միևնույն նյութերը՝ տարբեր անունների տակ, այժմ ուսուցումն այնպես է կազմակերպվում, որպեսզի կոմունիստներն ստանան *սիստեմատիկ* քաղաքական կրթություն: Այլ խոսքով, ուսուցման ձևերը պետք է հաջորդեն մեկը մյուսին այն հաշվով, որպեսզի մի



ձևը օրինաչափորեն բխի մյուսից, հանդիսանա նրա ուղղակի շարունակությունը: Հեղափոխական տեսության ամենացածր աստիճանից կոմունիստը պետք է անշեղորեն, վերընթաց գծով ընթանա դեպի ամենաբարձրը:

Այս տարվա մայիսի 7-ին տեղի ունեցած Հայաստանի պրոպագանդիստների առաջին համագումարն ամփոփեց նոր սիստեմով կոմունիստների քաղաքական ուսուցման երեք տարվա արդյունքները և նախանշեց պրոպագանդիստական աշխատանքի առաջիկա խնդիրները: Ինչպես համագումարին ներկայացված ՀԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Խաչատրյանի զեկուցման մեջ, այնպես էլ պատգամավորների ելույթներում այն իրողությունն էր շեշտվում, որ նոր սիստեմի պայմաններում անհամեմատ բարձրացել է քաղաքական ուսուցման արդյունավետությունը, աճել է կոմունիստների հետաքրքրությունը մարքսիստական-լենինյան աշխարհայացքային առարկաների նկատմամբ:

Կոմունիստների քաղաքական ուսուցման բնագավառում բավականին դրական արդյունքներ են ձեռք բերվել 1967/1968 ուսումնական տարում: Կոմունիստների քաղաքական ուսուցումը լավ են կազմակերպել կուսակցության Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի, Հոկտեմբերյանի, Աբովյանի քաղկոմներն ու շրջկոմները: Սրանք պարբերաբար անդրադառնում են քաղուսուցման հարցերին, խորապես հետաքրքրվում պարապմունքների բովանդակությամբ ու արդյունավետությամբ, անհրաժեշտ օգնություն ցույց տալիս պրոպագանդիստներին:

Ցավոք, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դեռևս կան կուսակցական կազմակերպություններ, որոնք ուղղակի աչքաթող են արել այդ կարևոր գործը: Մի շարք կուսակցական կազմակերպություններում քաղուսուցումը տարվում է պրակտիկ խնդիրներից կտրված, մեծ տոկոս են կազմում ունկնդիրների բացակայությունները, քիչ բան է արվում նրանց հետաքրքրությունը և ակտիվությունը բարձրացնելու համար: Նման թերություններ, իհարկե, չեն լինի, եթե բոլոր կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսակցական կազմակերպություններն ավելի մոտ կանգնեն գործին, ավելի շատ հետաքրքրվեն քաղուսուցման վիճակով, պարբերաբար ուսումնասիրեն ու քննարկեն ուսուցման բարելավման հետ կապված հարցերը:

Վերջին տարիներում զգալի աշխատանք է կատարված կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողների քաղաքական ուսուցման կազմակերպման նպատակով: Հանրապետությունում գործում են քաղաքային ու շրջանային ավելի քան 20 դպրոցներ և մշտական գործող սեմինարներ, որոնցում ընդգրկված են շուրջ 1800 ղեկավար աշխատողներ: Կուսակցական, սովետական, տնտեսական կադրերին քաղաքական գիտելիքներով պինելու գործում դրական փորձ են կուտակել Երևանի և Լենինականի մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները, որոնցում սովորում է 1300 մարդ:

Կոմունիստների քաղաքական ուսուցման հիմնական ձևը եղել և մնում է *ինքնուրույն ուսուցումը:* Կուսակցական շատ կազմակերպություններ զգալի աշխատանք են կատարում մարքսիստական-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրող կոմունիստների հետ, ուժեղացրել են վերահսկողությունը նրանց նկատմամբ: Ուսուցման այդ ձևում ընդգրկված կոմունիստների մի զգալի մասը սիստեմատիկ աշխատանք է կատարում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, քաղաքական գրականության, կուսակցական փաստաթղթերի ուսումնասիրության համար: Ընդհանուր առմամբ, սակայն, մարքսիզմ-լենինիզմի տեսության ինքնուրույն ուսումնասիրության գործի ճիշտ կազմա-

կերպումը շարունակում է մնալ մեր նեղ տեղերից մեկը: Որպես լուրջ թերություն, պետք է նշել, որ մի շարք քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների անբավարար վերահսկողության հետևանքով կոմունիստների մի կգալի մասը ոչինչ չի անում իր տեսական-քաղաքական մակարդակի բարձրացման ուղղությամբ: Ավելին, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ առանձին ղեկավար աշխատողներ, ինքնուրույն ուսումնասիրողի անվան տակ, ընդհանրապես դադարել են քաղաքական հարցերով հետաքրքրվելուց, չխոսելով արդեն մարքսիստական-լենինյան ամբողջական տեսության յուրացման մասին:

Կոմունիստների ինքնուրույն ուսուցման գործի դեռևս անբավարար դըրվածքը կուսկազմակերպություններին պետք է լրջորեն խորհելու առիթ տա:

Կուսակցական ուսուցման մեջ կենտրոնական դեմքը պրոպագանդիստն է և մեծապես նրա ջանասեր աշխատանքով է պայմանավորված կոմունիստների քաղաքական կրթության հաջողությունը: Կոմունիստական կուսակցությունը խորապես գնահատում է պրոպագանդիստների պատվավոր ու շնորհակալ գործը, հոգատարությամբ շրջապատում նրանց, ովքեր, առանց որևէ փոխհատուցում ակնկալելու, իրենց գիտելիքները սիրով ու պատրաստակամությամբ հաղորդում են ուրիշներին, օգնում նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը: Ուստի պատահական չէ, որ մարքսիստական-լենինյան տեսության պրոպագանդիստներին ՍՄԿԿ XXIII համագումարը մեր կուսակցության ոսկյա ֆոնդը համարեց: Պրոպագանդիստի՝ կոմունիստական գաղափարների այդ բարի սերմնացանի աշխատանքը միանում է համաժողովրդական ստեղծագործության հկոր գետին, օգնում է մեր կուսակցությանը հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության բարդ խնդիրները:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունն ունի որակյալ պրոպագանդիստական կադրերի մեծ բանակ, որը լավ է տիրապետում քաղաքական աշխատանքի բարդ արվեստին: Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները որոշակիորեն բարելավել են պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը: Կուսակցական ուսուցման սիստեմում աշխատելու համար առանձնացվել են առավել հմուտ, հարուստ փորձ ունեցող, տեսականորեն պատրաստված 6000 պրոպագանդիստներ, որոնց 98 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն:

Հանրապետությունում շատ են իրենց գործը սիրող, ունկնդիրներին խոր գիտելիքներ հաղորդող, բարեխիղճ պրոպագանդիստներ: Դրանցից են Ա. Նիկողոսյանը, Շ. Հարությունյանը, Ս. Վիրաբյանը, Ա. Համբարյանը, Կ. Հովսեփյանը և շատ ուրիշներ: Ունենալով հարուստ գիտելիքներ, օժտված լինելով նյութը մատուցելու անվիճելի ձիրքով, նրանք շատ բան են անում կոմունիստների մարքս-լենինյան տեսության ուսուցման ուղղությամբ:

Բայց պետք է խոստովանել, որ չնայած պրոպագանդիստական կադրերի որակական կազմում տեղի ունեցած դրական փոփոխություններին, պրոպագանդիստների ընտրության գործում դեռևս թույլ են տրվում նաև լուրջ սխալներ: Երբեմն պրոպագանդիստական աշխատանքի մեջ են ներգրավվում պատահական մարդիկ: Չունենալով քաղաքական և մեթոդական անհրաժեշտ պատրաստականություն, իրենց գիտելիքները ուրիշներին հաղորդելու ունակություն, այդպիսի պրոպագանդիստները, որպես կանոն, փաստորեն ձախողում են կոմունիստների ուսուցումը:

Պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությունը, նրանց պատրաստա-



կանության բարձրացումը այսուհետև նույնպես պետք է գտնվի բոլոր կուսակցական կազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում: Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնել պրոպագանդիստների մեթոդական ուսուցման կազմակերպման վրա, նրանց հաղորդակից անել մասսաներին համոզելու լենինյան արվեստին:

Այս տեսակետից մեծ աշխատանք են կատարում քաղկոմ շրջկոմներին կից գործող պրոպագանդիստների մշտական գործող սեմինարները: Պրոպագանդիստների սեմինարներին մշտական օգնություն ցույց տալու գործում դրական աշխատանք են կատարել Երևանի պետական համալսարանի, Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների ինստիտուտի և բարձրագույն ուսումնական ուրիշ հաստատությունների հասարակագիտական ամբիոնների դասախոսները: Բայց պետք է ասել, որ մի շարք բուհերի, մասնավորապես գյուղատնտեսական ինստիտուտի և կոնսերվատորիայի հասարակագիտական ամբիոնների առանձին դասախոսներ խուսափել են այդ նպատակով շրջաններ մեկնելուց, որի հետևանքով տարբեր ժամանակներում ձախողվել են պրոպագանդիստների սեմինարները Ալավերդու, Նոյեմբերյանի, Սպիտակի, Կրասնոսելսկի և այլ շըրջաններում, իսկ կուսակցական կազմակերպություններն անհրաժեշտ վերաբերմունք չեն ցուցաբերել նման ընկերների նկատմամբ:

Պրոպագանդիստական կադրերին լուրջ օգնություն հանդիսացան 1967 թ. ամռանը Սևանում կազմակերպված հանրապետական կուրսերը: Քառասունհինգ օրվա ընթացքում այստեղ ավելի քան 450 պրոպագանդիստներ վերապատրաստվեցին՝ քաղաքատնտեսության առարկան միջին օղակում դասավանդելու համար:

Պրոպագանդիստների վերապատրաստման գործի հետագա կատարելագործումը կարևոր խնդիր է: Դրա հետ միասին հարկ է նշել, որ ոչ մի սեմինար, մեթոդական ոչ մի կոնֆերանս չեն կարող փոխարինել պրոպագանդիստի քրտնաջան ու նպատակասլաց ինքնուրույն աշխատանքին: Կուսակցական կազմակերպությունները պետք է խնայեն պրոպագանդիստների ժամանակը, նրանց համար ստեղծեն անհրաժեշտ բոլոր պայմանները՝ գիտելիքները հարստացնելու, քաղաքական մտահորիզոնն ընդլայնելու համար:

Ոչ պակաս կարևոր նշանակություն ունի պրոպագանդիստի գաղափարական-բարոյական կերպարը: Ամեն մի պրոպագանդիստ ազնվության և ուղղամտության տիպար պետք է լինի, բոլշևիկյան սկզբունքայնություն հանդես բերի ինչպես խոսքի, այնպես էլ գործի մեջ: Երբ մարդու մոտ «խոսքը գործին չի բռնում.— գրել է Վ. Ի. Լենինը, այդ արդեն շատ վատ է: Այդ հասնում է երեսպաշտության» (Երկեր h. 12, էջ 281):

Որոշակիորեն բարելավվել է հանրապետության քաղաքական լուսավորության տների և կաբինետների գործունեությունը: Ինչպես պրոպագանդիստներին, այնպես էլ ունկնդիրներին մեթոդական լուրջ օգնություն են ցույց տալիս հանրապետական քաղլուսատունը, Լենինականի կուսքաղկոմի, Երևանի Օրջոնիկիձեի, Սպիտակի, Նոյեմբերյանի, Ղափանի, Աշտարակի, Կամոյի կուսշրջկոմների քաղլուսկաբինետները: Դրանց աշխատողներն իրենց ջանքերը կենտրոնացրել են պարապմունքների մեթոդիկայի կոնկրետ հարցերի մշակման վրա, ամփոփել ու տարածել են լավագույն պրոպագանդիստների աշխատանքի առաջավոր փորձը: Օրինակ, այդ նպատակով հանրապետական քաղլուստան ագիտմասսայական աշխատանքների մեթոդխորհրդում լսվել են Արարատի, Արտաշատի, Էջմիածնի, Աշտարակի, Իջևանի և ուրիշ շրջկոմների քաղլուսկաբինետ-

ների հաշվետվությունները և քննարկման արդյունքները հրապարակվել են «Ագիտատորի և պրոպագանդիստի բլոկնոտ»-ում: Բացի այդ, հանրապետական քաղլուսատունը քաղկոմների և շրջկոմների հասցեներով ուղարկել է զգալի քանակությամբ գրավոր նյութեր, մեթոդական ձեռնարկներ և այլն:

Անհրաժեշտ է այսուհետև նույնպես հատուկ ուշադրություն դարձնել մեթոդական աշխատանքին, հասնել նրան, որ քաղաքական լուսավորության տներն ու կաբինետները դառնան մեթոդական աշխատանքի կենտրոններ:

Անցած ուսումնական տարում կուսակցական ուսուցման հարցերը սկսել են ավելի աշխույժ լուսաբանվել մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության կողմից: Ինչպես հանրապետական, այնպես էլ տեղական շատ թերթերի էջերում պարբերաբար լույս են տեսել գործիմացությամբ գրված հոդվածներ, կոնսուլտացիաներ, ելույթներով հանդես են եկել շատ պրոպագանդիստներ և սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ:

Կուսակցական կազմակերպությունները չպետք է մոռանան, որ կոմերիտականների քաղաքական ուսուցման կազմակերպումը նույնպես իրենց հարազատ գործն է: Կոմերիտական ուսուցման սիստեմում քաղաքական հարցերի ուսումնասիրությունը և նրա ամուր կապը ժամանակակից զարգացման պրոբլեմների հետ, պետք է ծառայեն այն բանին, որպեսզի երիտասարդությունն իր մեջ մշակի դասակարգային մոտեցում ժամանակակից ներքին ու միջազգային իրադարձությունների նկատմամբ, զարգացնի իր ակտիվությունը. պատրաստ լինի ավագ սերնդի արժանավոր փոխարինողը դառնալու:

Կոմերիտական քաղաքական ուսուցմանը կուսակցական կոմիտեների ցույց տված կոնկրետ ու գործնական օգնությունն ամենից առաջ պետք է արտահայտվի պրոպագանդիստական կադրերի ընտրության մեջ: Կուսակցական կոմիտեները պարտավոր են կոմերիտական քաղուսուցմանը տրամադրել ամենապատրաստված ու ամենահեղինակավոր պրոպագանդիստներին, ամենօրյա աշխատանք տանեն նրանց հետ: Անհրաժեշտ է քաղաքական լուսավորության տներում և կաբինետներում կոմերիտական ուսուցման գծով ստեղծել մեթոդական խորհուրդներ, բոլոր միջոցներով օգնել կոմերիտական կազմակերպություններին՝ բազմակողմանիորեն նախապատրաստվելու նոր ուսումնական տարվան:



Կոմունիստական կուսակցության պատմական ողջ փորձը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, անցած կես դարում սովետական ժողովրդի կատարած հերոսական մեծագործությունները վկայում են մարքսիզմ-լենինիզմի կենսահաստատ ուժի մասին:

Ինչպես մեր բոլոր բարեկամներին, այնպես էլ թշնամիներին պարզ է դարձել, որ մարքսիզմ-լենինիզմի տեսությունը հզոր ու անպարտելի ուժ է, որը կոչված է լուսավորելու կոմունիզմի կառուցման ուղիները: Ահա թե ինչու նրանք ամեն ինչ անում են այդ տեսությունը նսեմացնելու, նրա հիմնական սկզբունքները խեղաթյուրելու: Այսօր մարքսիզմի հակառակորդները հակակոմունիզմի դրոշով մրցում են միմյանց հետ կոմունիզմի գաղափարները արատավորելու համար: Սակայն, որքան կոմունիզմի թշնամիները կատաղորեն են սուր ճոճում մեր գաղափարախոսության դեմ, այնքան նրանք ավելի են համոզվում իրենց ջանքերի սնանկության մեջ:

Մարքս-լենինյան տեսության ստեղծագործական հետագա զարգացումը կոմունիստական կուսակցությունը դիտում է որպես կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման ու զարգացման, աշխատավոր մասսաների կոմունիստական դաստիարակության անհրաժեշտ պայման: ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում, Հոկտեմբերյան հեղափոխության հիսնամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում և ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թվականի ապրիլյան պլենումի որոշման մեջ սահմանված են ներկա էտապում կուսակցական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական ու պրոպագանդիստական աշխատանքի գլխավոր ուղղությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը նոր ուղենիշ է մեր կուսակցության կյանքում: Պլենումը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը՝ «Միջազգային դրության հրատապ պրոբլեմների և համաշխարհային կոմունիստական շարժման համախմբման համար ՍՄԿԿ-ի պայքարի մասին»: Լիովին հավանություն տալով Կենտկոմի Քաղբյուրոյի քաղաքական գծին և պրակտիկ գործունեությանը միջազգային քաղաքականության բնագավառում և համաշխարհային կոմունիստական շարժման մեջ, պլենումը միաժամանակ նշեց, որ պատմական զարգացման արդի էտապում, երբ անընդհատ սրվում է կապիտալիզմի և սոցիալիզմի միջև մղվող գաղափարական պայքարը, իդեոլոգիական ճակատում կոմունիստական կուսակցության գործունեության հետագա ուժեղացումն առանձնահատուկ նշանակություն է ստանում: Գաղափարական. քաղաքական, մասսայական-պրոպագանդիստական աշխատանքը դառնում է կուսակցական բոլոր կազմակերպությունների ամենահրատապ խնդիրը:

Մենք կոմունիզմ ենք կառուցում միջազգային չափազանց բարդ իրադրության մեջ, համաշխարհային սոցիալիզմի և համաշխարհային կապիտալիզմի միջև ծավալված վճռական պայքարի պայմաններում: Ժամանակակից աշխարհում տեղի է ունենում գաղափարների իսկական կռիվ: Այդ պայմաններում կոմունիստական կուսակցությունը գաղափարական ճակատի իր մարտիկների՝ մարքս-լենինյան տեսության պրոպագանդիստների առջև խնդիր է դրել՝ հետևողականորեն մերկացնել իմպերիալիստական ռեակցիայի, պատերազմի սև ուժերի մարդատյաց գաղափարախոսությունն ու գործելակերպը, է՛լ ավելի բարձր ծածանել կոմունիզմի անհաղթ դրոշը:

Կուսակցական պրոպագանդային բնորոշ են բարձր գաղափարայնությունը, հարձակողականությունը, սկզբունքայնությունն ու հետևողականությունը: Ղեկավարվելով այդ սկզբունքներով, կուսակցական կազմակերպությունները իրենց գաղափարական գործունեությունը պետք է ուղղեն աշխատավորների աշխատանքային և հասարակական ակտիվության բարձրացման, կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրների լուծման նպատակին: Ներկայումս կուսակցության գաղափարական աշխատանքի հետագա վերելքի, մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարների լայն պրոպագանդման համար հզոր խթան է Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի լայն նախապատրաստությունը:

Տարակույս չկա, որ հանրապետության կուսակցական կազմակերպություններն առաջիկայում կբազմապատկեն իրենց ստեղծագործական ջանքերը գաղափարական ճակատի բոլոր օղակներում, ավելի բարձր աստիճանի կհասցնեն կոմունիստների, բոլոր աշխատավորների մարքսիստական լենինյան դաստիարակության գործը:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՂԱԶԱՆՉՅԱՆ Վ. Ի., ՊԵՏՐՈՍՅԱՆ Վ. Ա.

Տնտեսական գիտությունների թեկնածուներ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ՄԻ ՔԱՆԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐՆ ՈՒ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

*Արդեն երկու տարի է, ինչ մեր երկրի արդյունաբերությունն աստիճանաբար անցնում է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին։ Տնտեսական ռեֆորմի գլխավոր խնդիրներն են՝ օբյեկտիվ պայմաններ ստեղծել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների ավելի լրիվ օգտագործման համար, ապահովել տնտեսության զարգացման արագ տեմպեր, բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունն ու սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։*

*Արդյունաբերական նորանոր ձեռնարկություններ և ամբողջական ճյուղեր են անցնում նոր սիստեմին։ Այսպես, եթե 1966 թ. Սովետական Միությունում նոր սիստեմին էր անցել 704 ձեռնարկություն, ապա 1967 թ. դրանց թիվը տասնապատկվեց և հասավ յոթ հազարի։ Հայկական ՍՍՀ-ում 1966 թ. նոր սիստեմին էր անցել ընդամենը 6 ձեռնարկություն (4-ը միութենական ենթակայության), 1967 թ. արդյունաբերական ձեռնարկություններից 97-ը աշխատում էր նոր պայմաններում, այդ թվում՝ միութենական-հանրապետական և տեղական ենթակայության 79 ձեռնարկություն։ Հանրապետության արդյունաբերության մեջ այդ ձեռնարկությունների տեսակարար կշիռը կազմում է 26,6 տոկոս։ Նոր ձևով են աշխատում սարքաշինությունը, տրիկոտաժի, տեքստիլ, կաշվի, կոշիկի արդյունաբերությունը և այլն։ Հաշվարկները ցույց են տալիս, որ նոր սիստեմին անցած ձեռնարկությունները հաջողությամբ կատարում և գերակատարում են վերցրած պլանային բարձր առաջադրանքները։ 1967 թ. այդ ձեռնարկություններն արտադրանքի իրացման պլանը գերակատարեցին 2,4 տոկոսով, իսկ աճը (նախորդ տարվա համեմատությամբ) կազմեց 10 տոկոս։ Ընդ որում, աշխատանքի արտադրողականությունը տարվա ընթացքում բարձրացավ 8,75 տոկոսով, որը 3,36 տոկոսով գերազանցում է պլանով նախատեսված մակարդակը։*

*Այդ բոլորը հանգեցրեց շահույթի պլանի գերակատարման և պետական բյուջեին մուծումների ավելացման։ Անցյալ տարի նոր ձևով աշխատող արդյունաբերական ձեռնարկությունները շահույթի պլանը կատարեցին 104,8 տոկոսով։ 1966 թ. համեմատությամբ միութենական ենթակայության ձեռ-*



*նարկությունները շահույթի գումարն ավելացրին 10,9, իսկ հանրապետության Մինիստրների սովետին ենթակա ձեռնարկությունները՝ 24,4 տոկոսով։*

*Լավ են աշխատել Արգնու ճշգրիտ տեխնիկական քարերի, Երևանի ավտոդողերի, սարքաշինական, էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանները, կոշիկի «Մասիս», գուլպա-տրիկոտաժի «Արշալույս» ֆիրմաները, № 1 և 2 տրիկոտաժի, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկաները և այլն։*

*Արտադրանքի իրացման ծավալի աճը և շահույթի գումարի ավելացումը հնարավորություն ընձեռեցին ստեղծել և օգտագործել տնտեսական խթանման ֆոնդեր։ Միաժամանակ ավելացան պետական բյուջեի եկամուտները։ Այսպես, 1967 թ. միութենական և հանրապետական ենթակայության ձեռնարկությունները պլանով նախատեսված 5146 հազար ռուբլու փոխարեն, խրախուսման ֆոնդերին փոխանցեցին 6166 հազար ռուբլի կամ 1020 հազար ռուբլի ավելի։ Ընդ որում, այդ գումարի գրեթե ³/₄-ը փոխանցվել է նյութական խրախուսման ֆոնդին։*

*Արդյունաբերական ձեռնարկությունների նոր սիստեմին անցնելուն նախորդեց մեծ նախապատրաստական աշխատանք ինչպես ձեռնարկություններում, այնպես էլ մինիստրություններում ու գերատեսչություններում։ Այդ աշխատանքների նպատակն էր որոնել ու գտնել արտադրության արդյունավետության բարձրացման նոր մեթոդներ։ Ներարտադրական ռեզերվների հայտաբերման և դրանք տնտեսական շրջանառության մեջ ընդգրկելու համար կատարվեց ձեռնարկությունների արտադրական գործունեության խոր վերլուծություն։ Հայտնաբերվեցին արտադրության «նեղ տեղերը», վերանայվեցին նյութական և աշխատանքային ծախսումների նորմաները, որոշվեցին խոտանի առաջացման և բանվորական ժամանակի կորուստների պատճառները, ստուգվեց նյութատեխնիկական մատակարարման և պատրաստի արտադրանքի իրացման վիճակը։ Վերլուծության արդյունքների հիման վրա մշակվեցին կազմակերպական և տեխնիկա-տնտեսական միջոցառումներ։*

*Նոր պայմաններում աշխատող ձեռնարկություններում զգալիորեն աճել է հետաքրքրությունը տնտեսագիտական, պլանավորման կատարելագործման, տնտեսական հաշվարկի, արտադրության և աշխատանքի կազմակերպման նկատմամբ։ Դրա շնորհիվ շատ ձեռնարկություններում նկատելիորեն բարելավվել է հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործումը։ Այսպես, 1967 թ., 1966 թ. համեմատությամբ, Արգնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանում ֆոնդահատույցն աճեց 14,8, Լենինականի վերլուծական սարքերի գործարանում՝ 13, Երևանի սարքաշինականում՝ 7,5, № 1 տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 34,3, № 2-ում՝ 19, բրդյա նուրբ գործվածքների և մահուդի կոմբինատում՝ 53 տոկոսով։*

*Պլանավորման և տնտեսական խրախուսման նոր կարգին անցած ձեռնարկությունների մեծ մասն արագացրել է նորմավորվող շրջանառու միջոցների շրջապտույտը։ Օրինակ, անցյալ տարվա համեմատությամբ այն աճել է հանրապետության սարքաշինական արդյունաբերության մեջ 8,9 իսկ թեթև արդյունաբերության մեջ՝ 7,9 տոկոսով։ Թեթև արդյունաբերության այդ ձեռնարկություններում բանկի կողմից չվարկավորվող ապրանքանյութական արժեքների գերնորմատիվային մնացորդները կրճատվեցին ավելի քան 2,5 անգամ։ Բնորոշ է, որ մի շարք ձեռնարկություններ ո՛չ միայն արագացրել են միջոցների շրջապտույտը, այլ արտադրանքի թողարկումն ավելացնելու*

շնորհիվ պակասեցրել են սեփական շրջանառու միջոցների նորմատիվի բացարձակ գումարը։

Այսպիսով, տնտեսական ռեֆորմը, անկասկած, դրական ազդեցություն է ունենում ձեռնարկությունների արտադրական գործունեության վրա։

Նոր սիստեմով աշխատելու համար գործարանները պետք է նախօրոք նախապատրաստվեն և ոչ թե այնպես, ինչպես այդ տեղի ունեցավ Երևանի ծխախոտի ֆաբրիկայում։ Այստեղ նոր սիստեմին վատ նախապատրաստվելու պատճառով, 1966 թ. խիստ իջան ֆաբրիկայի արտադրական ցուցանիշները. շահույթի պլանը կատարվեց կիսով չափ։ Միայն դրանից հետո իրականացվեցին կազմակերպչական ու տեխնիկական մի շարք միջոցառումներ, որոնք հնարավորություն ընձեռեցին 1967 թ. հասնելու արտադրական բարձր ցուցանիշների։

Բայց երբեմն էլ կատարվում է հակառակը։ Սկզբնական շրջանում ձեռնարկությունը դասվում է լավագույնների շարքում, իսկ հետո վիճակը վատանում է։ Այդ տեսակետից ցայտուն է Երևանի ժամացույցի գործարանի օրինակը։ 1966 թ. արտադրանքի իրացման և շահույթի ավելացման բարձր պարտավորությունները գործարանը կատարեց ո՛չ թե աշխատանքի և արտադրանքի որակի բարելավմամբ, այլ առավելապես այնպիսի ապրանքների արտադրությամբ, որպիսիք քիչ են տարբերվում նախկինում արտադրվածից։ Հասկանալի է, որ դա չէր կարող չանդրադառնալ ձեռնարկության աշխատանքի վրա, որը 1967 թ. 5,3 տոկոսով թերակատարեց արտադրանքի իրացման պլանը։

Նշված ձեռնարկությունների դառը փորձը, անկասկած, պետք է զգաստացնի այն գործարանների կոլեկտիվներին, որոնք նոր սիստեմով են աշխատելու այս տարի։ Այդ ձեռնարկություններից է Երևանի կաթի կոմբինատը. այնտեղ 1967 թ. գերնորմատիվային արտադրական պաշարների մնացորդներն ավելացան 124 հազար ռուբլով և կազմեցին 498 հազար ռուբլի. (1968 թ. հունվարի մեկի դրությամբ), որը սեփական շրջանառու միջոցների նորմատիվը գերազանցում է ավելի քան 1,5 անգամ։ Ընդ որում, շարունակվում է պաշարների կուտակումը պահեստում՝ առանց հաշվի առնելու արտադրության պահանջները։ Այսպես, տարվա սկզբին կոմբինատում կար 0,5 և 0,2 լիտր տարողություն ունեցող 500 հազար ապակյա տարա, իսկ տարվա ընթացքում նորից ստացավ 1300 հազար հատ, այն դեպքում, երբ տարեկան պահանջը կազմում է ընդամենը 345 հազար։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին են անցնելու նաև փայտամշակման արդյունաբերության ձեռնարկությունները։ Բայց դրանց մեծ մասը ֆինանսական ծանր դրության մեջ է։ Անցյալ տարի դրանց ապրանքանյութական արժեքների գերնորմատիվային մնացորդներն աճեցին ավելի քան 3 անգամ և 1967 թ. վերջին կազմեցին մեկ միլիոն ռուբլի (տարեսկզբի 0,3 միլիոնի փոխարեն)։ Փայտամշակման և կահույքի ձեռնարկություններում պատրաստի արտադրանքի մնացորդները կազմել են 620 հազար ռուբլի, որը գրեթե երկու անգամ գերազանցում է նորմատիվը։ Գերնորմատիվային մնացորդներն առանձնապես մեծ են Երևանի դաշնամուրի (340.000 ռ.), Արաբկիրի կահույքի ֆաբրիկաներում (166.000 ռ.) և այլն։

Անհրաժեշտ է նշել, որ կահույքի արտադրանքի սահմանափակ անվանացանկն ու ցածր որակը չի համապատասխանում ստանդարտների պահանջներին։ Անցյալ տարի ապրանքների որակի տեսչությունը կահույքի ար-



դյունաբերության 913 շինվածքից 910-ը կամ 99,3 տոկոսը խոտանել է։ Այդ է պատճառը, որ առևտրական կազմակերպությունները դժվարությամբ են վերցնում երկար ժամանակ պահեստներում մնացած և տեսքը կորցրած արտադրանքը։ Միայն դաշնամուրի ֆաբրիկայի պահեստում կա 400 խոտան դաշնամուր։

Անհրաժեշտ է նշել, որ չնայած նոր սիստեմին անցած ձեռնարկություններում արտադրանքի որակն զգալիորեն բարելավվել է, բայց այդ պրոբլեմը դեռևս հանգուցային հարցերից մեկն է։ Մեր կարծիքով, արտադրանքի որակի բարձրացման խնդիրները սերտորեն կապվում են բանվորների՝ անմիջական արտադրողների նյութական խրախուսման հարցերի հետ։ Սակայն նյութական խրախուսման ֆոնդի բաշխման կարգն այնպիսին է, որ բանվորները խրախուսվում են նվազագույն չափով։ Այսպես, նոր պայմաններում աշխատող միութենական ենթակայության 18 ձեռնարկությունների նյութական խրախուսման ֆոնդից բանվորներին տրված պարգևների ընդհանուր գումարը (1967 թ.) կազմել է այդ ֆոնդից վճարված բոլոր պարգևների 26,6 տոկոսը (բանվորների աշխատավարձի տարեկան ֆոնդի նկատմամբ կազմել է ընդամենը 1,9 տոկոս)։ Վիճակն ավելի վատ է հանրապետության թեթև ու սննդի արդյունաբերության ձեռնարկություններում, որտեղ բանվորների պարգևները (նյութական խրախուսման ֆոնդից) համապատասխանաբար կազմել են՝ 25,8 և 22, իսկ բանվորների աշխատավարձի տարեկան ֆոնդի՝ 0,8 և 0,67 տոկոսը։ Մի շարք ձեռնարկություններում տարվա ընթացքում նյութական խրախուսման ֆոնդից բանվորներն առհասարակ պարգև չեն ստացել։ Հասկանալի է, որ պարգևատրումների այդպիսի չնչին գումարները չեն կարող շահագրգռել բանվորներին։ Բայց նյութական խրախուսման ֆոնդը կարող է և պետք է բարձրացնի բանվորների շահագրգռվածությունն արտադրանքի որակի բարձրացման և արտադրության ծախսերի կրճատման մեջ։ Առայժմ բանվորները պարգևները հիմնականում ստանում են աշխատավարձի ֆոնդից, խրախուսվում են անհատական արդյունքների համար։

Շահույթը ձեռնարկության աշխատանքի ընդհանուր ցուցանիշների բարելավման արդյունք է՝ խրախուսման ֆոնդի ստեղծման աղբյուր. անկասկած, մեծ է նրա դերը բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում։ Մեր կարծիքով, նյութական խրախուսման ֆոնդի պլանավորման և օգտագործման այժմյան կարգն ունի մի շարք հակասություններ։ Մի կողմից՝ նյութական խրախուսման ֆոնդի չափերը պայմանավորված են շահույթի և իրացված արտադրանքի աճով, որին կարելի է հասնել արտադրության տեխնիկական ու կազմակերպական մակարդակի բարձրացմամբ։

Ինչպես հայտնի է, վերջինը հանգեցնում է կենդանի աշխատանքի ծախսումների կրճատման, որն իր արտահայտությունն է գտնում աշխատավարձի մեջ. մյուս կողմից՝ այդ ֆոնդի կազմավորման նորմատիվներն անմիջապես կապվում են աշխատավարձի ֆոնդի գումարի հետ։ Այսպիսով, որպես այդ ֆոնդի ստեղծման չափանիշներ հանդես են գալիս հակադարձ ուղղությամբ գործող ցուցանիշներ։ Այսպես, օրինակ, այն ձեռնարկությունը, որը մյուսների հետ գտնվում է հավասար պայմաններում և հաջողությամբ արմատավորում է նոր տեխնիկան, նյութական խրախուսման ֆոնդի ստեղծման տեսակետից ընկնում է համեմատաբար վատ դրության մեջ, քանի որ վերջինի մեծությունը պայմանավորված է աշխատավարձի ֆոնդի հարաբերական կրճատմամբ և, հակառակը, այն ձեռնարկությունը, ուր ցածր է տեխնիկական

հագեցվածության մակարդակը, շահում է նյութական խրախուսման ֆոնդի ստեղծման մեջ: Մասնավորապես, այդ վերաբերում է նյութական խրախուսման ֆոնդի այն մասին, որ նախատեսվում է բանվորների պարգևատրման համար: Այդ պատճառով արտադրության տեխնիկական մակարդակը և արտադրանքի որակը բարձրացնող, բայց ֆոնդերի ստեղծման ցուցանիշների ճական աճ չապահովող ձեռնարկությունները կարող են լրիվ կամ մասամբ զրկվել ֆոնդերի ստեղծման իրավունքից:

Կարծում ենք, որ անհրաժեշտ է խրախուսման ֆոնդերին կատարվող բոլոր մասհանումների հիմքում դնել շահույթը: Դա ֆոնդերը կապում է ձեռնարկության տնտեսական գործունեության արդյունքի՝ շահույթի հետ, պարզեցնում ու ավելի հասկանալի է դարձնում դրանց կազմավորումը և պայմաններ ստեղծում աշխատավարձի ֆոնդի խնայողաբար օգտագործման համար:

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկությունների աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ անցման ժամանակ ընդունված արտադրանքի իրացման բարձրացված պլանները շատ ձեռնարկություններում գերակատարվում են: Ուստի, տնտեսական խթանման գործող կարգը գործարաններին և ֆաբրիկաներին բավարար չափով չի շահագրգռում լարված առաջադրանքներ ստանձնելու մեջ: Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ պարգևատրման տիպային կանոնադրությունը հաշվի չի առնում պլանի լարվածության աստիճանը: Դա հանգեցնում է այն բանին, որ լարված պլանի նույնիսկ չնչին թերակատարման դեպքում ինժեներա-տեխնիկական և ղեկավար աշխատողները զրկվում են պարգևատրման իրավունքից: Թվում է, որ նպատակահարմար է լարված պլանների չնչին թերակատարման դեպքում աշխատողներին պարգևատրել պլանի կատարման տոկոսին համապատասխան (իջեցված նորմաներով) և ոչ թե նրանց զրկել այդ իրավունքից: Լարված պլաններ ընդունելու մեջ ձեռնարկությունների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար նպատակահարմար է նաև պլանների մեծ չափով գերակատարման դեպքում, խրախուսման ֆոնդերի մասհանումների նորմատիվները կրճատել 50 տոկոսով:

Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի թերություններից մեկն էլ այն է, որ մինիստրություններն ու գերատեսչություններն իրենց աշխատանքները չեն վերակառուցել մինչև վերջ: Հաճախ փոփոխվում են պլանները և խախտվում նրանց կատարման ժամկետները, պլաններն իջեցվում են հին ցուցանիշներով և այլն:

Նոր պայմաններում ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետության վրա անդրադառնում է նաև այն հանգամանքը, որ դեռևս լիակատար լուծված չէ նյութատեխնիկական մատակարարման հարցը:

Լուրջ թերություններ կան հասարակական արտադրության երկրորդ ստորաբաժանման ձեռնարկությունների և առևտրական կազմակերպությունների փոխհարաբերությունների միջև: Վերջիններս առանց ուսումնասիրելու բնակչության պահանջարկը, շարունակում են արդյունաբերությանը պատվերներ տալ, որի հետևանքով հաճախ փոփոխվում են արտադրական պլանները և պատրաստի արտադրանքը մնում է ձեռնարկության պահեստում: Ըստ էության թեթև արդյունաբերության ձեռնարկությունները պլանները կազմելիս չգիտեն բնակչության պահանջը, քանի որ տոնավաճառները կազմակերպվում են նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին, այսինքն՝ պլանների կազմումից հետո:



Հայտնի է, որ ռեֆորմի առավելություններից մեկը վերևից իջեցված ցուցանիշների թվի կրճատումն ու աշխատանքի արտադրողականության ցուցանիշի դիրեկտիվ բնույթի վերացումն է: Այժմ այն պլանավորում են ձեռնարկությունները: Այս պայմաններում, ինչպես ցույց է տալիս փորձը, շատ ձեռնարկություններում նկատվում է աշխատավարձի արագ աճ (աշխատանքի արտադրողականության համեմատ): Այսպես, նոր սիստեմին անցած սարքաշինական տասը ձեռնարկություններից յոթում աշխատավարձն ավելի արագ է աճել, քան աշխատանքի արտադրողականությունը: Ընդ որում, տարբերությունը տեմպերի միջև տատանվում է 4,6—32,8 տոկոսի սահմաններում: Աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերն առանձնապես ետ են մնում Լենինականի սարքաշինական, Կիրովականի «Ավտոմատիկա», Կամո քաղաքի սարքաշինական, Սևանի կատարողական մեխանիզմների և Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարաններում: Վերջին երեք գործարաններում, նախորդ տարվա համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը խիստ իջել է: Եվ միայն Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի, Երևանի սարքաշինական և ոսկերչական գործարաններում է, որ աշխատանքի արտադրողականությունն ավելի արագ է աճել, քան աշխատավարձը:

Վիճակը լավ չէ նաև արդյունաբերության մյուս ճյուղերում: Այսպես, հանրապետության երեք խոշոր տեքստիլ կոմբինատներից միայն Երևանի բրդյա նուրբ գործվածքների և մահուդի կոմբինատում է, որ նկատվում են աշխատանքի արտադրողականության աճի գերազանցող տեմպեր: Ինչ վերաբերում է Վ. Ի. Լենինի անվան մետաքսի և Լենինականի մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատներին, ապա դրանցում 1967 թ. աշխատավարձն ավելի արագ է աճել աշխատանքի արտադրողականությունից: Նույնն է վիճակը կոշիկի «Մասիս» ֆիրմայում, տրիկոտաժի 9-ը ֆաբրիկաներից՝ 5-ում: Ընդ որում, դրանցից երկուսում, 1966 թ. համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունն իջել է:

Անհրաժեշտ է նշել, որ աշխատավարձի ֆոնդի մեջ հաշվի չեն առնված նյութական խրախուսման ֆոնդից տրվող պարգևները, որոնք ևս սպառման ֆոնդ են: Հետևաբար, հավելյալ արդյունքի այդ մասի աճը նույնպես պետք է հաշվի առնվի աշխատավարձի բարձրացման տեմպերի որոշման ժամանակ:

Աշխատավարձի ավելի արագ աճը կարդարացվեր այն դեպքում, եթե տեղի ունենար նյութերի զգալի տնտեսում:

Մեր բերած օրինակներում նյութական ծախսումների շատ թե քիչ էական կրճատում տեղի չի ունեցել: Ավելին, բերված սարքաշինական տասը ձեռնարկություններից 6-ում թույլ է տրվել արտադրանքի պլանային ինքնարժեքի թանկացում:

Տնտեսական ռեֆորմի հիմնական խնդիրներից մեկն արտադրական ֆոնդերի լավագույն օգտագործման խթանումն ու ֆոնդահատույցի բարձրացումն է: Այդ նկատվում է արդյունաբերական շատ ձեռնարկություններում: Այսպես, արտադրանքի թողարկումն արտադրական ֆոնդերից արագ է աճել Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի, Երևանի և Լենինականի սարքաշինական, էլեկտրաճշգրիտսարք, Երևանի ոսկերչական գործարաններում, թեթև արդյունաբերության որոշ ձեռնարկություններում: Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ հանրապետության սարքաշինական տասը ձեռնարկություններից հինգում, 1966 թ. համեմատությամբ, ֆոնդահատույցը ոչ միայն չի

բարձրացել, այլ իջել է։ Դրանք հիմնականում այն ձեռնարկություններն են, ուր նկատվում է աշխատավարձի գերազանցող աճ աշխատանքի արտադրողականության բարձրացման համեմատ։ Այսպիսով, նշված գործարաններում իջել է արտադրության արդյունավետությունը։

Ըստ տնտեսական ռեֆորմի, ֆոնդավճարը կոչված է խթանելու արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործումը։ Մեր կարծիքով, ֆոնդավճարը դեռևս այդպիսին չէ։ Այդ բանի վրա զգալի չափով ազդում է ձեռնարկությունների շահույթի գանձման գործող կարգը։ Բացի ֆոնդավճարից, շահույթը պետական բյուջե է գանձվում, այսպես կոչված, ազատ մնացորդի և հաստատագրված վճարումների ձևով։ Ընդ որում, սկզբնական շրջանում հաստատագրված վճարումների տակ հասկացվում էին հայթայթող արդյունաբերական ձեռնարկությունների ռենտային վճարումները, որոնք տարածվում են արդյունաբերության բոլոր ճյուղերի վրա։ Այժմ այդ արդեն ոչ թե ռենտավճար է, այլ շահույթն առ բյուջե գանձելու ձև, որը տարբերվում է առաջինից իր կայուն բնույթով։ Ֆոնդավճարը որպես շահույթն առ բյուջե գանձելու ձև, կորցրել է իր նախկին իմաստը։ Բավական է ասել, որ 1967 թ. հանրապետության թեթև արդյունաբերության գծով բյուջե գանձված ֆոնդավճարը կազմել է բոլոր վճարումների մոտ 16, իսկ հաստատագրված վճարումները և շահույթի ազատ մնացորդը՝ 84 տոկոսը։ Կարո՞ղ է արդյոք այդ պայմաններում ֆոնդավճարը խթանող լուրջ դեր խաղալ։ Իհարկե ոչ։ Հաճախ ձեռնարկության համար շահավետ է շահույթի ազատ մնացորդի կրճատումը։ Մեր կարծիքով, այդպիսի դրությունը հակասում է տնտեսական ռեֆորմի խնդիրներին և պետք է ուղղվի ֆոնդավճարի դրույքները բարձրացնելու, շահույթի ազատ մնացորդը խիստ կրճատելու, արդյունաբերության վերամշակող ճյուղերը հաստատագրված վճարումներից ազատելու միջոցով։

Բացի այդ, անհրաժեշտ է փոխել պլանային շահույթն առ բյուջե գանձելու կարգը։ Ներկայումս շահույթը ամիսը երեք անգամ ավանսով գանձվում է առ բյուջե։ Ելնելով փաստացի շահույթից, ֆինանսական օրգանները կատարում են եռամսյակային ու տարեկան վերահաշվարկներ։ Հետևաբար, շահույթի ամսական կամ եռամսյակային պլանը թերակատարելու դեպքում բյուջեն գանձում է ձեռնարկության սեփական շրջանառու միջոցների մի մասը, որը, անկասկած, ստեղծում է ժամանակավոր դժվարություններ (նույնիսկ լավ աշխատող ձեռնարկությունների մոտ)։ Այսպես, հաշվետու տարվա միայն առաջին եռամսյակում Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի գերվճարումները առ բյուջե կազմել են 204, իսկ Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայինը՝ 87,5 հազար ռուբլի։ Այդ պատճառով անհրաժեշտ է մասհանումները կատարել փաստացի շահույթից։

Տնտեսական ռեֆորմը մեծ տեղ է տալիս վարկի կատարելագործմանը։ Վարկավորման նոր կարգը ուժեղացնում է վարկի դերը հիմնական ու շրջանառու միջոցների կազմավորման մեջ։ Բավական է ասել, որ ամբողջ արդյունաբերության վարկային ներդրումները կազմում են շրջանառու միջոցների մոտ 40 տոկոսը։ Ընդ որում, նկատելիորեն դիֆերենցվել են վարկի տոկոսները և ընդլայնվել դրանց շրջանակները, ավելացել են վարկավորման օբյեկտները և այլն։ Դեռևս վարկը անբավարար է օգտագործվում արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գործում։

Ճիշտ է, ձեռնարկությունները հաճույքով օգտվում են վարկի այնպիսի



ձևերից, որպիսիք օգտագործվում են նոր տեխնիկայի արմատավորման և ժողովրդական սպառման առարկաների արտադրությունն ընդլայնելու նպատակով։ Բավական է ասել, որ 1967 թ. նշված վարկերը համապատասխանորեն աճել են 61 և 74,6 տոկոսով և մոտ 10 անգամ՝ ժամանակավոր կարիքների համար։ Սակայն մինչև այժմ չափազանց անբավարար են օգտագործվում վարկի այնպիսի նոր ձևերը, ինչպիսիք են լավ աշխատող ձեռնարկություններին և շրջանառու միջոցների վերաբաշխման համար տրվող վարկերը։ Անցյալ տարի լավ աշխատող ձեռնարկություններին տրվող վարկերից օգտվել է միայն Հոկտեմբերյանի պահածոների գործարանը։ Շրջանառու միջոցների վերաբաշխման համար տրվող վարկերը առհասարակ հանրապետության արդյունաբերության մեջ չեն տարածվել, չնայած մի շարք մինիստրությունների, ձեռնարկությունների 40 տոկոսը թույլ է տվել սեփական շրջանառու միջոցների ճեղքվածք։ Նրանք չեն օգտվում նաև պլանների փոփոխման համար տրվող վարկից, որը նույնպես վարկի նոր ձև է։ Բայց չէ՛ որ ձեռնարկություններում եզակի չեն արտադրական ծրագրերի, արտադրանքի անվանացանկի, առանձին պատվերների կատարման ժամկետների փոփոխման երևույթները և այլն։

Տնտեսական ռեֆորմի պայմաններում առաջավոր ձև է ձեռնարկությունների վերավարկավորումն ըստ շրջանառության։ Այդ դեպքում արդյունաբերական ձեռնարկությունների սեփական շրջանառու միջոցների նորմատիվը (մինչև 40—50 տոկոսը) փոխարինվում է վարկով։

Չնայած այս առավելություններին, հանրապետությունում, ըստ շրջանառության, վարկավորում են ընդամենը 24 արդյունաբերական ձեռնարկություն։ Ընդ որում, վարկավորման այդ ձևն իրեն լիովին արդարացրել է։ Բավական է ասել, որ դրա օգտագործման շնորհիվ ազատված սեփական շրջանառու միջոցների գումարը ձեռնարկություններում կազմել է 1,5 միլիոն ռուբլի, որը ձեռնտու է թե՛ արդյունաբերությանը և թե պետական բանկին։

Վարկից խուսափելը, առաջին հերթին, պայմանավորված է նրանով, որ շատ ձեռնարկությունների ղեկավարներ դեռևս լավ չեն հասկանում վարկի նոր ձևի էությունն ու առավելությունը։ Այսպես, ձեռնարկությունները չեն անցնում վարկավորման, ըստ շրջանառության, որովհետև վախենում են սեփական շրջանառու միջոցների մի մասի գանձումից, չիմանալով, որ դրանից ոչինչ չեն կորցնի (միայն կկրճատվի ֆոնդավճարի գումարը)։ Բացի այդ, ձեռնարկությունները հաճախ խուսափում են բանկի հսկողությունից և զանազան տեղեկություններ ներկայացնելուց։

Այսպիսով, փորձը ցույց է տալիս, որ տնտեսական ռեֆորմը լայն հնարավորություններ է ստեղծել արդյունաբերական ձեռնարկությունների ավելի արդյունավետ աշխատանքի և, վերջին հաշվով, աշխատավորների նյութական բարեկեցության էական բարելավման համար։ Միաժամանակ այն պահանջում է մի շարք հարցերի հրատապ լուծում՝ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի և XXIII համագումարի որոշումների ոգով։ Համամիութենական տնտեսագիտական խորհրդակցությունն իր հանձնարարականներով մշակեց մի շարք միջոցառումներ՝ հանգուցային տնտեսական պրոբլեմների գծով, որոնց կենսագործումը կնպաստի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի հետագա բարելավմանը։

ՂՈՒԿԱՍՅԱՆ ՅՈՒ. Ս.

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԴԵՐԸ

*ՍՄԿԿ XXIII համագումարը մեծ ուշադրություն նվիրեց հասարակության բոլոր անդամների դաստիարակության և գիտակցական կարգապահության ամրապնդման խնդիրներին, նոր մարդու ձևավորմանը։ Համագումարում մի անգամ ևս նշվեց, որ սոցիալիստական հասարակարգի օրենքների և կանոնների կատարման պահանջը չի հակասում սովետական կարգերի դեմոկրատական հիմունքներին և դրանց հետագա զարգացման գրավականն է։ «...կուսակցությունը ելնում է այն բանից, որ սովետական օրգանների ամբողջ գործունեությունը և երկրի գործերի կառավարմանը քաղաքացիների ստեղծագործական լայն մասնակցությունը պետք է հիմնված լինեն սոցիալիստական օրինականության խստագույն պահպանման վրա» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 122, 1967 թ.)։*

*Կոմունիզմի կառուցումը պայմանավորված է մեր կյանքի բոլոր ոլորտներում հասարակական կազմակերպության և կարգապահության ամրապընդմամբ։ Ահա թե ինչու կոմունիստական շինարարության խնդիրների կենսագործումը ենթադրում է սոցիալիստական օրինականության ըստ ամենայնի պահպանում և սովետական իրավունքի դաստիարակչական դերի բարձրացում։*

*ՍՄԿԿ ծրագրում ընդգծված է սոցիալիստական կարգերի հետագա ամրապնդման անհրաժեշտությունը, տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքը կարգավորող իրավական նորմերի կատարելագործման պահանջը, որպես կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանն ու սովետական մարդու բազմակողմանի ծաղկմանը նպաստող պահանջ։ Համաժողովրդական սոցիալիստական իրավունքը որպես հասարակական հարաբերությունների կարգավորիչ, ակտիվ ներգործում է մարդկանց գործելակերպի վրա։ Սոցիալիստական իրավունքը նպաստում է, ամենից առաջ, սովետական մարդկանց լավագույն և ազնիվ հատկությունների զարգացմանը, նրանց միջև համագործակցությանը և փոխադարձ օգնության հաստատմանը, միաժամանակ, կանխում մարդկանց կենցաղում և գիտակցության մեջ դեռևս տեղ գտած մեր կյանքի համար խորթ երևույթների դրսևորումը։*

*Սովետական իրավունքի նորմերը բովանդակում են բարոյական բարձր հասկացություններ, որոնք արտահայտում են մեր մարդկանց հասարակական պարտքի գիտակցումը։ Դրանք քաղաքացիներին սովորեցնում են գիտակցորեն պահպանել սոցիալիստական համակեցության կանոնները, ազնվորեն*



*վերաբերվել հասարակական և ծառայական պարտականություններին։ Իրավունքի դաստիարակչական դերը պայմանավորված է նաև համոզմունքի ուժով և համակցված հասարակական ու պետական հարկադրանքի միջոցներով։*

*Բարոյական ազդակները՝ համոզումը, պարտքի գիտակցումը, պատասխանատվությունը, բարեխղճությունը, կոլեկտիվիզմի զգացումն առավել նշանակություն են ստանում ծառայական հարաբերությունների ոլորտում։ Սոցիալիստական իրավագիտակցության զարգացումն արտահայտվում է յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունների հոժարակամ, բարեխիղճ կատարմամբ։ Հասարակական բազմաթիվ գործոնների շարքում իրավական նորմերը և դատական պրակտիկան էական ներգործություն են ունենում նոր մարդու քաղաքացիական կերպարի ձևավորման վրա։*

*Հարգանքը օրենքի նկատմամբ սոցիալիստական օրինականության պարտադիր պայմանն է, գաղափարական աշխատանքի հիմնական խնդիրներից մեկը։ Քաղաքացիական պարտքի նկատմամբ իրավագիտակցությունը, ինքնակարգապահությունը, սոցիալիստական համակեցության նորմերի կատարումը, օրենքի հարգումը, նպաստում են սոցիալիստական հասարակարգի ամրապնդմանը։*

*Սովետական պետության օրենքները պարտադիր են ՍՍՀՄ բոլոր քաղաքացիների համար։ Մեր Սահմանադրությունը (հիմնական օրենքը), բացի իրավունքներ ու պարտականություններ սահմանելուց, նաև սահմանում է, որ յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է կատարել սովետական օրենքները, պահպանել աշխատանքի կարգապահությունը, ազնվորեն վերաբերվել հասարակական պարտքին, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները։ Սոցիալիզմը կազմակերպված հասարակություն է, որտեղ կարգապահությունը պարտադիր է հասարակական կյանքի բոլոր բնագավառներում՝ արտադրության մեջ, կենցաղում, պետական գործերի ղեկավարման ոլորտում և այլն։*

*ՍՄԿԿ XXIII համագումարը, բնութագրելով սոցիալիստական դեմոկրատիայի բովանդակությունը, ընդգծեց, որ այն անհամատեղելի է քաղաքացիական պարտքի նկատմամբ ինդիվիդուալիստական կամայականության, անարխիստական արհամարհանքի հետ։ Սոցիալիստական դեմոկրատիան ենթադրում է քաղաքացիների, պաշտոնատար անձանց ստանձնած պարտականությունների անշեղ կատարումը։ Այն, որպես հասարակության քաղաքական կազմակերպության ձև, սահմանել է ո՛չ միայն մարդկանց գործելակերպի, իրավունքների և պարտականությունների նորմեր, այլև նախատեսում է որոշակի արգելքներ, որոնք համապատասխանում են սովետական պետության և ժողովրդի շահերին։*

*Սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքները դրսևորվում են օրինականության և արդարադատության իրականացման և ամրապնդման մեջ։ Այն նպատակ ունի ապահովել սովետական պետության օրենքների ճշգրիտ և անթերի կատարումը բոլոր հիմնարկների, կազմակերպությունների, պաշտոնատար անձանց և ՍՍՀՄ քաղաքացիների կողմից։ Դրան հասնելու համար ենթադրվում է դատարանի (ինչպես նաև դատախազի, քննիչի, հետաքննության մարմինների աշխատողների) կողմից այն բոլոր միջոցների ամբողջականության խելացի օգտագործումը, որոնք հատկապես ուղղված են քաղաքացիներին կոմունիստական ոգով դաստիարակելու նպատակին։*

*Բարոյականության և արդարության նորմերը մեր օրերում դառնում են*

սովետական մարդկանց գործելակերպի կանոններ, որի շնորհիվ ամրապնդվում է քաղաքացիների գիտակցական ինքնակարգապահությունը։ Հասարակական պարտքի բարձր գիտակցումը, անհանդուրժողականությունը հասարակական շահերի խախտումների նկատմամբ՝ կոմունիստական բարոյականության կարևորագույն սկզբունքներից է, որը հասարակության անդամներին վարժեցնում է՝ ըմբռնել իրենց պատասխանատվությունը հասարակության առջև, անթերի կատարել իրենց պարտականությունները։

Մեր ժամանակներում հասարակայնությունը առաջնակարգ դեր է խաղում օրենքների խախտումները և հակահասարակական երևույթները կանխելու գործում։ Մասնակցելով հասարակական կարգի և քաղաքացիների իրավունքների խախտումների դեմ տարվող պայքարին, հասարակությանը վնասող զանցանքների կանխմանը, աշխատավորների լայն մասսաները պրակտիկ գործունեության դպրոց են անցնում, ուր ձևավորվում են նրանց իրավագիտակցությունը, հասարակական պարտքի գիտակցումը, հասարակական շահերի խախտումների հանդեպ՝ կոմունիստական վերաբերմունքը։ Այդ առնչությամբ կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1959 թվականի մարտի 2-ի «Հասարակական կարգի պահպանությանը աշխատավորների մասնակցության մասին» որոշումը։

Իրավախախտումները կանխելու գործում կարևոր դեր են խաղում ժողովրդական դրուժինաները, որոնք, օգտագործելով կանխման ամենատարբեր ձևերը, մարդկանց սովետական իրավագիտակցության, օրենքները հարգելու հասարակական զգացում են ներարկում։

Մեր կուսակցությունն աշխատավորներին հասարակական կյանքի պրակտիկ հարցերի քննարկմանը և լուծմանը լայնորեն ներգրավելու անշեղ կուրս է վերցրել։ Իրականություն է դարձել լենինյան այն հանճարեղ դրույթը, որ աշխատավոր բնակչությունն աստիճանաբար մասնակցի օրենսդրական ֆունկցիաների կատարման և պետության կառավարման գործին։ Այդ խնդրի հաջող իրականացմանը մեծապես նպաստում է իրավական գիտելիքների պրոպագանդան։

Քաղաքացին հարստացնելով իր գիտելիքները, ըմբռնելով, հասարական հարաբերությունների բովանդակությունը, ձեռք է բերում պետականորեն մտածելու ունակություն։ Նրա մոտ ձևավորվում են պարտքի գիտակցության էմոցիոնալ տարրեր, ամրապնդվում է հավատը պահանջների արդարացի կամ ոչ-արդարացի լինելու մեջ։ Օրենքների պարզաբանումը, իրավունքի պրոպագանդան բարձրացնում են պետական ապարատի աշխատողների և բոլոր քաղաքացիների իրավագիտակցությունը, օգնում նրանց իմանալու իրենց իրավունքներն ու պարտականությունները, օրենքները անշեղորեն և բարեխղճորեն կատարելու գիտակցության պատվաստում, ամրապնդում հասարակական կարգապահությունը, օրենքի խախտման դեպքում ապահովում պատասխանատվության կանչելը։

Իրավական գիտելիքների պրոպագանդման լավագույն ձևը դասախոսություններն ու զեկուցումներն են։ Օրենքների պարզաբանմամբ հանդես են գալիս կուսակցական, սովետական, արհմիութենական աշխատողները, գիտնական իրավաբանները, դատախազները, դատավորները, պետական անվտանգության և հասարակական կարգի պահպանության մարմինների ներկայացուցիչները։ Այս գործում բացառիկ է Գիտելիք ընկերության, հատկապես նրա՝ պետության և իրավունքի սեկցիայի, իրավական գիտելիքների ժողովրդական



համալսարանների դերը։ Իրավական նորմերի պրոպագանդման միջոցներից են գիտագործնական կոնֆերանսները։

Վերջին տարիներին հանրապետության կուսակցական և սովետական օրգաններն առավել ուշադրություն են նվիրել սոցիալիստական օրինականության հետագա ամրապնդմանը։ Հանրապետության քաղաքներում և շրջաններում կուսակցական կոմիտեները, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սովետները սկսել են հաճախակի քննության առնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության, օրինականության պահպանման հարցերը։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը մի շարք միջոցներ է ձեռնարկել ուժեղացնելու պայքարը հանցագործությունների, հատկապես պորտաբույծ կյանք վարող, հանրօգուտ աշխատանքից խուսափող անձանց դեմ։

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմը և կառավարությունն իրականացրել են մի շարք ձեռնարկումներ երեխաների և դեռահասների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքը բարելավելու համար։

Մեր հասարակարգում դեռ կան մարդիկ, որոնք անխղճորեն չարաշահում են սովետական օրենքների դեմոկրատական և մարդասիրական սկզբունքները, խախտում աշխատանքային կարգապահությունը, սոցիալիստական համակեցության կանոնները, հասարակության բարոյական նորմերը։ Այդ անձանց նկատմամբ չպետք է թուլացնել իրավական ներգործության և հարկադրանքի միջոցները։ Սովետական պետությունը մարդկանց գիտակցության մեջ և վարքագծում եղած իրավախախտումները ծնող կապիտալիզմի մնացուկների դեմ տարվող պայքարում մեծ չափով օգտագործում է համոզման ու դաստիարակման մեթոդները, իսկ անհրաժեշտության դեպքում գործում են պետական հարկադրանքը, քրեական պատիժը։

ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1966 թվականի հուլիսին կարևոր որոշումներ ընդունեցին հասարակական կարգի խախտումների և հանցագործությունների դեմ տարվող պայքարի ուժեղացման մասին։ Այդ որոշումները, մեծ նշանակություն տալով սովետական մարդկանց իրավագիտակցության դաստիարակմանը, պահանջեցին աշխատավորներին լայնորեն բացատրել գործող օրենսդրությունը, քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները, դատական, դատախազական և միլիցիայի մարմինների դերն ու նշանակությունը, նրանց խնդիրները։ Որոշումներում ընդգծված է, որ հիմնարկ-ձեռնարկությունների, արտադրամասերի գործունեության գնահատման հարցում անհրաժեշտ է հաշվի առնել կոլեկտիվի անդամների վերաբերմունքը սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման ուղղությամբ։

Համաձայն արհմիությունների սահմանած կարգի, նորարարներին, արտադրության առաջավորներին պատվավոր կոչումներ շնորհելիս, հաշվի է առնվում նաև նրանց աշխատանքային և հասարակական գործունեությունը, վարքագիծը, վերաբերմունքը՝ ընտանիքի և երեխաների դաստիարակության նկատմամբ։ Աշխատանքային կարգապահությունը խախտելու, կենցաղում պատշաճ վարքագիծ չունենալու դեպքում բանվորները, կոլտնտեսականները և ծառայողները կարող են զրկվել իրենց շնորհված կոչումից։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն «Կոլեկտիվներում, արդյունաբերական

ձեռնարկություններում և շինարարություններում սոցիալիստական կարգապահություն դաստիարակելու վերաբերյալ Տուլայի մարզի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» որոշման մեջ ընդգծեց, որ աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ ազնիվ վերաբերմունքը պետք է դառնա յուրաքանչյուր սովետական մարդու անձնական համոզմունքը, նրա վարքագծի չափանիշը: Սովետական քաղաքացիների դեմոկրատական իրավունքները և ազատություններն ապահովելու և կադրերին բարձր սկզբունքայնության ոգով դաստիարակելու վերաբերյալ կուսակցության հոգատարության նոր ապացույց է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի «Աշխատավորների նամակները քննության առնելու, աշխատանքները բարելավելու և նրանց ընդունելությունը կազմակերպելու մասին» որոշումը:

Իրավական գիտելիքների լայն պրոպագանդմանը մեծապես կնպաստի իրավաբանական գրականության հրատարակումը, որով, ցավոք, մեր հանրապետության համապատասխան օրգանները քիչ են զբաղվում: Հրապարակի վրա չկան հատկապես համաժողովրդական իրավունքի և պետության, սոցիալիստական պետական ապարատի լենինյան ոճի, սոցիալիստական իրավունքի դերի ու նոր մարդու ձևավորման, կոլեկտիվի ու անհատի և այլ թեմաներին նվիրված աշխատություններ, մենագրություններ, բրոշյուրներ:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը գաղափարական ճակատի-իրավագիտության առջև նոր խնդիրներ դրեց: Այն պահանջեց հարձակողական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության, սոցիալիստական իդեոլոգիայի խորթ հայացքների դեմ: Միաժամանակ նշվեց, որ անհրաժեշտ է գաղափարական աշխատանքը սերտորեն շաղկապել աշխատավորների աշխատանքային և հասարակական ակտիվության բարձրացման խնդիրների, հասարակության հանդեպ սովետական մարդկանց պարտքի և գործնական ավանդի հետ:

Հակահասարակական երևույթների, հանցագործությունների և այլ իրավախախտումների վերացումը համաժողովրդական գործ է, որտեղ պատասխանատու և պատվավոր դեր ունեն իրավունքը և իրավունքի պրոպագանդան:





ՊԵՏՐՈՍՅԱՆ Վ. Ա.

# ԼԵՆԻՆԸ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՄԱՍԻՆ

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը բանվոր դասակարգի մարտական դրոշն է, մարքս-լենինյան գաղափարախոսության բաղկացուցիչ մասը:

Ինտերնացիոնալիզմի սկզբունքներն առաջինը մշակել են պրոլետարիատի առաջնորդներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը: Նրանք ընդգծել են, որ կապիտալիզմի ոչնչացման և սոցիալիստական հասարակարգի կառուցման համար անհրաժեշտ է աշխատավորության միջազգային համերաշխություն, որ տարբեր երկրների բուրժուաների դաշինքին պրոլետարները «...պետք է հակադրեն բոլոր ազգերի բանվորների եղբայրական միությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 4, стр. 373):

Գիտականորեն ապացուցելով տարբեր ազգերի բանվորների խնդիրների ու նպատակների ընդհանրությունը, Մարքսը և Էնգելսը «Կոմունիստական կուսակցության մանիֆեստում» հռչակեցին «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը, որը նշանակում է կապիտալիզմի դեմ աշխարհի բոլոր ազգերի պրոլետարիատի միասնության անհրաժեշտություն և համատեղ պայքար՝ կոմունիստական հասարակարգի կառուցման համար:

Բովանդակ աշխարհի տարբեր երկրների և ազգերի աշխատավոր զանգվածների շահերի ու նպատակների ընդհանրությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի առաջացման հիմքն է, եղբայրական համերաշխության ու փոխադարձ օգնության երաշխիքը:

Վ. Ի. Լենինը պատմական նոր պայմաններում զարգացրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքսիստական սկզբունքները: Նա գիտականորեն հիմնավորեց, որ աշխատավորության ինտերնացիոնալ միասնությունն ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում սոցիալիստական հեղափոխության ժամանակ և նրա հաղթանակից հետո, որ միջազգային կապիտալի դեմ համատեղ պայքարի համար անհրաժեշտ է բոլոր երկրների բանվորների համերաշխությունը: Այդ առթիվ «Սոցիալ դեմոկրատական կուսակցության ծրագրի նախագիծն ու բացատրությունը» աշխատության մեջ Լենինը գրել է. «Կապիտալի տիրապետությունը միջազգային է: Ահա թե ինչու ազատագրության համար բոլոր երկրների բանվորների մղած պայքարն էլ հաջողություն ունի միայն այն դեպքում, երբ բանվորները միատեղ են պայքար մղում միջազգային կապիտալի դեմ: Ահա թե ինչու կապիտալիստների դասակարգի դեմ

*մղած պայքարում ռուսական բանվորի ընկերն է թե՛ գերմանացի բանվորը, թե՛ լեհ բանվորը, թե՛ ֆրանսիացի բանվորը, ճիշտ այնպես, ինչպես նրա թշնամին են թե՛ ռուսական, թե՛ լեհական, թե՛ ֆրանսիական կապիտալիստները» (Երկեր, հ. 2, էջ 125)։*

*Ռուսաստանի պրոլետարիատի հաջող պայքարի գրավականը Լենինը տեսնում էր ինչպես երկրի ներսում ապրող տարբեր ազգերի աշխատավորության, այնպես էլ մյուս երկրների բանվորների հետ ինտերնացիոնալ կապերի զարգացման, նրանց հետ եղբայրական համագործակցություն հաստատելու մեջ։*

*Լենինը ուսուցանում էր, որ բոլոր երկրների տարբեր ազգերի բանվոր դասակարգի շահերը և նպատակը նույնն են՝ վերացնել հին, կապիտալիստական հասարակարգը, հաստատել նոր՝ կոմունիստական հասարակարգ։ Պրոլետարիատի դասակարգային շահերի և իդեալի միասնությունը մերձեցնում, համախմբում է տարբեր ազգերի աշխատավորներին։ Քանի որ տարբեր ազգերի պրոլետարիատի թշնամին միջազգային է, նրանց խնդիրներն ու նպատակները նույնն են, ուստի, պետք է պայքարել, ո՛չ միայն մի ազգի պրոլետարիատի շահերի, այլ բոլոր ազգերի պրոլետարիատի ազատության ու անկախության համար։*

*Տարբեր ազգերի բանվորների կապիտալիստական շահագործման դեմ ամենօրյա համատեղ պայքարի հարցն առաջին հերթին ծագում է բազմազգ պետություններում։ Ահա թե ինչու բուրժուազիան ջանում է ազգային գժտություն հարուցել տարբեր ազգերի բանվորների միջև, որպեսզի ջլատի նրանց կազմակերպված, միասնական ելույթները։ «Նայեցեք կապիտալիստներին,— գրում է Լենինը,— նրանք աշխատում են «հասարակ ժողովրդի» շարքերում բորբոքել ազգային թշնամություն, իսկ իրենք փառավորապես կարգավորում են իրենց գործերը... Բանվորների դեմ միավորված են բոլոր ազգերի և կրոնների կապիտալիստները, իսկ բանվորներին ջանում են բաժանել ու թուլացնել ազգային թշնամությամբ» (Երկեր հ. 19, էջ 373)։*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմը խարսխվում է մարդասիրական բարձր սկզբունքների, ժողովուրդների միջև ներդաշնակություն հաստատելու նորմերի վրա։ «Պրոլետարական համերաշխության,— գրում է Վլադիմիր Իլյիչը,— բանվորների դասակարգային պայքարի ընկերական միասնության շահերը պահանջում են ազգերի ամենալիակատար իրավահավասարություն՝ վերացնելու համար ազգային ամենաչնչին իսկ անվստահությունը, օտարացումը, կասկածը, թշնամանքը» (Երկեր, հ. 20, էջ 356)։*

*Բուրժուազիայի դեմ պրոլետարիատի պայքարը ձևով ազգային է, որը դրսևորվում է տվյալ երկրի սոցիալ-պատմական առանձնահատկություններով, առաջին հերթին սեփական բուրժուազիային տապալելու նպատակով։*

*Բանվորական շարժման ինտերնացիոնալ բնույթը արտահայտվում է դասակարգային պայքարի ազգային և միջազգային շահերի միասնության, գործողությունների ներդաշնակ զուգորդման մեջ։ Այստեղ սեփական բուրժուազիայի դեմ տարած հաղթանակը ստանում է միջազգային նշանակություն, որտեղ իսկական ազգային շահերը համընկնում են ինտերնացիոնալ շահերին։*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրությունը չեն հակադրվում իրար, գտնվում են օրգանական կապի մեջ։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը առանց հայրենասիրության, վերջին հաշվով, վեր է ած-*



*վում բուրժուական կոսմոպոլիտիզմի։ Կոմունիստները մշտապես ղեկավարվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության մարքսլենինյան գաղափարներով։*

*Պրոլետարիատի ազգային և միջազգային խնդիրների, ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ամեն հակադրում Լենինը որակում էր որպես հեռացում ինտերնացիոնալիզմի մարքսիստական սկզբունքներից։ Բոլոր երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների պատասխանատվությունը, խնդիրները երկակի են՝ հայրենական, ազգային և միջազգային, ինտերնացիոնալիստական։ Անհնար է լավագույն լուծում տալ հայրենական, ազգային հարցին միջազգայինի հաշվին և հակառակը։*

*Օպորտունիստները փորձել են սեպ խրել պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության միջև։ Սրանք ամեն կերպ ձգտել են պառակտել միջազգային կոմունիստական շարժման միասնությունը՝ նացիոնալիզմը հակադրելով պրոլետարական ինտերնացիոնալիզմին։ Այսպես են վարվել ո՛չ միայն մանրբուրժուական կուսակցությունները, այլև մանրբուրժուական գաղափարներով վարակված մի քանի բանվորական կուսակցություններում խցկված պառակտիչները։ Մանրբուրժուական հայրենասիրությունը միջազգային բանվորական շարժման մեջ օպորտունիզմի առաջացման աղբյուրներից մեկն է։ Ամենից առաջ այն քայքայում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության միասնությունը, խախտում նրանց միջև եղած ճիշտ փոխհարաբերությունները։*

*Ազգայինի և ինտերնացիոնալիստականի, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ճիշտ հարաբերությունն առաջնակարգ նշանակություն ունի միջազգային բանվորական շարժման, պրոլետարիատի դասակարգային պայքարի համար։ Ելնելով միջազգային պրոլետարիատի միասնության սկզբունքներից, Լենինը մշտապես ընդգծել է նացիոնալիզմի և ազգային սահմանափակության դեմ անհաշտ պայքարի կարևորությունը, մերկացրել բուրժուազիայի քայքայիչ գործունեությունը, որն, ըստ էության, ուղղված է տարբեր ազգերի աշխատավորների միասնության դեմ։*

*Պատմության գիտական մատերիալիստական խոր իմացության հիման վրա Լենինը տվեց ազգային հարցի մարքսիստական վերլուծությունը, մշակեց կոմունիստական կուսակցության ազգային հարցի տեսությունը, ծրագիրը և քաղաքականությունը։ Նա անհաշտ, հետևողական պայքար է մղել մեծապետական շովինիզմի ու տեղական նացիոնալիզմի դեմ, մեծ աշխատանք կատարել բոլոր ազգերի աշխատավորության միջև ինտերնացիոնալ կապերի ամրապնդման բնագավառում։ Նա ցույց է տվել, որ միմիա՛յն մարքսիզմն է պաշտպանում ազգերի իսկական ազատությունն ու միասնությունը, որ ազգային հարստահարման, ազգային թշնամանք հրահրող քաղաքականությանը մարքսիզմը հակադրում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ազգերի իրավահավասարության, բոլոր ազգերի ժողովուրդների բարեկամության ու համերաշխության քաղաքականություն։ «Մարքսիզմն անհաշտելի է նացիոնալիզմի հետ,— գրել է Լենինը,— թեկուզ նա լինի ամենից «արդարացին», «մաքուրը», նուրբը և քաղաքակիրթը։ Մարքսիզմն ամեն կարգի նացիոնալիզմի փոխարեն առաջադրում է ինտերնացիոնալիզմը...» (Երկեր, 20, էջ 23)։*

*Նացիոնալիզմը ուղղված է տարբեր ազգերի աշխատավորության միջև ազգային թշնամություն հրահրելու, մեկ ազգի տիրապետությունը մյուսի*

վրա ամրապնդելու: Հատկապես բազմազգ երկրների աշխատավոր մասսաներին Լենինը կոչ էր անում թույլ չտալ, որ իրենց խաբեն նացիոնալիստական լոզունգներով, ցարական ինքնակալության և բուրժուազիայի նենգ կոմբինացիաներով: Այդ մասին «Մայիսի մեկը» թռուցիկում Լենինը գրել է. «Ցարական կառավարությունը ջանում է մի ժողովուրդը գրգռել մյուսի դեմ, նա կոտորած է սարքել Բաքվում՝ հայերին զրպարտելով թուրքերի (ադրբեջանցիների— Վ. Պ.) առաջ, նա այժմ նոր ջարդ է պատրաստում հրեաների դեմ, մութ ժողովրդի մեջ ատելություն հրահրելով նրանց դեմ (Երկեր, հ. 8, էջ 442):

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների պաշտպանության ու զարգացման գործում մեծ նշանակություն ունեցավ Լենինի պայքարը ավստրո-հունգարական սոցիալ-դեմոկրատների առաջ քաշած կուլտուր-ազգային ավտոնոմիայի բուրժուա-նացիոնալիստական ռեակցիոն ծրագրի դեմ: Այդ ծրագրի հեղինակներն իրականում պաշտպանում էին տարբեր ազգերի անհավասարությունն ու անջատումը, դրանով ձգտում քայքայել պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնությունը: Լենինը բացահայտեց այդ ծրագրի էությունը՝ որպես բուրժուական նացիոնալիզմի այլատեսակ և առաջ քաշեց ազգերի ինքնորոշման իրավունքի մարքսիստական սկզբունքը:

Նախապատրաստելով նոր տիպի կուսակցության ստեղծման հարցը, նա հիմնավորեց կուսակցության ազգային ծրագրի՝ ազգերի ինքնորոշման և կուսակցության կառուցման ինտերնացիոնալիստական սկզբունքները, վճռականորեն հանդես եկավ հանուն միևնույն տերիտորիայում ապրող բոլոր ազգերի բանվորներին միասնական սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մեջ միավորելու: Լենինյան այդ տեսակետն ընդունվեց կուսակցության II համագումարում և ՌՍԴԲԿ-ն համարվեց Ռուսաստանում ապրող բոլոր ազգերի պրոլետարների միասնական, ինտերնացիոնալ կուսակցություն:

Ռուսաստանի, այդ թվում նաև Անդրկովկասի բոլշևիկյան կուսակցական կազմակերպություններն իրենց ստեղծման առաջին իսկ օրերից առաջնորդվել են ինտերնացիոնալ սկզբունքներով և ինտերնացիոնալ համախմբվածության տրադիցիաներով: Բարձր գնահատելով Կովկասի բոլշևիկների ինտերնացիոնալ տրադիցիաները, Լենինը, 1913 թվականին Մաքսիմ Գորկուն գրած նամակում, ընդգծել է. «Մեզ մոտ և Կովկասում ս-դ. վրացիները+հայերը+թաթարները (ադրբեջանցիները— Վ. Պ.)+ռուսները աշխատում էին միասին տասը տարուց ավելի մ ի ա ս ն ա կ ա ն ս.-դ. կազմակերպության մեջ: Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը»: (Երկեր, հ. 35, էջ 79):

Բոլշևիկյան կուսակցությունը, որպես կենտրոնացված ինտերնացիոնալիստական կազմակերպություն, իր շարքերում համախմբեց բազմազգ Ռուսաստանի բանվոր դասակարգի առաջավոր մասը: «Հարկավո՞ր է արդյոք» ինքնուրույն քաղաքական կուսակցություն հրեական պրոլետարիատին» աշխատության մեջ Վլադիմիր Իլյիչը գրել է. «...ինքնակալության դեմ պայքարի, ամբողջ Ռուսաստանի բուրժուազիայի դեմ պայքարի հարցերում մենք պետք է հանդես գանք որպես միասնական, կենտրոնացած, մարտական կազմակերպություն, մենք պետք է առանց լեզվի և ազգության խտրության հենվենք ամբողջ պրոլետարիատի վրա, որը համախմբված լինի տեսական և գործնական տակտիկական և կազմակերպական հարցերի միասնական



մշտական լուծումով, և ոչ թե ստեղծենք առանձին, յուրաքանչյուրն իր ուղիով ընթացող կազմակերպություններ, չթուլացնենք մեր գրոհի ուժը՝ մասնատվելով բազմաթիվ ինքնուրույն քաղաքական կուսակցությունների» (Երկեր, հ. 6, էջ 419—420):

«Ազգային հարցը մեր ծրագրում» աշխատության մեջ Լենինն ազգի ինքնորոշման իրավունքի պահանջները օրգանապես կապեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետ: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը հիմնված է ազգերի ճանաչման, նրանց սուվերենության, իրավահավասարության և փոխադարձ հարգանքի վրա:

Պրոլետարիատի առաջնորդը նշել է, որ ինտերնացիոնալ համագործակցություն հնարավոր է միայն իրավահավասար ժողովուրդների և ազգերի միջև: «Նամակ Ուկրաինայի բանվորներին և գյուղացիներին» աշխատության մեջ Լենինը նշել է. «Մենք ազգային թշնամության, ազգային պառակտման, ազգային առանձնացվածության հակառակորդներ ենք: Մենք միջազգայնականներ, ինտերնացիոնալիստներ ենք: Մենք ձգտում ենք աշխարհի բոլոր ազգերի բանվորներին և գյուղացիներին սերտորեն միավորել և լիովին ձուլել մեկ միասնական համաշխարհային սովետական հանրապետության մեջ» (Երկեր, հ. 30, էջ 367): Պայքարելով պրոլետարիատի ինտերնացիոնալ կազմակերպություն ստեղծելու համար, Լենինը միաժամանակ հատուկ ուշադրություն էր նվիրում առանձին երկրների պրոլետարիատի ազգային շահերի պաշտպանությանը:

Լենինյան ազգային քաղաքականությունը կիրառելի է բոլոր ժողովուրդների համար, և որովհետև այն իր բնույթով ինտերնացիոնալիստական է, նաև պաշտպանում է բոլոր ազգերի աշխատավորների շահերը:

Մեծ առաջնորդը նշում է, որ ազգային հարցում պրոլետարիատի հիմնական լոզունգը պետք է լինի ազգերի ինքնորոշման իրավունքը, մարզային ինքնավարության ճանաչումը, ազգերի իրավահավասարությունը և նրանց միջև պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կիրառումը:

Ազգերի ինքնորոշման իրավունքի հռչակումը և ճանաչումը պրոլետարական ինտերնացիոնալիզմի անկյունաքարն է: Լենինն իր ողջ գործունեության ընթացքում պաշտպանել և կիրառել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի ծրագրային այդ պահանջը:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը ոչնչացրեց ազգային ճնշման և կեղեքման տնտեսական ու քաղաքական հիմքը, նոր ուղի բացեց ժողովուրդների բարեկամության ու ինտերնացիոնալ միասնության համար:

1919 թ. դեկտեմբերի 28-ին Դենիկինի դեմ տարած հաղթանակների առթիվ Ուկրաինայի բանվորներին ու գյուղացիներին ուղղած նամակում Լենինը գրել է. «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալավ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր, հ. 30, էջ 368):

Այս գաղափարները դարձան սովետների միութենական առաջին համագումարի ծրագիրը: ՍՍՀՄ-ի ստեղծումը կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների մարմնացումն է:

*ՍՍՀՄ-ում ապրող 131 ազգերի և ազգությունների բարեկամությունն ու բազմակողմանի համագործակցությունն ունեն իրենց տնտեսական, քաղաքական, գաղափարական հիմքերը: Սովետական բազմազգ ժողովուրդը բարձր է պահում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, գնահատում տարբեր ազգերի լենինյան բարեկամությունը, որը ՍՍՀՄ հզորության և հաղթանակների հուսալի գրավականն է:*

*Մեր երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակը հաստատեց լենինյան ազգային քաղաքականության ճշտությունը: Այժմ սոցիալիստական սիստեմի ստեղծումով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները տարածվեցին միջպետական փոխհարաբերություններում:*

*Համաշխարհային կոմունիստական շարժումը զարգանում է մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գիտական հիմքերի վրա: Այն արտահայտում և պաշտպանում է միջազգային բանվոր դասակարգի շահերը, պայքարում նրա սոցիալական և ազգային ազատագրության համար, չի թաքցնում իր վերջնական նպատակը՝ ամբողջ աշխարհում կոմունիստական հասարակարգի կառուցումը:*

*Միաժամանակ, համաշխարհային կոմունիստական շարժումը զարգանում է ազգային հողի վրա, որն իր կազմով համասեռ չէ, կազմված է ազգային ջոկատներից, որոնք ապրում են սոցիալական ամենատարբեր միջավայրերում: Այդ շարժման մեջ կոմունիստական կուսակցությունները զուգորդում են ազգային և միջազգային շահերը:*

*Ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի հանճարեղ ուսմունքով, ՍՄԿԿ-ն, երկրագնդի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մեծ մասը վճռականորեն պաշտպանում և անշեղորեն կիրառում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները: Այդ սկզբունքների դրսևորման ակնեբրից է (1968 թվականի փետրվարի 26-ից մարտի 5-ը) Բուդապեշտում կայացած աշխարհի 67 երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների կոնսուլտատիվ հանդիպումը:*

*Միջազգային հեղափոխական շարժումն ավելի ամրապնդելու, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հարաբերությունների միջև եղած ժամանակավոր դժվարությունները հաղթահարելու նպատակով, կոնսուլտատիվ հանդիպման մասնակիցները որոշեցին 1968 թվականի նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին Մոսկվայում հրավիրել միջազգային խորհրդակցություն՝ աշխարհի բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մասնակցությամբ:*

*Առաջիկա միջազգային խորհրդակցությունը պետք է քննարկի արդի պայմաններում իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի գործողությունների միասնության հարցը:*

*Բուդապեշտի կոնսուլտատիվ հանդիպման մասնակիցների ընդունած կոմյունիկեում ասված է. Կոնսուլտատիվ հանդիպումը ելնում է այն բանից, որ խորհրդակցության նպատակն է ամրապնդել կոմունիստական շարժման միասնությունը, նպաստել սոցիալիզմի ու դեմոկրատիայի բոլոր ուժերի համախմբմանը իմպերիալիզմի դեմ, ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրության ու ամբողջ աշխարհի խաղաղության համար մղվող պայքարում:*



*Կոնսուլտատիվ հանդիպումը ցույց տվեց, որ հասունացել է եղբայրական կուսակցությունների միջազգային նոր խորհրդակցություն հրավիրելու խնդիրը: Այնտեղ նշվեց, որ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների գործունեության միասնության հիմքը պետք է լինի՝ ամեն մի առանձին կուսակցության անկախությունը, ազգային առանձնահատուկ խնդիրների և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հարցերի ներդաշնակ զուգորդումը: «Քանի դեռ,— գրում է Լենինը,— ժողովուրդների ու երկրների միջև գոյություն ունեն ազգային և պետական տարբերություններ — իսկ այդ տարբերությունները պրոլետարիատի դիկտատուրան նույնիսկ համաշխարհային մասշտաբով իրագործվելուց հետո էլ կպահպանվեն շատ ու շատ երկար ժամանակ— բոլոր երկրների կոմունիստական բանվորական շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնությունը պահանջում է ոչ թե բազմազանության վերացում, ոչ թե ազգային տարբերությունների ոչնչացում (դա անմիտ ցնորք է ներկա մոմենտի համար), այլ կոմունիզմի* հիմնական *սկզբունքների (սովետական իշխանության և պրոլետարիատի դիկտատուրա) այնպիսի կիրառում, որը* մասնավորություններում ճիշտ ձևափոխեր *այդ սկզբունքները, դրանք ճիշտ հարմարեցներ, կիրառեր ազգային ու ազգային-պետական տարբերությունների նկատմամբ: Յուրաքանչյուր երկրին* կոնկրետ *մոտեցում ունենալով, հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային առանձնահատուկը, ազգային-սպեցիֆիկը՝* միասնական *ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար...» (Երկեր, հ. 31, էջ 97—98):*

*Արդի պայմաններում, երբ իմպերիալիստական պետությունները ԱՄՆ-ի գլխավորությամբ ավելի ու ավելի են ընդլայնում իրենց ագրեսիվ գործողությունները Վիետնամում և այլ երկրներում, երբ մեծ ջանքեր են գործադրում թուլացնելու միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարիմ լինելը, սոցիալիստական երկրների համագործակցությունը, մարքս-լենինյան կուսակցությունների համախմբվածությունն ու միասնությունն ավելի կարևոր նշանակություն են ստանում:*



ՍԻՄՈՆՅԱՆ Գ. Հ.

# ԱՆՁՆԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՍԿԱՑՈՒԹՅԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Անձնավորության պրոբլեմն ընդգրկում է այնպիսի էական հարցեր, ինչպիսիք են հասարակության մեջ նրա իրավունքների, շահերի, ճակատագրի, նրա դերի և պարտականությունների, նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման բնույթի ու մակարդակի, նրա անհատական բազմապիսի ունակությունների ու ձիրքերի հայտնաբերման, ձևավորման, զարգացման և կիրառման ուղիները ու միջոցները։ Իսկ այդ ամենը, բնականաբար, իրենց հերթին դրսևորվում են սոցիալական պայմանների, հասարակական կարգերի, վերջին հաշվով, տվյալ արտադրաեղանակի նկատմամբ անձնավորության ունեցած փոխհարաբերության մեջ։ Անձնավորությունն այդ կարող է հասկանալ կամ չհասկանալ, կարող է հասկանալ տարբեր չափով կամ պատկերացնել աղավաղված, բայց դրանով չի փոխվում հարցի էությունը։

Այստեղից տրամաբանորեն հետևում է, որ անձնավորության լինելությունը պայմանավորված է հասարակության հակադարձ հարաբերությամբ, այսինքն այն բանով, թե տվյալ հասարակությունը որ չափով և ինչ աստիճանի է նպաստում մարդու՝ որպես անձնավորության դրսևորմանը, ձևավորմանը և նրա կենսագործունեությանը։ Հետևաբար «անձնավորություն» հասկացությունը չունի և չի կարող ունենալ մշտապես նույնական ու անփոփոխ բովանդակություն։ Այն փոփոխվում է պատմական կոնկրետ պայմաններին համապատասխան։

Հասարակությունն իր պատմական զարգացման յուրաքանչյուր էտապում բաղկացած է անհատներից, որոնք միմյանց հետ կապված են որոշ արտադրական և ընդհանուր սոցիալական հարաբերություններով։ «Ամեն մի մարդկային պատմության առաջին նախադրյալը,—ասել է Մարքսը,—դա, իհարկե, կենդանի մարդկային անհատների գոյությունն է։ Ուստի և առաջին կոնկրետ փաստը, որը պետք է հավաստվի, դա այդ անհատների մարմնական կազմակերպությունն է և դրանով պայմանավորված նրանց հարաբերությունն է դեպի մնացած բնությունը... Ավելի մեծ չափով, դա տվյալ անհատների գործունեության որոշ եղանակն է, նրանց կենսագործունեության որոշ տեսակն է, նրանց կյանքի որոշ եղանակը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 3, стр. 19)։

Այդ հագամանքների շնորհիվ «անձնավորություն» հասկացության ընդհանուր և մասնակի սահմանումը, նրա բովանդակության հայտնաբերումը, անձ-



նավորության և հասարակության փոխհարաբերությունների հարցի պարզաբանումը դառնում է սոցիոլոգիական էական պրոբլեմներից մեկը, իսկ «անձնավորության» հասկացողությունը՝ սոցիոլոգիական կարևոր կատեգորիաներից մեկը։ «Անձնավորություն» հասկացողությունը մտնում է նաև հոգեբանության առարկայի մեջ, որպես նրա կատեգորիաներից մեկը։ Սակայն հարցի այդ կողմը այստեղ չի քննարկվում։

Սոցիոլոգիայի պատմության մեջ առաջին անգամ մարքսիզմը հաղթահարեց այն անճշտությունները, սահմանափակությունները, իդեալիստական ու մետաֆիզիկական բազմապիսի սխալները (որոնք հատուկ էին անցյալի ուսմունքներին) և ստեղծեց «անձնավորություն» հասկացության սահմանման գիտական հիմքերը։ Չնայած դրան, հետագայում այս կամ այն առումով այն քննարկման է ենթարկվել և կարիք է զգացվել նրա բովանդակությունն ավելի խորացնելու։ Այդ հարցի քննարկումը գիտական մեծ կարևորություն ձեռք բերեց առանձնապես կոմունիստական հասարակության կառուցման ներկա պայմաններում։

«Անձնավորություն» հասկացությունը ճշտելու և սահմանելու գործում, մեր կարծիքով, առաջնակարգ նշանակություն ունի այն մի շարք ուրիշ հասկացությունների հետ բաղդատելն ու համեմատելը, որոնք իրենց տարբեր կողմերով ու գծերով գտնվելով փոխադարձ ներթափանցման մեջ, կարող են երբեմն մեզ շփոթել, խանգարել ճիշտ հասկանալու դրված խնդրի էությունը։ Դրանցից կարելի է նշել «մարդ», «մարդկային էակ», «մարդու էություն», «անհատ», «անհատականություն» կարևոր հասկացությունները։

«Մարդկային էակ» հասկացությունն ամենաընդհանուր սեռային կամ տեսակային հասկացություն է, ավելի շուտ էթնիկական-բիոլոգիական հասկացություն, որով մարդկային տեսակը տարբերվում է կենդանիների մնացած բոլոր տեսակներից։ «Մարդկային էակ» հասկացությունը բոլոր հանգամանքներում ու պայմաններում ունի բիոլոգիական որակական տարբերիչ բովանդակություն՝ անկախ մարդու հասակից ու կրթության աստիճանից, ազգային, ցեղական, դասակարգային, կրոնական և սեռային տարբերություններից, անկախ մարդկանց գույքային վիճակից, գրաված պաշտոնից և այլն։ Իսկ «մարդ» հասկացությունն ի տարբերություն «մարդկային էակ» հասկացության, նրան բնորոշում է որպես հասարակության անդամի, որպես հասարակական (առաջին հերթին արտադրական) այն հարաբերությունների ամբողջության, որոնք գոյություն ունեն պատմական տվյալ կոնկրետ կացության մեջ, այսինքն որպես մի դեմք, որը հասել է իր հասուն վիճակին, մասնակցում է սոցիալական երևույթներին և, առաջին հերթին, հասարակության արտադրական կյանքին։

Այդ առումով ամեն մի մարդկային էակ դեռ մարդ չէ այդ բառի ուղղակի և գիտական ճիշտ իմաստով (համեմատիր երեխայի հետ)։ Երբեմն «մարդ» հասկացությունը վերցվում է լայն և նեղ իմաստով։ Լայն իմաստով «մարդ» հասկացությունը նույնացվում է «մարդկային էակ» հասկացության հետ, իսկ նեղ իմաստով այն հաճախ նույնացվում է «մարդկային էություն», «մարդկային անձնավորություն» հասկացությունների հետ։

Կարող է թվալ, թե «մարդ» հասկացությունը նեղ իմաստով համընկնում է «անձնավորություն» հասկացության հետ։ Մի քիչ առաջ անցնելով մենք պետք է հավաստենք, որ դա ճիշտ չէ։ Ոմանք ասում են, թե «մարդ» հասկացությունն ավելի բարձր է, քան «անձնավորություն» հասկացությունը,

քանի որ նա մարդկայնության սինոնիմն է: Ոմանք պնդում են ընդհակառակը: Կարելի է ասել, որ որոշ սահմաններում երկու կարծիքն էլ ճիշտ են, նայած թե ինչպիսի բովանդակություն է դրվում նրանցում: Սակայն մենք համոզված ենք, որ «անձնավորություն» հասկացությունն ավելի բարձր է, քան «մարդ» հասկացողությունը, քանի որ մարդն ամբողջականանում և հասարակական դեմք է ստանում շնորհիվ այն բանի, որ նա միաժամանակ դրսևորվում է որպես անձնավորություն: Եթե մենք «մարդ» հասկացությունը (իր նեղ իմաստով) նույնացնենք «անձնավորություն» հասկացության հետ, ապա այդ դեպքում անձնավորությունը (այնպես ինչպես մարդը) կհանդիսանար հասարակական (արտադրական) հարաբերությունների սոսկ միագումարը, որի մեջ վերջ ի վերջո դրսևորվում է առհասարակ մարդկային էությունը: Այդ դեպքում մենք ստիպված պետք է լինենք ամեն մի մարդու, որպես հասարակական էակի, համարել անձնավորություն: Սակայն մենք գտնում ենք, որ դա ճիշտ չէ:

Բայց առայժմ մի կողմ թողնելով «անձնավորություն» հասկացության հետագա վերլուծությունը, սեղմ կերպով քննարկենք «անհատ» (ИНДИВИДИУУМ) կամ անհատականություն (ИНДИВИДУАЛЬНОСТЬ) հասկացության բովանդակությունը: «Անհատ» հասկացությունը ծագում է «տեսակ» և «անհատատեսակ» ավելի ընդհանուր հասկացություններից, որոնք կիրառվում են բիոլոգիայի և մյուս գիտությունների մեջ: «Անհատատեսակն» ի տարբերություն «տեսակից», «խմբից», «սեռից», «կոլեկտիվից», «դասակարգից», «մասսայից» և այլն (այստեղ մենք վերցրել ենք նրա կիրառումը ինչպես բնական գիտություններում, այնպես էլ սոցիոլոգիայում, դա հարցի բնույթը չի փոխում) նշանակում է վերոհիշյալ հասկացությունների մեջ մտնող եզակի, առանձին, սահմանափակ առարկա կամ երևույթ, առանձին, ստորաբաժանված էակ, ինքնուրույն գոյություն ունեցող կենդանի օրգանիզմ: Սոցիալական կյանքում «անհատ» (ИНДИВИДИУУМ) հասկացությունը դիտվում է իբրև ինքնուրույն կերպով հանդես եկող և իր ինքնուրույն, եզակի բնությունն ունեցող ամբողջի մի մասնիկի, սոցիալական կոլեկտիվի մասնիկի իմաստով: «Մարդկային անհատ» հասկացությունով նշվում է նրա՝ մարդկային էակին պատկանելությունը, անկախ նրա սոցիալական կամ հոգեբանական բնութագրության: Սոցիալական կոլեկտիվ հասկացությունն այդ իմաստով դիտվում է որպես անհատների միագումար:

Վերադառնալով «անձնավորություն» հասկացության բովանդակության պարզաբանմանը պետք է նշել, որ այդ հարցն այստեղ դժվարանում է այն պատճառով, որ անձնավորությունը, որպես այդպիսին (անձնավորություն ընդհանրապես) գոյություն չունի ճիշտ այնպես, ինչպես գոյություն չունի հասարակություն ընդհանրապես: Անձնավորությունը հասարակական զարգացման արդյունք է և հանդիսանում է հասարակական հարաբերությունների սուբյեկտը: Բայց նա այդպիսին է ոչ թե առանձնացած ձևով, ոչ թե ինքն իրենով, այլ իր իմաստն է ստանում որպես սոցիալական կոլեկտիվի (դասակարգի, ազգի, դասի, ամբողջությամբ վերցրած հասարակության) մի մաս: «Մարդու էությունը,—գրել է Մարքսը,—առանձին անհատին հատուկ վերացական մի բան չէ, իր իրականության մեջ այն հասարակական բոլոր հարաբերությունների միագումարն է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 3. стр. 3):

Քանի որ մարդիկ պատմական ամեն էպոխայում կապված են միմյանց հետ սոցիալական որոշ հարաբերություններով, հետևապես անձնավորությունն



իրենով արտահայտում է տվյալ սոցիալական հարաբերությունների ամբողջությունը, գտնվում է սոցիալական որոշ (դասակարգային կամ ոչ դասակարգային) կեցության մեջ: Սակայն դասակարգային հասարակություններում սոցիալական միջավայրը, սոցիալական կեցությունն ու գույքային հարաբերությունները հասարակության բոլոր անդամների համար միատեսակ չեն: Սոցիալական այդ միջավայրը ստորաբաժանվում է դասակարգի, խմբի, խավի և այլն: Այդ ամենի ուժով այստեղ որոշակի սոցիալական միջավայրերը ստեղծում ու ձևավորում են անձնավորությունների իրենց հատուկ տիպերը՝ բուրժուա, կալվածատեր, բանվոր, գյուղացի և ուրիշ անձնավորություններ: Ուստի ամեն մի անձնավորություն իր բովանդակության կոնկրետ սահմանումը պետք է ստանա պատմական տվյալ կոնկրետ պայմանների հիման վրա:

Այդ հարցը քննելիս մենք կարող ենք որոշ չափով կամ հատուկ տեսանկյունով վերանալ տվյալ կոնկրետությունից, տվյալ խիստ պատմական որոշակիությունից և տալ անձնավորության քիչ թե շատ ընդհանուր սահմանումը՝ տարրական և առավել ընդհանուր այն գծերի հիման վրա, որոնք բնորոշում են ամեն մի անձնավորության՝ անկախ կոնկրետ պատմական, սոցիալ-քաղաքական ու տնտեսական պայմաններից:

«Անձնավորություն» հասկացությունը (վերցրած իր այդ ձևով) տարբերվում է «ընդհանրապես մարդ» հասկացությունից: Ամեն մի մարդ, ինչպիսին էլ նա լինի, «մարդն ընդհանրապես» ի ծնե «մարդկային էակ», ի ծնե «անհատ» է, նույնիսկ ի ծնե «մարդ» է բառի վերոհիշյալ իմաստով, առհասարակ, անկոնկրետության իմաստով: Բայց «անձնավորությունը» բացառապես սոցիալական երևույթ է: Մարդը՝ անձնավորություն է ոչ ի ծնե: Ուստի և «անձնավորություն» հասկացությունն իր նախնական ամենատարրական ձևով վերաբերում է ոչ թե ամեն մի մարդու, ոչ թե մարդուն ընդհանրապես և առհասարակ, այլ առաջին հերթին սոցիալական տեսակետից միմիայն հասուն մարդուն:

Իհարկե, մարդու մոտ հենց սկզբից, նրա մանկության հասակից առաջ են գալիս անձնավորության, ինչպես նաև մարդկային (սոցիալական) այլ գծեր, բայց դեռ թույլ, իրենց սաղմնային վիճակում: Հետագայում, սոցիալական որոշ հանգամանքների հետևանքով, այդ գծերը կարող են զարգանալ ու ձևավորվել լրիվ չափով, կամ քիչ չափով, կամ նույնիսկ չզարգանալ ու չձևավորվել: Այդ բնագավառում ամեն ինչ կախված է սոցիալական հանգամանքներից: «Հասարակական մարդու զգացմունքները,— գրել է Մարքսը,— սոսկ ուրիշ զգացմունքներ են, քան ոչ հասարակական մարդու զգացմունքները: Մարդկային զգացողական հարստությունը զարգանում է, իսկ հաճախ առաջին անգամ ծագում է միայն շնորհիվ մարդկային էակի առարկայական ծավալվող հարստության... (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1958, էջ 503: Ընդգծումը մերն է, Գ. Ս.):

Այսպիսով, մարդը միայն որոշ սոցիալ-քաղաքական հանգամանքների շնորհիվ է անձնավորություն դառնում: Մարդու ձևավորումը որպես անձնավորություն, այսինքն անձնավորության լինելիությունն ու հարստացումը երկակի պրոցեսների արդյունք է. մի կողմից նրա անհատական, մյուս կողմից՝ հասարակական զարգացման: Անձնավորության ձևավորման պրոցեսում վերջին հանգամանքը որոշիչ նշանակություն ունի: Այսպես, երեխայի հասունացման ընթացքում նրա վարքի և արարքների բիոլոգիական պայմանավորվածությունը գնալով ավելի ու ավելի է թուլանում, իսկ սոցիոլոգիական պայ-

մանավորվածությունը գնալով ավելի ու ավելի է ուժեղանում և նա աստիճանաբար ձևավորվում է որպես անձնավորություն:

Բայց «անձնավորություն» հասկացությունը ընդգրկում է մարդու ոչ թե բոլոր ու ամեն տեսակի գծերն ու առանձնահատկությունները, այլ միայն նրա գլխավոր, բնորոշ, տիպական, էական գծերն ու առանձնահատկությունները: Այդ տեսակետից դեռ ամեն մի հասուն մարդ, ամեն մի անհատ չէ որ անձնավորություն կարող է համարվել: Եվ այդ հանգամանքը ոչ մի չափով չի թուլացնում «ա մ ե ն մ ի մ ա ր դ ո ւ իրավունքն իրեն անձնավորություն համարել», երբ նա իսկապես հասել է դրան և ըմբռնել իր այդ վիճակը: Ոչ միայն բոսյակները, լյումպենները և անուղղելի հասարակական վնասակար մարդիկ չեն կարող համարվել անձնավորություններ, որպես այդպիսիք, այլև առանձին դեպքերում նույնիսկ այնպիսի մարդիկ, որոնք օժտված են միանգամայն որոշակի արժանիքներով:

Մարդը անձնավորություն է դառնում շնորհիվ սոցիալական կյանքին իր ավել կամ պակաս գիտակից և ակտիվ մասնակցության, շնորհիվ իր ձգտմանը՝ քաղաքականապես ու բարոյապես գնահատելու իր վիճակը հասարակության մեջ, գնահատելու մյուս սոցիալական երևույթները: Անձնավորության դրսևորման լիակատարությունը, առաջին հերթին, բնորոշվում է սոցիալական եղելությունների նրա գիտակցական գնահատման, նրանց նկատմամբ իր վերաբերմունքի ու կամքի դրսևորման աստիճանով, հասարակության և մարդկանց ճակատագրին նրա մասնակցության բնույթով և խորությամբ, հասարակական առաջադիմությանն այս կամ այն հարաբերությամբ: Կոմունիզմի օրոք բոլոր քաղաքացիները ոչ միայն կլինեն անձնավորություններ, այլև համակողմանի զարգացած անձնավորություններ:

Այն մարդը, որը միանգամայն անտարբեր է բնական միջավայրի, հասարակական կյանքի երևույթների նկատմամբ, որը չի կարողանում թեկուզ մինիմալ չափով գիտակցականորեն որոշել իր վերաբերմունքը շրջապատի հանդեպ, բնորոշել սեփական շահերը, այդպիսի մարդը դադարում է անձնավորություն լինելուց կամ դեռ այդպիսին չէ, չնայած նրան, որ նա գոյություն ունի որպես մարդ, որպես մարդկային էակ: «...Մարդ,— գրել է Մարքսը,— սկզբում իր պատկերը մի ուրիշ մարդու մեջ է տեսնում, որպես հայելում: Միայն Պողոս կոչված մարդուն որպես իր նմանին վերաբերվելով է Պետրոս անունով մարդը սկսում իրեն իբրև մարդու վերաբերվել: Միաժամանակ Պողոսն էլ, որպես այդպիսին, իր ամբողջ պողոսյան մարմնականությամբ Պետրոսի համար դառնում է «մարդ» սեռի դրսևորման ձև» (Կ. Մարքս, Կապիտալ, հատ. 1, Հայպետհրատ, Երևան, 1954 թ., էջ 60, ծանոթ. 18):

«Коммунизм и личность» գրքի քննարկման ժամանակ Ա. Ֆ. Շիշկինը նշեց. «Անձնավորություն չի հանդիսանում այն անհատը, որը, ըստ Պլեխանովի, դեռ չի առանձնացել «համատարած կենցաղից»: Դեռ անձնավորություն չէ այն մարդը, որի միտքը քնած է խոր քնով, իսկ նրա փոխարեն աշխատում է փաստերի օբյեկտիվ տրամաբանությունը, այն մարդը, որի մոտ և՛ միտքը, և՛ բարոյականությունը մի ինչ-որ արտաքին բան են, որի մոտ բացակայում է անձնական արժանիքի զգացումը: Անձնավորությունը բնութագրվում է անհատական յուրահատկությամբ, ինքնուրույնությամբ, որն ունի հատուկ ճաշակ, հակումներ և ձգտումներ» (См. журнал «Вопросы философии», № 6, 1965, стр. 149):

Այսպիսով, մարդն անձնավորություն է դառնում շնորհիվ այն բանի, որ



թեկուզ մինիմալ չափով գիտակցաբար է որոշում իր վերաբերմունքը շրջապատի սոցիալական և բնական միջավայրի նկատմամբ: Հենց դա էլ անձնավորության լինելության արմատական պայմանն է:

Նման պայմաններում անձնավորությունը, կարող է պատահել ոչ լրիվ չափով, բայց հասնում է սոցիալական կյանքում սեփական իրավունքների ու պարտականությունների որոշ ըմբռնման: Եթե մարդ գտնվում է այդպիսի կեցության մեջ, ապա նա, որպես հասուն մարդ, հանդես է գալիս իբրև անձնավորություն՝ անկախ իր հայացքների, քաղաքական համոզմունքների, գործողությունների կերպի և կյանքի բնույթի:

«Անձնավորություն» հասկացության բովանդակությունը ճիշտ հասկանալու համար բացառիկ կարևոր նշանակություն ունի Վ. Ի. Լենինի մի շատ հետաքրքրական դրույթը: «Այն ստրուկը,—ասել է Վ. Ի. Լենինը,—որը գիտակցում է իր ստրկական դրությունը և պայքարում է նրա դեմ, հեղափոխական է: Այն ստրուկը, որը չի գիտակցում իր ստրկությունը և գոյությունը քարշ է տալիս լուռ, անգիտակցական և անբարբառ ստրկական կյանքի մեջ, պարզապես ստրուկ է: Այն ստրուկը, որի փույլինքը թափվում է, երբ ինքնագոհ նկարագրում է ստրկական կյանքի հրաշալիքներն ու հիանում բարի և լավ տիրոջով, ստրկամիտ է, ցածրահոգի» (Երկեր, հատ. 13, Հայպետհրատ, Երևան, 1950, էջ 51):

Վ. Ի. Լենինի այդ բնորոշման համաձայն ստրուկը (կամ բանվորը— միևնույնն է) առաջին դեպքում հանդես է գալիս որպես իսկական անձնավորություն, անձնավորություն իր իսկությամբ, երկրորդ դեպքում նա, բառի իսկական իմաստով, դեռ անձնավորություն չի դարձել, դեռ չի կարող բնութագրվել որպես անձնավորություն, երրորդ դեպքում նա, օրինակ, ասենք, բանվոր արիստոկրատը, միշտ հանդես է գալիս որպես անձնավորություն իր սոցիալական բացասական նշանակությամբ, այսինքն հանդես է գալիս որպես ստորաքարշ, քսու, ցածրահոգի անձնավորություն:

Մյուս կողմից իրավացի կլիներ «անձնավորությունը» ստորաբաժանել տարբեր տեսակների, օրինակ դրական, առաջավոր, առաջադիմական, բացասական, հետադիմական, ռեակցիոն, սոցիալապես վտանգավոր, հանցագործ և այլ անձնավորությունների: Անձնավորության այդպիսի տարբերությունները պարզելու համար անհրաժեշտ է, հենվելով Վ. Ի. Լենինի վերոհիշյալ ասույթի վրա, ձևակերպել դրական, առաջադիմական անձնավորության բնորոշումը: Այդ հարցում մենք համամիտ ենք Գ. Ե. Եգիդեսի այն կարծիքին, որ դրական, առաջադիմական անձնավորություն կարելի է համարել այն մարդուն, «որը նպաստում է հասարակության հասունացած խնդիրների լուծմանն այնպիսի միջոցներով, որոնք այդ խնդիրներին հավասարազոր են, և որը բնորոշվում է բարոյական արժանապատվության զգացմունքով՝ համաձուլված հասարակության առաջ իր պատասխանատվության զգացմունքի հետ» («Вопросы философии», № 6, 1965, стр. 154):

Մեր խոր համոզումով «անձնավորություն» հասկացությունը բնորոշելիս պետք է ելնենք նաև Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հայտնի ասույթից պրոլետարիատի՝ իր միջից իր համար դասակարգ դառնալու պայմանների մասին, որի ընթացքում այդ դասակարգի անդամները ձևավորվում են որպես անձնավորություններ, այսինքն որպես պատմական պրոցեսի գլխավոր և գիտակից սուբյեկտներ: Հարցի էությունն այն է, որ երբ պրոլետարիատը դառնում է դասակարգ իր համար, ապա այդ դեպքում պատմական պրոցեսում մաս-

նակցող մասսան հասնում է իր դասակարգային գլխավոր խնդիրների, իր պատմական միսիայի ըմբռնմանը, իր դասակարգային պայքարի գլխավոր ձևի ըմբռնմանը։ Այսպիսով, այն մոմենտից, երբ բանվորն առանձին կամ իր դասակարգի հետ միասին պայքարի մեջ է մտնում, սկսվում է նրա ձևավորումը որպես անձնավորություն և նրա այդ ձևավորման և հարստացման պրոցեսը գնալով ավելի և ավելի է զարգանում։

Այն բանվորները, որոնք գիտակցում են դասակարգային պայքարի անհրաժեշտությունը, թեկուզ և տնտեսական պայքարի՝ իր պարզ ու սկզբնական ձևով, գիտակցում են իրենց պրոֆեսիոնալ միությունների և դասակարգային այլ կազմակերպությունների անհրաժեշտությունը, այդ բանվորներն արդեն հանդես են գալիս որպես անձնավորություններ։ Իսկ այն բանվորները, որոնք չեն հասել այդ բանի ըմբռնմանը և պասսիվորեն համակերպվում են կապիտալիստական շահագործման, կեղեքման և ստրկացման պայմաններին, որոնք գտնում են, որ այդ բոլորը այդպես էլ պետք է լինի և ամեն ինչ կախված է այն մարդկանց կամքից ու ցանկություններից, որոնք արտադրամիջոցների տերերն են, այդպիսի բանվորները դեռ անձնավորություններ չեն։ Առավել ևս անձնավորություններ չեն բոսյակները, լյումպեն պրոլետարները, ապադասակարգայնացած տարրերը, պրոֆեսիոնալ գողերը և այլն։ Ուստի և «էկոնոմիզմն» ու օպորտունիզմի մյուս տարատեսակությունները, որոնք ձգտում են պրոլետարիատին ետ կանգնեցնել նրա դասակարգային պայքարի գլխավոր ձևից՝ քաղաքական պայքարից, պրոլետարիատին տանել տնտեսական մանր ռեֆորմների ճանապարհով, առանց դասակարգային պայքարի, խանգարում են բանվորներին լրիվ կերպով անձնավորություններ դառնալու։ Աշխատավոր գյուղացիության շարքերում կապիտալիզմի ժամանակ, առավել ևս ֆեոդալիզմի պայմաններում, բացառապես դանդաղ և տանջալի է ընթանում նրանց՝ որպես անձնավորություններ ձևավորվելու պրոցեսը։ Նույնիսկ ինտելիգենցիայի շարքերում այդ տեսակետից քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնք դիմազուրկ անձնավորություններ են։

«Коммунизм и личность» աշխատության քննարկման ժամանակ Դ. Ի. Չեսնակովն եզրափակման խոսքում այն միտքը հայտնեց, թե համեմատ մարքսիզմի կլասիկների մի շարք աշխատությունների և ասույթների «անձնավորությունն առաջ է եկել տոհմատիրական հասարակության քայքայման և դասակարգերի առաջացման հետ միասին, երբ անհատի նախկին կլանումը կոլեկտիվի կողմից իր տեղն է զիջում սոցիալական այլ հարաբերությունների, երբ մարդը դառնում է անձնավորություն։ Դասակարգային հասարակության ամբողջ պատմությունը դա անձնավորության զարգացման պատմություն է, բայց ամեն մի պատմական էպոխայում անձնավորությունն ունի իր հատուկ գծերը» («Вопросы» философии, № 6, 1965, стр. 156)։

Այդ ասույթում ճիշտ է այն, որ դասակարգային հասարակությունների պատմության ընթացքում տեղի է ունենում նաև անձնավորության զարգացում և որ յուրաքանչյուր պատմական էպոխային հատուկ է անձնավորության ուրույն տիպ։ Չնայած այդ դրույթը հիմնականում ճիշտ է, բայց բոլորովին էլ բավարար չէ «անձնավորություն» հասկացությունը բնորոշելու համար։ Մարքսիզմ-լենինիզմի տեսակետով մարդու՝ որպես իսկական անձնավորություն ձևավորվելու գործում վճռական նշանակություն ունի այնպիսի սոցիալական պայմանների ստեղծումը, որոնցում նա կարողանա հայտնաբերել, ձևավորել, զարգացնել և գործնականորեն կիրառել իր անձնական օգտակար,



արժեքավոր ունակություններն ու ձիրքերը, գործել և աշխատել իր ուժերի և ունակությունների լրիվ չափով, իր և իր նմանների օգտին։

Դիտելով հարցը այդ տեսանկյունից, մենք պետք է նշենք, որ նախնադարյան տոհմատիրական հասարակության պայմանները ոչ միայն չէին խանգարում, այլ ընդհակառակը, նպաստում էին այն հիմնական առանձնահատկությունների դրսևորմանն ու զարգացմանը, որոնցով աշխատավոր մարդը բնութագրվում է որպես անձնավորություն, այսինքն նպաստում էին հեռավոր այդ անցյալում ապրող մարդու մեջ եղած անձնական ընդունակությունների ու ձիրքերի հայտնաբերմանը և զարգացմանը։

Սակայն այդ հեռավոր անցյալում ամբողջ հասարակությունը համաձուլված էր գործողությունների և նպատակների միասնությամբ և այդ կապակցությամբ ամեն մի առանձին մարդու անձնական ընդունակություններն ու ձիրքերը, նրա «եսը» միաձուլվում էր մյուս մարդկանց գործողությունների հետ, կոլեկտիվի գործողությունների, մյուս մարդկանց «եսերի» հետ։ Կենսական պայմանների կապակցության դեպքում ամբողջ կոլեկտիվի հաջողությունները ուղղակի կերպով կախում ունեին ամեն մի առանձին մարդու անձնական ունակությունների դրսևորման և զարգացման աստիճանից։ Այդ կոլեկտիվ «եսի» մեջ յուրաքանչյուրի անհատական «եսը» պահպանում էր իր անհատական ամբողջ ինքնատիպությունը, նրա ուժերի, ընդունակությունների, ձիրքերի, հմտությունների անհատական ինքնատիպության, առանձնահատկության իմաստով։

Լյուիս Գ. Մորգանը և Յուլիուս Լիպսը ինչպիսի հիացմունքով են նկարագրում տոհմատիրական աստիճանի վրա գտնվող մարդկանց աշխատանքային արժանիքները, հմտությունները և հնարամտությունները։ Նման գնահատում, առանձնապես նրանց բարոյական որակների առումով գտնում ենք նաև Էնգելսի մոտ։

Ես կարծում եմ, որ նախամարդու կողմից ընդհանուր (ըստ էության հասարակական) շահերի մեծարումը, իր անձնական շահերը նրան ենթարկելը, միատեղ, ընդհանուր պայքարն իրենց գոյությունը ապահովելու համար, «իմը», «քոնը», «տարինը», «ուրիշինը» և նման այլ հասկացությունների բացակայությունը, անհատական «եսը» կոլեկտիվ «ես»-ից դուրս չպատկերացնելը դեռ բոլորովին էլ չի նշանակում անձնավորության կլանում կոլեկտիվի կողմից, անհատի անհետացում կամ հավասարեցում։

Մարքսիստական-լենինյան ուսմունքում «անձնավորություն» հասկացությունը նույնական չէ նաև արտադրության միջոցների մասնավոր սեփականություն ունենալու և մասնավոր ձեռներեցության հետ, քանի որ կոմունիստական հասարակությունը վերացնում է այդ սեփականությունը։ Կոմունիստական հասարակության մեջ, շնորհիվ համայնական սեփականության և գույքային հավասարության, անձնավորությունը նախ կանգնած չէ մասսայից վեր և մյուս կողմից նա ձուլված չէ նրանում։ Կոմունիզմի նպատակն այն է, որպեսզի ամեն մի մարդու մեջ դրսևորվի և ձևավորվի անձնավորությունն իր միանգամայն լրիվ և հարուստ բովանդակությամբ, ստեղծվեն համակողմանի զարգացած անձնավորություններ։

Մարքս-լենինյան ըմբռնմամբ մարդու, որպես անձնավորություն ձևավորվելու պրոցեսում արմատական նշանակություն ունի նրա ազատագրումն ամեն մի սոցիալական և այլ բնույթի ճնշումից, շահագործումից։ Կոմունիզմը այնպիսի պայմաններ է ստեղծում, որոնց մեջ մարդը կկարողանա իրեն

լրիվ կերպով դրսևորել որպես հասարակությանը օգտակար անձնավորություն, էկվիվալենտ կերպով օգտվել իր աշխատանքի արդյունքից. Հասարակությունը յուրաքանչյուր անձնավորությանը երաշխիք կտա նրա բազմապիսի խելացի նյութական և կուլտուրական պահանջմունքներն ավելի ու ավելի լրիվ բավարարելու համար։ Դա է անձնավորության դրսևորման իսկական հնարավորությունը և իր այդ ձևով նա համընկնում է իսկական ազատության հնարավորության հետ։

Բուրժուական սոցիոլոգներն ու փիլիսոփաները պնդում են, որ միայն կապիտալիստական հասարակությունն է ապահովում անձնավորության լիակատար ազատություն և իբր թե կոմունիզմն անձնավորությունը դիմազրկում, դարձնում է անոնիմ, ոտնահարում է նրա իրավունքները, նրան դարձնում է գերագույն էության՝ հասարակության զոհը։ Օրինակ, Օլդոս Հաքսլին պնդում է, թե «կոմունիզմի նպատակն է զրկել անհատին բոլոր իրավունքներից, անձնական ազատության ամենափոքրագույն նշաններից, հոգի ունենալու իրավունքից, և նրանց մեծ Կոլեկտիվ Մարդու բաղկացուցիչ մասը դարձնել» (տե՛ս Джон Льюис, Социализм и личность, Ил, 1963, էջ 16)։

Բայց իրականում միայն սոցիալիզմն է անձնավորությանն ազատագրում ամեն տեսակ սոցիալական ճնշումից ու կեղեքումից։ Բուրժուական հեղափոխությունները իրենց հետ բերում են անձնավորության ոչ թե իսկական, տնտեսական ազատություն, այլ միմիայն նրա ձևական, իրավական ազատություն և, հետևաբար, դեռ նրան չեն ազատում ստրկությունից ու ճնշումից։ Հենց այդ ձևական-իրավական (իր ժամանակին պրոգրեսիվ նշանակություն ունեցող) ազատության մասին էլ բոլոր տանիքներից այժմ ճչում են բուրժուական սոցիոլոգներն ու փիլիսոփաները՝ նույնացնելով ժամանակակից կապիտալիզմը «ազատ հասարակության» հետ։

Անձնավորության ձևական-իրավական ազատության էությունը մերկացված է ոչ միայն մարքսիստական, այլև ընդհանուր դեմոկրատական գրականության մեջ։





ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե.

# ԱՐՏԱԴՐԱՈՒԺԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանում մեր կուսակցության տնտեսական քաղաքականության արմատական հարցերից է։ Այդ նպատակին են ծառայում սոցիալիստական պլանավորման գիտական մակարդակի բարձրացումը, ներկայումս կիրառվող տնտեսական ռեֆորմը, նյութական ռեսուրսների օգտագործումը, ինչպես և արտադրաուժերի տեղաբաշխման բարելավումը։

Ժողովրդական տնտեսության մասշտաբների հսկայական ընդարձակումը, աշխատանքի հասարակական բաժանումը, յուրաքանչյուր միութենական հանրապետության և տնտեսական շրջանի բնական հարստությունների և նյութական ռեսուրսների նպատակային օգտագործումը ավելի ու ավելի են ուժեղացնում միջշրջանային կապերը։ Այդ կապերի պլանավորումը պահանջում է շրջանների տնտեսական զարգացման խիստ համաձայնեցվածություն։ Դրա հետ մեկտեղ, ժողովրդական տնտեսության պահանջը կարելի է բավարարել արտադրության համապատասխան ճյուղն երկրի տարբեր շրջաններում զարգացնելով։ Բայց քանի որ ՍՍՀՄ տնտեսական շրջաններն իրենց բնական ու տնտեսական պայմաններով տարբերվում են միմյանցից, ուստի, տվյալ արտադրանքն ստանալու համար կատարվող ծախսերը տարբեր շրջաններում տարբեր են։

Տարբեր է արտադրության յուրաքանչյուր ճյուղի տեխնիկա-տնտեսական բնույթը (նյութատար, աշխատատար, էներգատար), որը և անդրադառնում է ձեռնարկությունների տեղաբաշխման վրա։ Օրինակ, սև մետաղաձուլության ձեռնարկությունները տեղաբաշխելիս առաջնահերթ նշանակություն է տրվում հումքի աղբյուրներին։ Դրանք, որպես կանոն, տեղաբաշխվում են երկաթահանքերին և վառելիքի աղբյուրներին մոտ։ Շատ գործոններ են նկատի առնվում գունավոր մետաղաձուլության ձեռնարկությունները տեղաբաշխելիս (առաջին հերթին՝ հանքաքարի որակը)։ Եթե հանքաքարի մեջ մետաղի պարունակությունը փոքր է, ապա այդտեղ ձեռնտու չէ կառուցել մետաղաձուլական գործարան։ Գունավոր մետաղաձուլության ձեռնարկությունների տեղաբաշխման վրա էական ազդեցություն ունի էլեկտրաէներգիայի մատակա-

բարումը։ Բավական է նշել, որ մեկ տոննա ալյումինի ստացման համար պահանջվում է մինչև 20, տիտանի՝ 60—80 հազար կվտ- ժամ էլեկտրաէներգիա։ Պոլիմերների, արհեստական մանրաթելի, կաուչուկի արտադրության ելակետային հումքը բնական և ուղեկցող գազերն են, գորշ ածուխը, կոքսային գազը և այլն։ Հասկանալի է, որ քիմիական արդյունաբերության մի շարք ճյուղերի ձեռնարկությունները պետք է տեղադրել երկրի նավթային և գազային շրջաններին մոտ։

Մեքենաշինական ձեռնարկությունները (որոնք առավել աշխատատար են), տեղաբաշխելիս հաշվի են առնվում գլխավորապես աշխատանքային ռեսուրսները։ Արդյունաբերության տեղաբաշխման գործում որոշակի նշանակություն ունի տրանսպորտը, քանի որ արտադրանքի մի շարք տեսակների ինքնարժեքի մեջ խոշոր է տրանսպորտային ծախսերի տեսակարար կշիռը։ Օրինակ, երկաթհանքի ինքնարժեքում այդ ծախսերը կազմում են 48, շինանյութերինը՝ 25 տոկոս։

Մեր կարծիքով, յուրաքանչյուր ձեռնարկության տեղը ընտրելիս պետք է ղեկավարվել ապագա ձեռնարկության աշխատանքի պայմանները բնութագրող կոնկրետ ցուցանիշներով, նպատակ ունենալով՝ նվազագույն նյութական ու աշխատանքային ծախսումներով հասնել բարձր արդյունավետության։ Մեր բազմազգ Միությունն ունի ընդարձակ տերիտորիա, բնական բազմազան պայմաններ, տարբեր շրջանների տնտեսական զարգացման տարբեր մակարդակ։ Ուստի, առանձին հանրապետությունների տնտեսական շրջանների ձեռնարկությունները տեղաբաշխելիս չի կարելի ղեկավարվել միևնույն չափանիշներով։

Հեռանկարային նոր պլան կազմելիս պետք է վճռել ո՛չ թե առանձին ձեռնարկությունների, այլ տարբեր ճյուղերի ձեռնարկությունների տեղաբաշխման հարցը՝ հաշվի առնելով տեխնիկատնտեսական նպատակահարմարությունը, մասնագիտացման ու կոոպերացման անհրաժեշտությունը, հումքի կոմպլեքսային օգտագործումը և այլն։

Հարկավոր է ելնել այն բանից, թե երբ ձեռնարկությունը լրիվ կարողությամբ աշխատի, հիմնական հումքի քանակը (հաշվի առնելով հանքավայրի կամ առհասարակ ձեռնարկությանը հումքով մատակարարողի պաշարները) կհամապատասխանի՞ ամորտիզացիոն շրջանին։ Հաշվում են նաև օժանդակ նյութերի պահանջը, այն ծածկելու աղբյուրը։ Այդ ամենից հետո պետք է մտահոգվել ձեռնարկության թողարկած արտադրանքի իրացմամբ։ ՍՍՀՄ միութենական հանրապետությունների և տնտեսական շրջանների համար,— արդեն սահմանվում են արտադրանքի տվյալ տեսակի արտադրության ու սպառման 7—15 տարվա չափերը։ Կազմվում են ձեռնարկությունների տեղաբաշխման զանազան տարբերակներ։ Դրանք միմյանցից կարող են տարբերվել ըստ հումքի, վառելիքի, էներգետիկ պաշարների և պատրաստի արտադրանքն իրացնելու հնարավորությունների։ Հաշվարկների միջոցով հնարավոր է ստուգել, թե որն է դրանցից արդյունավետը։ Հաշվարկը ցույց կտա նաև ապագա ձեռնարկության թողարկած արտադրանքի (ըստ առանձին տարբերակների) ինքնարժեքը, արտադրանքի մեկ միավորին հասնող տեսակարար կապիտալ և տրանսպորտային ծախսերի չափը։

Գյուղատնտեսության տեղաբաշխումը պլանավորելիս պետք է հաշվի առնել բնա-տնտեսական գոտիների, առանձին հանրապետությունների և շրջանների առանձնահատկությունները, հողակլիմայական պայմանները։ Այդ



առանձնահատկություններին համապատասխան էլ երկրի տարբեր շրջաններում գյուղատնտեսությունը մասնագիտացվում է տարբեր կուլտուրաների մշակման և տարբեր ցեղի անասունների բուծման ուղղությամբ, որպեսզի հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց աշխատանքի ու նյութական միջոցների նվազագույն ծախսումներով ստացվեն առավել շատ գյուղատնտեսական մթերքներ։

ՍՄԿԿ XXIII համագումարի ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում ասված է. «Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրները պահանջում են արտադրաուժերի տեղաբաշխման, միութենական հանրապետությունների և տնտեսական շրջանների տնտեսության կոմպլեքսային զարգացման ու մասնագիտացման հետագա բարելավում, արտադրության մեջ աշխատունակ բնակչության ավելի լրիվ ներգրավում, ժողովրդական տնտեսության կառավարման ճյուղային սկզբունքի հետ տերիտորիալ պլանավորման ճիշտ զուգորդում»։ Կուսակցության համագումարի այս առաջադրանքն իրագործելու համար հարկավոր է արտադրաուժերի տեղաբաշխումը պլանավորելիս կազմել տնտեսական շրջանների և միութենական հանրապետությունների ժողովրդական տնտեսության զարգացման գիտականորեն հիմնավորված սխեմաներ։

ՍՍՀՄ արտադրաուժերի տեղաբաշխման գլխավոր սխեման մշակվում է ճյուղային, տերիտորիալ և ընդհանուր տնտեսական առումներով։ Այդ սխեմայով հիմնականում որոշվում է նաև տնտեսական շրջանների արտադրական մասնագիտացումը՝ ըստ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի կարևոր տեսակների։

Արտադրաուժերի սոցիալիստական տեղաբաշխման սկզբունքների կիրառմամբ պետք է լուծվեն տնտեսական, քաղաքական ու սոցիալական խնդիրները։ Տեղաբաշխման արդյունավետության չափանիշը հանրային աշխատանքի առավելագույն տնտեսումն է։ Վերջինս, իր հերթին, խոշոր չափով պայմանավորված է շրջանների արտադրական մասնագիտացմամբ, շրջանի կոմպլեքսի գիտականորեն հիմնավորված ձևավորությամբ։ Մեր երկրում արտադրաուժերը տեղաբաշխվելիս անհրաժեշտ է ռացիոնալ կապեր ստեղծել արդյունաբերական կենտրոնների և սպառման շրջանների միջև։

Տնտեսական շրջանների բնակլիմայական պայմաններն անմիջական ներգործություն են ունենում շրջանի տերիտորիայում տեղաբաշխված ձեռնարկությունների էկոնոմիկայի վրա։ Այդ ազդեցությունն առավել ակնբախ է դառնում հումքային ռեսուրսների և մշակող արդյունաբերության թողարկած արտադրանքի ինքնարժեքի տարբերություններում (շրջանային)։ Այսպես, գազի ինքնարժեքը մի շարք շրջաններում 10 անգամ բարձր է, քան մյուսներում, ածխինը՝ 5, երկաթհանքինը՝ 4 անգամ և այլն։ Նման տարբերություններ կան նաև տարբեր շրջաններում տեսակարար կապիտալ ծախսերի միջև։

Արտադրության արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է իրացման պայմաններով։ Օրինակ, Հեռավոր Արևելքում ստեղծված են մի շարք մեքենաշինական գործարաններ, որոնց արտադրանքը գրեթե ամբողջապես իրացվում է տնտեսական այլ շրջաններում, ընդ որում, մինչև 8 հազար կիլոմետր հեռավորության վրա, միաժամանակ հումքը ներմուծվում է համարյա թե նույնպիսի հեռավորությունից։ Արտադրանքի ինքնարժեքի մեջ

տրանսպորտի ծախսերը կազմում են 13—14 տոկոս: Հասկանալի է, որ այդ գործարանների արդյունավետությունն անբավարար կլինի:

ՍՍՀՄ եվրոպական մասի վառելիքա-էներգետիկ ռեսուրսներով ոչ հարուստ՝ Բելոռուսական ՍՍՀ-ում, Հյուսիս-արևմուտքում, Վոլգա-Վյատկայում և այլ շրջաններում կառուցվել ու ընդլայնվել են էներգատար շատ ձեռնարկություններ—ալյումինի, օրգանական սինթեզի գործարաններ ու արտադրամասեր: Միաժամանակ տնտեսական այն շրջաններում, ուր բնակչությունը նոսր է և աշխատող ձեռքերի պակաս կա, կառուցվել են աշխատատար ձեռնարկություններ, որի հետևանքով ժողովրդական տնտեսությունը խոշոր վնասներ է կրում:

Ներկայումս արտադրաուժերի տեղաբաշխման պլանավորման հիմնական խնդիրն է՝ առավել արդյունավետ ռեսուրսների և նպաստավոր պայմանների օգտագործմամբ կրճատել արտադրածախսերը: Դրան զուգընթաց կրճատել նաև տրանսպորտային ծախսերը: Այդ նպատակով անհրաժեշտ է յուրաքանչյուր շրջանի համար որոշել միատեսակ կամ միմյանց փոխարինող արտադրանքի արտադրության համար կատարվող ծախսերը, որոնք գոյանում են, նախ՝ արտադրանքի արտադրության, ապա՝ հումքի, վառելիքի և պատրաստի արտադրանքի փոխադրածախսերից: Դրանք տարբեր են ըստ երկրի տնտեսական շրջանների ու նրանց ներսում: Օրինակ, մշակող արդյունաբերության միատեսակ արտադրանքը տարբեր շրջաններում տարբեր ծախսեր են պահանջում: Այդ տարբերությունը պայմանավորված է հումքի, վառելիքի տեղաբաշխվածությամբ և հիմնական հումքատեսակի մեջ օգտակար կոմպոնենտների տարբեր պարունակությամբ: Այսպես, Արևելյան և Հյուսիսային շրջաններում կլիմայական առանձնահատկությունների հետևանքով միատեսակ օբյեկտների կառուցումն ավելի շատ աշխատանք է պահանջում, քան կենտրոնական և արևմտյան շրջաններում, ուստի և ավելի թանկ է նստում:

Հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության մեծացման միջոց է նաև տնտեսական շրջանների կոմպլեքսային զարգացումը: Կոմպլեքսային զարգացում ունեցող շրջանը ներկայումս բնութագրվում է՝ 1) իր բազմակողմանի զարգացմամբ, այսինքն՝ ծանր ու թեթև արդյունաբերության տարբեր ճյուղերի, գյուղատնտեսության, տրանսպորտի, կուլտուրայի, գիտության, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցների առկայությամբ, 2) նյութական արտադրության միմյանց լրացնող երեք խումբ ճյուղերի՝ միջշրջանային աշխատանքի բաժանման առկայությամբ. որոնք որոշում են շրջանի տեղը երկրի էկոնոմիկայում:

Առաջին խմբին են պատկանում այն ճյուղերը, որոնց արտադրանքն ուղարկվում է շրջանի սահմաններից դուրս (միջճյուղային փոխանակության համար) կամ Միության մեջ ունեն բարձր տեսակարար կշիռ, թեև մեծ մասն սպառվում է շրջանի ներսում: Երկրորդ խմբին պատկանող ճյուղերը պայմաններ են ստեղծում առաջին խմբի ճյուղերի զարգացման համար: Իսկ երրորդը տեղական կամ բերովի հումքի օգտագործմամբ պետք է արտադրի ժողովրդական սպառման առարկաներ:

Ապրանքանյութական արժեքների փոխադրումների տարածության կրճատումը պայմանավորում է ո՛չ միայն տրանսպորտի փոխադրածախսերի, այլև հումքի, նյութերի, վառելիքի, տարայի, պահեստամասերի պաշարների կրճատումն արդյունաբերական ձեռնարկություններում: 1965 թվականի սկզբին այդ պաշարները կազմում էին ավելի քան 26 միլիարդ ռուբլի: Մատակարա-



րումների հեռավորությունից է կախված ճանապարհներին գտնվող բեռների
չափը: Դրանց արժեքը 1965 թվականի սկզբին կազմում էր 5 միլիարդ ռուբլի,
տնտեսական շրջանի կոմպլեքսային զարգացումը հնարավորություն է ընձե-
ռում բարձրացնելու ամբողջ շրջանի ձեռնարկություններում համատեղ օգ-
տագործվող ռեսուրսների կիրառման արդյունավետությունը: Դա վերաբե-
րում է, մասնավորապես, էլեկտրաէներգիային, շինանյութերին և այլն:
Շրջանների կոմպլեքսային զարգացման շնորհիվ առավել արդյունավետ են
օգտագործվում աշխատանքային ռեսուրսները:

Կուսակցության XXIII համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ
դիրեկտիվներում նշված է, որ արտադրաուժերի տեղաբաշխումը կարգավո-
րելու նպատակով մեր երկրի արևելյան շրջանների էկոնոմիկայի զարգացման
միջին տեմպերն առաջիկայում պետք է գերազանցեն ՍՍՀՄ էկոնոմիկայի
զարգացման միջին տեմպերին: ՍՍՀՄ հիդրոռեսուրսների 63, նավթի հեռա-
նկարային պաշարների՝ 63, ածխի հետախուզված պաշարների՝ 75 տոկոսը
գտնվում են արևելյան շրջաններում: Այս երկրամասը հարուստ է բազմամե-
տաղների, երկաթի, ալյումինի հանքերով, ոսկով, անագով և շատ այլ օգտա-
կար հանածոներով:

Արևմտյան Սիբիրում վերջերս հայտնաբերվել են նավթի ու գազի հանքա-
վայրեր և ստեղծվում է ժողովրդատնտեսական խոշոր կոմպլեքս: 1970
թվականին այն կտա 20—25 միլիոն տոննա նավթ և 26 միլիարդ խորանարդ
մետր գազ: Նախատեսվում է Արևմտյան Սիբիրից գազը և նավթը նավթա-
մուղով և գազամուղով մատակարարել երկրի եվրոպական շրջաններին:
Հնգամյակում շահագործման կհանձնվի Կրասնոյարսկի գէսը՝ 5 միլիոն կվտ
կարողությամբ, կյուրացվի նեֆելինների Կիյա-Շալտիրյան հանքավայրը, որի
հիման վրա կստեղծվի ալյումինի արտադրության ամենախոշոր կենտրոնը:
Կսկսի Կրասնոյարսկի էլեկտրաքիմիական կոմբինատի և Արևելյան Սիբիրի
երկաթաձուլական գործարանի կառուցումը: Կյուրացվեն Ենիսեյի, Անգարա-
յի ափերի անտառները, որի հիման վրա կստեղծվեն անտառարդյունաբերու-
թյան խոշոր կոմպլեքսներ:

Ժողովրդատնտեսական կարևոր կոմպլեքս է դառնալու Ղազախական
ՍՍՀ-ն: Հնգամյակի տարիներին արագ կզարգանան գունավոր և սև մետաղա-
ձուլությունը, ածխի, նավթի, քիմիական, թեթև և սննդի արդյունաբերությու-
նը: Ածխի հանույթը կավելանա 68—69 միլիոն տոննայով, նավթինը կհասնի
12 միլիոն տոննայի, Մանգիշլակը կդառնա նավթի ու գազի հայթայթման
խոշոր շրջան: Հանրապետության հարավում, Կարաթաուի ֆոսֆորիտի բա-
զայի վրա կստեղծվեն քիմիական կոմպլեքս ձեռնարկություններ, որոնք կթո-
ղարկեն ֆոսֆոր, ֆոսֆորային աղեր, ինչպես նաև ֆոսֆորիտի պարարտա-
նյութեր: ՂՍՍՀ-ում հնգամյակում զգալիորեն կավելանա գյուղատնտեսական
մթերքների (առաջին հերթին հացահատիկ) արտադրությունը:

Այսպիսով, երկրի արևելյան շրջանները՝ Սիբիրը, Հեռավոր արևելքը և
Ղազախական ՍՍՀ-ն նոր հնգամյակում մեծ ավանդ են մուծելու երկրի տնտե-
սական զարգացման գործում: Արտադրաուժերի պատշաճ տեղաբաշխումը
հնարավորություն կընձեռի բարձրացնելու արևելյան շրջանների տեսակարար
կշիռը արտադրանքի մի քանի տեսակների ընդհանուր արտադրության մեջ.
այդ է ցույց տալիս հաջորդ էջի աղյուսակը:

Երկրի արևմտյան շրջաններում տնտեսական արդյունավետությունը կբարձրանա ոչ այնքան նոր ձեռնարկությունների կառուցման, որքան գործող արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի ֆոնդահատույցը բարձրացնելու միջոցով։ ՍՍՀՄ եվրոպական մասում և Ուրալում, ուր կենտրոնացված է բնակչության և արտադրական կարողությունների հիմնական մասը, առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում աշխատատար ճյուղերի զարգացմանը։ Մասնավորապես նկատի է առնվում Սևահողային կենտրոնը, Բելոռուսական ՍՍՀ, Լիտվական ՍՍՀ, Ուկրաինական ՍՍՀ-ի արևմտյան մարզերը և Անդրկովկասը, որոնք ունեն առավել մեծ աշխատանքային ռեսուրսներ։ Քանի որ այս շրջանների վառելիքա-էներգետիկ բալանսը լարված է, հնգամյակում նախատեսվում է զարգացնել վառելիքի արդյունաբերությունը և էլեկտրաէներգիայի արտադրությունը։

Ուրալից արևելք ընկած շրջանների տեսակարար կշիռը արտադրանքի մի քանի տեսակների ընդհանուր արտադրության մեջ (տոկոսներով)

| | 1940 թ. | 1965 թ. | 1970 թ. |
|---|---|---|---|
| Ածուխ . . . | 28,7 | 39,4 | 45 |
| Բնական գազ . | 0,1 | 14 2 | 35 |
| Նավթ . . . | 0,3 | 7,1 | 16 |
| Էլեկտրաէներգիա | 9,2 | 25 | 28 |
| Ցեյլուլոզ . . | — | 10,3 | 28 |
| Ստվարաթուղթ . | 1,3 | 10,8 | 31 |

Ածխի հանույթը կավելանա Դոնեցկի ավազանում, Պեչորայում, նավթինն ու գազինը՝ Պովոլժիեում, Հյուսիսային Կովկասում, Ադրբեջանում և Ուկրաինայում։ Նախատեսվում է լրիվ կարողությամբ գործարկել Նովո-Յարոսլավլի, Ռյազանի, Կրեմենչուկի նավթավերամշակող գործարանները, ինչպես նաև Ուկրաինայում, Բելոռուսիայում ու Լիտվայում կառուցել նավթավերամշակման նոր գործարաններ։ Նավթաքիմիական ու գազի արդյունաբերության բազայի վրա մեծ չափով կզարգանա սինթետիկ քիմիան՝ ազոտային պարարտանյութերի, սինթետիկ կաուչուկի, ռետինա-տեխնիկական առարկաների, քիմիական մանրաթելի արտադրությունը, տեքստիլ և թեթև արդյունաբերությունը։

Արդյունաբերության հետ միասին շատ անելիքներ կան ՍՍՀՄ Եվրոպական մասում, գյուղատնտեսական մթերքների, մասնավորապես, հացահատիկի ավելացման ասպարեզում։ Ամեն ինչ արվում է Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում, Կենտրոնական սևահողային մարզերում և Պովոլժիեում բարձրացնելու բերքատվությունը։ Մասնավորապես նախատեսված են լայն մասշտաբների ոռոգման աշխատանքներ կատարել։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում բացառիկ նշանակություն ունի տնտեսական շրջանների ու հանրապետությունների միջև գոյություն ունեցող տնտեսական կապերի ռացիոնալացումը։ Այս գործում շատ կարևոր է երկաթուղային տրանսպորտը, որին բաժին է ընկնում տեղափոխումների ու բեռնաշրջանառության ¾-ը, 1966—1970 թվականներին կկառուցվեն միջին-սիբիրական Բառնաուլ-Կուստանայի (որով կբարելավվի կապը Կուզնեցկի ավազանի հետ), Կոունրադ-Մագադան և Գուրև-Աստրախան՝ 1600 կիլոմետր ընդհանուր երկարությամբ երկաթուղագծերը։ Վառելիքի միջշրջանային կապերը բարելավելու նպատակով կառուցվելու են գազամուղի հզոր սիստեմներ, որոնք գազ կմատակարարեն երկրի եվրոպական մասի տնտեսական շրջաններին։

Արտադրաուժերի տերիտորիալ տեղաբաշխումն իրականացնելիս բացառիկ կարևորություն է ստանում ձեռնարկությունների կառուցման տեխնիկա-տնտեսական հիմնավորումը և տերիտորիալ պլանավորման բարելավումը։ Տեղաբաշխման արդյունավետության հիմնական չափանիշը արտադրանքի արտադրության և այն սպառողին հասցնելու հետ կապված ծախսերի կրճատումն է։



Արտադրաուժերի տեղաբաշխումը պլանավորելիս անհրաժեշտ է հաշվի առնել շատ կարևոր մի հանգամանք—ապահովել աշխատունակ բնակչության զբաղվածությունը, մասնավորապես աշխատունակ բնակչության այն մասի, որն զբաղված է տնային և օժանդակ տնտեսությամբ։ Նրանց զգալի մասը պետք է ընդգրկել հասարակական արտադրության մեջ։ Մի շարք հանրապետություններում մշակող արդյունաբերությունը տեղաբաշխված է խոշոր քաղաքներում, մինչդեռ մանր ու միջակ քաղաքներում արդյունաբերական ձեռնարկությունների անբավարարության հետևանքով անհամապատասխանություն կա առկա աշխատուժի և դրա նկատմամբ եղած պահանջարկի միջև։ Արդյունաբերությունն առավել համաչափ տեղաբաշխելու և փոքր ու միջակ քաղաքների աշխատանքային ռեսուրսներն առավել ռացիոնալ օգտագործելու նպատակով, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներով նախատեսվում է նոր ձեռնարկությունները կառուցել գլխավորապես միջակ և փոքր քաղաքներում։ Խոշոր քաղաքներում լավագույն ձևով կօգտագործվեն ձեռնարկությունների կարողությունները, հարկ եղած դեպքում՝ սարքավորումները նորացնելու միջոցով կվերակառուցվեն դրանք։ Նորերի կառուցումը կսահմանափակվի այն ձեռնարկություններով, որոնք անհրաժեշտ են բնակչության սպասարկման համար։ Նոր հնգամյակում արտադրաուժերի առավել ռացիոնալ տեղաբաշխմամբ շատ հարցերի լուծման հետ մեկտեղ, կբարձրանա նաև հասարակական արտադրության արդյունավետությունը։

Լենինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառմամբ, այս հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման նոր վերելք կապրեն միութենական բոլոր հանրապետությունները։ 1966—1970 թվականներին արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը Ռուսաստանյան ֆեդերացիայում, Ուկրաինական, Լատվիական և Էստոնական Սովետական Սոցիալիստական հանրապետություններում կավելանա մոտ 1,5, Ուզբեկական, Վրացական, Ադրբեջանական, Կիրգիզական և Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Հանրապետություններում՝ մոտ 1,6, Բելոռուսական, Ղազախական, Լիտվական և Մոլդավական հանրապետություններում՝ 1,7, Տաջիկական և Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետություններում մոտ 1,8 անգամ։ Միութենական յուրաքանչյուր հանրապետությունում առավել չափով կզարգանան արդյունաբերության և գյուղատնտեսության այն ճյուղերը, որոնց համար կան բնական ու տնտեսական նախադրյալներ։

Հայաստանում խոշոր տեղաշարժեր են կատարվել մասնավորապես արդյունաբերության տեղաբաշխման ուղղությամբ։ Վերջին տասնամյակում մեզ մոտ արդյունաբերության արագընթաց զարգացումն ուղեկցվել է նրա ռացիոնալ տեղաբաշխմամբ։ Նշված ժամանակաշրջանում տնտեսական շրջանառության մեջ դրվեցին հանրապետության բնական ռեսուրսները և դրա հիման վրա ստեղծվեցին այնպիսի արդյունաբերական նոր կենտրոններ, որպիսիք են՝ Աբովյանը, Ջարենցավանը, Արզնին, Սևանը, Կամոն, Սպիտակը, Ագարակը և այլն։ Արդյունաբերության նոր տեղաբաշխման հիման վրա հանրա-

պետությունում ձևավորվեցին արդյունաբերական մի քանի խոշոր հանգույցներ, որպիսիք են՝ Երևանի կամ կենտրոնական արդյունաբերական էներգետիկ, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու և Զանգեզուրի հանգույցները, որոնցից յուրաքանչյուրն ընդգրկում է հանգուցային ձգող մի շարք արդյունաբերական կենտրոններ ու կետեր։ Այդպիսի կենտրոնների և կետերի թիվը ներկայումս հասնում է 100-ի (բոլոր շրջաններն առանց բացառության)։

Հայկական ՍՍՀ-ում առավելապես զարգանում է մեքենաշինությունը։ Նրա տեսակարար կշիռը հանրապետության ամբողջ արդյունաբերական արտադրանքի ավելի քան 22 տոկոսն է կազմում։ Այդ արտադրանքի մոտ 95 տոկոսն իրացվում է հանրապետությունից դուրս։

Արդյունաբերության զարգացման ու ռացիոնալ տեղաբաշխման հետ միասին, տեղի ունեցավ հանրապետության գյուղատնտեսության մասնագիտացում խաղողագործության, պտղաբուծության, բանջարաբուծության և մսակաթնային անասնաբուծության ճյուղերում։ Արդյունաբերության և գյուղատնտեսության տեղաբաշխման ու մասնագիտացման համապատասխան, անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին հանրապետության աշխատունակ բնակչությանը հասարակական արտադրության ոլորտը ներգրավելու։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով անհրաժեշտ է հանրապետությունում ավելի կատարելագործել արտադրաուժերի տեղաբաշխումը։ Ընթացիկ և գալիք հնգամյակներում խնդիր է դրվում արդյունաբերության տեղաբաշխումն իրականացնելիս վերացնել այն անհամապատասխանությունները, որ գոյություն ունեն արդյունաբերության հայթայթող և վերամշակող ճյուղերի միջև։ Արդյունաբերության տեղաբաշխման բարելավման ուղիներից մեկը փոքր ու միջակ և նոր ձևավորվող քաղաքների արդյունաբերության առաջանցիկ զարգացումն է խոշոր քաղաքների արդյունաբերության համեմատությամբ։ Դրան համապատասխան էապես կփոխվի արդյունաբերական կապիտալ շինարարության աշխարհագրությունը՝ առաջնությունը տալով արդյունաբերական նոր կենտրոններին ու կետերին։

Գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար պետք է լիկվիդացնել դաշտավարության և անասնաբուծության միջև, մասնավորապես, անասնաբուծության ու կերի հայթայթման ասպարեզում գոյություն ունեցող անհամապատասխանությունը։ Այդ նպատակով գյուղատնտեսության հետագա մասնագիտացումն ու տեղաբաշխումը պետք է զուգորդվի հողային ֆոնդի, տեխնիկական միջոցների և աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացմամբ։

Հանրապետության արտադրաուժերի տեղաբաշխման հետագա բարելավմանը մեծ չափով կօգնի տրանսպորտա-տնտեսական կապերի հետագա բարելավումը։ Պահանջվում է ո՛չ միայն բարելավել գործող երկաթուղիների աշխատանքը, այլև երկաթուղիների կառուցումը, որպեսզի լիկվիդացվի արդյունաբերության զարգացման և երկաթուղային տրանսպորտի աշխատանքի ծավալի անհամապատասխանությունը։

Տնտեսական ռեֆորմի հետևողական կիրառման շնորհիվ պայմաններ կստեղծվեն արտադրաուժերի առավել խելացի տեղաբաշխման, ուստի և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման համար։

ՇԱՔԱՐՅԱՆ ՀՐ. Գ.

# ՄԵՏԱՖԻԶԻԿԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Դարեր շարունակ շարժման վերաբերյալ գիտական-դիալեկտիկական ուսմունքի մշակումը տեղի է ունեցել ինչպես մատերիալիստական, այնպես էլ իդեալիստական մեկնակետերի դիրքերից։ Ավելին, մինչմարքսյան փիլիսոփայության մեջ դիալեկտիկական մտածելակերպի սկզբունքների մշակման ամենաարդյունավետ փորձերը կատարվել են իդեալիստական սիստեմներում, մասնավորապես, գերմանական դասական փիլիսոփայության մեջ։ Հայտնի է նաև այն փաստը, որ պատմական որոշակի դարաշրջանում մատերիալիստական տեսությունը ո՛չ միայն ընդունել է մետաֆիզիկական ձև, այլև համապատասխան զարգացում ապրել այդ ձևի շրջանակներում ու գուցե մասամբ նաև նրա շնորհիվ։

Առավել մեծ չափերով է հանդիպում փիլիսոփայական-գոյաբանական ու իմացաբանական սկզբունքների և նրանցից բխեցվող սոցիալական դոկտրինաների անհամապատասխանությունը և, նույնիսկ, հակադրությունը։ Բոլոր դեպքերում գիտական մտքի առաջընթացից, իմացության «հավիտյան դալար ծառից» են ելնում թե՛ գիտական, թե՛ ոչ-գիտական և, նույնիսկ, հակագիտական ուսմունքները։ Իմացության առաջընթացը բովանդակում է ո՛չ միայն կեղծ կամ հակագիտական ուսմունքների ու սկզբունքների հերքումները, այլև նոր հնարավորություններ է ընձեռում դրանց նորագույն դրսևորումների համար։ Միաժամանակ, իմացության առաջընթացին նպաստում են բոլորովին էլ ո՛չ միայն գիտական, օբյեկտիվ, իրականությանը համարժեք բովանդակություն ունեցող ուսմունքներն ու դրույթները։ Սկզբունքորեն կեղծը որոշ շրջանակներում կարող է դրական նշանակություն ձեռք բերել իմացության զարգացման տվյալ աստիճանում։ Ի դեպ, նման, իր բնությանը հակառակ ֆունկցիա ձեռք բերելը բացառված է գիտական ուսմունքների համար։ Գիտականը, եթե այն զերծ է դոգմայի վերածվելուց, իմացության համար միայն առաջատար ուժ է։ Ուրեմն, գիտությունը կարող է օգտվել ինչպես գիտական, այնպես էլ ոչ-գիտական ուսմունքների «ծառայություններից», որը, իրավ, պետք է դիտվի իբրև գիտության ուժի հզորության վկայություններից մեկը։

Տեսական մտածողության ու իմացության զարգացման այդ հակասական պրոցեսում յուրահատուկ դեր է կատարել, մասնավորապես, մետաֆիզիկական մտածելակերպը։

Ամենից առաջ նկատենք, որ մետաֆիզիկա հասկացությունն այստեղ օգտագործվում է միայն իր ժամանակակից, ստույգ, միանշանակ բովանդակությամբ, այսինքն՝ իբրև շարժման ընդհանրական օրինաչափությունների մասին կեղծ ուսմունք և (դրա հետևանքով) ուսումնասիրության նույնքան կեղծ մեթոդ։

Իբրև այդպիսին մետաֆիզիկան իմացության զարգացման որոշակի փուլում կապված է եղել մատերիալիզմի հետ։ Տեսնենք, թե սկզբունքորեն ինչպես պետք է իմաստավորել այդ կապը, վերջինիս շրջանակներում ինչքանով է մետաֆիզիկական մտածելակերպը նպաստել իմացության զարգացմանը և ինչքանով արգելակել այն, ինչպես է ընդհանրապես մետաֆիզիկան առնչվում մատերիալիստական ու իդեալիստական սիստեմների հետ և ինչպես պետք է արժեքավորել մետաֆիզիկական մտածելակերպի դերը ժամանակակից գիտության ու տեսական մտածողության շրջանակներում։

Փիլիսոփայական գրականության մեջ տրադիցիա է դարձել մետաֆիզիկայի դասական ձևը համարել XVI—XVIII դարերում եվրոպական իրականության մեջ մատերիալիստական սիստեմներում նրա ունեցած դրսևորումը։ Մետաֆիզիկական մտածելակերպը երբեմն նույնացվում կամ համարյա նույնացվում է նրա այդ դրսևորման հետ։ Որքան էլ արտառոց թվա, մատերիալիստների մոտ տարածված այդ նախապաշարմունքը հայտնի չափով մշակվել է իդեալիստական սիստեմներում, մասնավորապես, հեգելյան փիլիսոփայության մեջ, որտեղ ոչ միայն դիալեկտիկան հնարավոր է համարվում միայն իդեալիստական մեկնակետերի պայմաններում, այլև մերժվում է մատերիալիզմի նույնիսկ փիլիսոփայություն լինելու հավակնությունը։ Իսկ Հեգելի հետագա հետևորդները (և ոչ միայն նրանք) մարքսիստական փիլիսոփայության սիստեմում մատերիալիզմի զուգակցումը դիալեկտիկայի հետ դիտեցին իբրև վերջինիս ծայրահեղ գռեհկացում։

Այդպիսին է դիալեկտիկայի մեկնաբանման հիմնական մոտիվը Վինդելբանդի, Կրոչեի, Մերլո-Պոնտիի, Սարտրի, Այերի, Հուկի, մարքսիզմի կաթոլիկական քննադատների և այլոց մոտ։

Նման մթնոլորտում է մշակվել ժամանակակից բուրժուական փիլիսոփայական աշխարհում տարածված այն համոզմունքը, որի համաձայն մատերիալիզմն ընդհանրապես նույնացվում է XVI—XVIII դարերի մատերիալիզմի հետ կամ վերջինիս միակ հնարավոր դրսևորումն է համարվում մետաֆիզիկական մատերիալիզմը։

Իրոք, XVI—XVIII դարերի մետաֆիզիկան պետք է դիտվի իբրև ընդհանրապես մետաֆիզիկական մտածելակերպի դասական դրսևորումներից մեկը, երբ մետաֆիզիկան կապվում էր մատերիալիզմի հետ և երբ, գուցե, այն առավել մեծ չափերով էր իր բնությանը հակառակ ֆունկցիա ձեռք բերել։

Վաղուց ապացուցված է, որ XVI—XVIII դարերի Եվրոպայում կոնկրետ գիտությունների կազմավորման դարաշրջանում իմացությունն անհրաժեշտաբար պետք է ընդուներ փաստահավաքման, առարկաները մեկուսի նկարագրելու ձև։ Այս դեպքում առարկաների ուսումնասիրությունը չէր հասցվում և օբյեկտիվորեն չէր կարող հասցվել նրանց հիմքում ընկած օրինաչափությունների բացահայտմանը։ Ուսումնասիրության նման վերլուծական եղանակի տիրապետությունը միանգամայն օրինաչափ և պատմականորեն դրական բովանդակություն ունեցող ակտ էր իմացության զարգացման տվյալ իրավիճա-



կում։ Այն լիովին համապատասխանում էր ուսումնասիրության մեթոդի ուսումնասիրության առարկայով պայմանավորված լինելու սկզբունքին։

Տվյալ պայմաններում առարկաների ու երևույթների նման մեկուսացված քննության եղանակը, քանի որ այն ուներ իրականությանը համարժեք բովանդակություն և նպաստում էր իմացության զարգացման օբյեկտիվ ու իմմանենտ պահանջներին, դեռևս հեռու էր մետաֆիզիկական գունավորում ունենալուց։ Վիճակը բոլորովին այլ է, երբ ուսումնասիրության տվյալ եղանակը զրկվում է իր համարժեքության հատկանիշից և բացարձակացվում ու վեր է ածվում ընդհանուր մեթոդոլոգիական-փիլիսոփայական սկզբունքի։ Այն բանը, որ բնագետները օրինաչափորեն պետք է սկսեին առարկաների մեկուսացված ուսումնասիրությունից, դեռևս հարցի գիտության շրջանակներում գործող կողմն է։ Բայց բոլորովին այլ բան է, որ իմացության այդ անհրաժեշտ, սակայն ընդհանրապես ոչ-լրիվ ակտը սկզբունքի է վերածվել տեսական մտածողության բնագավառում և, հիմնականում, Բեկոնի ու Լոկի ջանքերով հիմնավորվել փիլիսոփայության մեջ իբրև մտածելակերպ և ճանաչողության մեթոդ։ Սկզբունքի վերածված միակողմանիությունը պատմական տվյալ դարաշրջանում համապատասխանում էր իմացության զարգացման տվյալ վիճակին և դեռևս չէր դրսևորել իր հակագիտական բնույթը։ Այդ շրջանակներում փիլիսոփայորեն ամրակայված նման մետաֆիզիկական աշխարհըմբռնումն ու մեթոդը օբյեկտիվորեն նպաստում էին ինչպես գիտության, այնպես էլ տեսական-մատերիալիստական մտածողության զարգացմանը։ Անտեսել մատերիալիզմի զարգացումը մետաֆիզիկական սկզբունքների տիրապետության շրջանակներում կամ ուղղակի դրանց հիման վրա, ըստ էության, հավասարազոր է XVI—XVIII դարերում մատերիալիստական փիլիսոփայության զարգացման ժխտմանը։

Գիտության պատմությունը վկայում է, թե ինչպես մտածողները սովորաբար հակված են եղել բացարձակացնելու ուսումնասիրության այն եղանակներն ու մեթոդները, որոնք առավել արդյունավետ են գտնվել տվյալ դարաշրջանում, շարժման այն ձևերը, որոնք վճռական նշանակություն են ձեռք բերել մարդկության առաջադիմության տվյալ փուլում։ Այս իմաստով Նյուտոնի «տիեզերական ներդաշնակության» ստեղծումն ավելի քան «հիմնավոր» էր դարձնում մեխանիկայի սկզբունքների բացարձակացումը՝ շարժման բոլոր հնարավոր ձևերի համար։ Նման բացարձակացման արդյունքը՝ մեխանիցիզմը, քանի դեռ գիտական մտածողության ճանապարհին լուրջ արգելք չէր դարձել, նպաստում էր իմացության ու տեսության զարգացմանը ո՛չ միայն մեխանիկական հարաբերությունների շրջանակներում, այլ երբեմն նաև այդ շրջանակներից դուրս։ Նշանավոր ֆիզիկոս Դ. Բոմի համոզմունքով մեխանիցիզմը հսկայական քայլ է հանդիսացել առաջադիմության ճանապարհին. նա է հավիտենապես իրարից անջրպետված ու անփոփոխ տրված էությունների փոխարեն մշակել նոր պատկերացում, ըստ որի իրականության ողջ բազմակերպության հիմքում ընկած են հասարակ, մեխանիկական ունիվերսալ պրոցեսները։ Չնայած իր ոչ-գիտական բնությանը, մեխանիստական աշխարհըմբռնումը «առավել միասնական ու դինամիկ» պատկերացում տվեց իրականության մասին, քան տվել է միջնադարը (տե՛ս Д. Бом, Причинность и случайность в современной физике, М., 1959, стр. 68)։ Այս իսկ մեխանիկական օրինաչափությունների բացահայտումը և հատկապես նրանց բացարձակացումն է հնարավորություն ընձեռել Լապլասին հայտարարելու, որ ինքը

*տիեզերական մեխանիկայի սկզբունքների շարադրման ժամանակ աստծո գոյության հիպոթեզի կարիքը չի զգացել։*

*Նման հակակրոնական, դրական նշանակություն է ձեռք բերել նույնիսկ XVI—XVIII դարերի մետաֆիզիկական սիստեմների կարևորագույն տարրերից մեկը՝ բնության անփոփոխության գաղափարը։ Միջնադարի դեմ ուղղված պայքարում մերժված աստվածային անփոփոխ էության պետք է հակադրվեր նույնքան անփոփոխ բնության գաղափարը, որքանով տվյալ դարաշրջանում անփոփոխության հետ էր կապվում օրինաչափության, հաստատուն լինելու սկզբունքը։*

*Ահա այս ամենն է հիմք ծառայել Ֆ. Էնգելսի այն պնդմանը, որ որոշ շրջանակներում մետաֆիզիկական մտածելակերպը «օրինական և նույնիսկ անհրաժեշտ» է (տե՛ս Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1952, էջ 27), որ մետաֆիզիկան «իր ժամանակին պատմական մեծ արդարացում է ունեցել։ Անհրաժեշտ է իրերը հետազոտել, նախքան հնարավոր էր ձեռնարկել պրոցեսների հետազոտմանը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 497)։*

*Ֆ. Էնգելսի այս մտքերն իրենց հերթին հիմք են ծառայել մեր փիլիսոփայական գրականության մեջ ուղղակի թե անուղղակի դրսևորվող այն ըմբռնման համար, ըստ որի մետաֆիզիկական մտածելակերպի «ծառայությունները» բոլորովին չեն սահմանափակվում պատմական որոշակի դարաշրջանով կամ չեն կապվում մետաֆիզիկայի միայն որոշակի դրսևորումների հետ։ Այդ կատարվում է մասնավորապես «պատմական արդարացում ունենալ» և առավել ևս «դրական դեր ունենալ» հասկացությունններն անիրավացիորեն «ճշմարիտ լինել» հասկացության հետ նույնացնելու ճանապարհով, որի հետևանքով հնարավոր է դառնում խոսել մետաֆիզիկայի իրականությանը համարժեք, օբյեկտիվ բովանդակության մասին ընդհանրապես։ XVI—XVIII դարերի տեսական մտքի էնգելսյան վերլուծությունն ըմբռնվում է այն ձևով, թե, իբր, երևույթների քննության մետաֆիզիկական եղանակը կամ ընդհանրապես մետաֆիզիկական մտածելակերպն անհրաժեշտ նախապայման է ո՛չ միայն իմացության պատմության որոշակի փուլի, այլև նրա յուրաքանչյուր կոնկրետ ակտի համար, քանի որ բոլոր դեպքերում զգացվում է վերլուծության, երևույթների մեկուսացված քննության և տրամաբանական նման այլ ակտերի անհրաժեշտությունը։*

*Ամենից առաջ, արմատականորեն սխալ է իրերի մեկուսացված քննության շփոթումը մետաֆիզիկական համապատասխան սկզբունքի հետ. երևույթների մեկուսի ուսումնասիրությունը, փաստերի հավաքումն ու նկարագրումը օբյեկտիվորեն օրինական պրոցես է յուրաքանչյուր գիտության ձևավորման կամ որևէ սկզբունքի հիմնավորման համար։* Մետաֆիզիկական է ո՛չ թե երևույթների մեկուսի քննությունն, այլ քննության նման եղանակի բացարձակացումը: *Եթե առարկաների ամեն մի մեկուսացված քննություն մետաֆիզիկա դիտվի, ապա զարմանալի կլինի առնվազն մի բան, թե ընդհանրապես ինչպե՞ս կարելի է միայն դիալեկտիկ լինել։ Իրերի կամ նրանց կողմերի մեկուսի քննությունը մետաֆիզիկայի հետ նույնացնելը տեսականորեն հավասարազոր է այն բանին, որ, ասենք, իդեալիզմի էությունը դիտվի ոչ թե իմացության պրոցեսում սուբյեկտիվ կողմի բացարձակացման, այլ սոսկ այդ սուբյեկտիվ կողմի առկայության ընդունման մեջ։*

*Իրերի մեկուսի քննությունը ոչ մի մետաֆիզիկա չի բովանդակում, քանի դեռ իրերի հետևում չեն անտեսվում նրանց կապերն ու անցումները։ Իսկ երբ*



*բացառվում է նման կապը կամ իրերի գոյության հիմքում սքողվում նրանց ծագումն ու անհետացումը, դադարի հետևում չքանում է շարժումը, լոկ այս դեպքում է, որ երևույթների մի կողմի ուսումնասիրումը չի ներկայանում իբրև նրանց բազմակողմանի ուսումնասիրության անհրաժեշտ օղակ և սահմանափակվում է իր միակողմանի շրջանակներում։ Հենց այդ պատճառով և այդ իմաստով է մետաֆիզիկան ձեռք բերում սուբյեկտիվ որոշակիություն։*

*Այնուհետև, բոլորովին էլ նույն բովանդակությունը չունեն «ճշմարիտ լինել», «դրական դեր ունենալ» և «պատմական արդարացում ունենալ» հասկացությունները։ Իմացության առաջընթացի համար դրականաբար են արժեքավորվում ո՛չ միայն ճշմարտությունները, այլև ոչ քիչ մոլորությունններ։ Դրականն ավելի լայն հասկացություն է, քան ճշմարիտը, այն իր ոլորտն է առնում ո՛չ միայն ճշմարիտը, այլև որոշ մոլորությունններ։ Իմացության զարգացման համար ոչ յուրաքանչյուր դրականն է միաժամանակ նաև ճշմարիտ, թեև դրական բնութագրություն ունեն բոլոր ճշմարտությունները։ Մետաֆիզիկական մտածելակերպի որևէ դրսևորման պատմականորեն դրական դեր խաղալը դեռ ոչինչ չի ասում նրա օբյեկտիվ-համարժեք բովանդակություն ունենալու մասին և երբեք չի կարող ապացույց ծառայել նրա, իբրև իմացության մեթոդի, ճշմարտության նշանակություն ձեռք բերելու համար։*

*Հեռու են նույն բովանդակությունը ունենալուց նույնիսկ «դրական դեր ունենալ» և «պատմական արդարացում ունենալ» հասկացությունները։ Պատմական արդարացում ունենալ նշանակում է՝ բովանդակել պատմական զարգացման օբյեկտիվ օրինաչափություն, կյանքի կոչվել պատմական որոշակի անհրաժեշտության ուժով, որպիսի արդարացումից զուրկ չէ նույնիսկ կրոնական մտածողությունն իր ատրիբուտներով ու առարկայացված դրսևորումներով։ Որքան էլ կեղծ լինի կրոնի բովանդակությունը, որքան էլ այն բացասական դեր ստանձնի սոցիալական կյանքի և իմացության զարգացման ճանապարհին, այնուամենայնիվ, կրոնական աշխարհըմբռնումը օբյեկտիվորեն պայմանավորված է հենց նույն սոցիալական կյանքի և իմացության զարգացման որոշակի էտապի անհրաժեշտ օրինաչափություններով։ Բայց հազիվ թե այդ հիման վրա հնարավոր լինի խոսել ընդհանրապես կրոնի, իբրև աշխարհըմբռնման, դրական դեր ունենալու մասին։*

*Իսկն ասած, պատմական արդարացման հարցը դետերմինիզմի սկզբունքի՝ յուրաքանչյուր երևույթի անհրաժեշտաբար համապատասխան հիմք կամ պատճառ ունենալու հարցի մասնավոր պահանջն է։ Մինչդեռ դրական դերի հարցը վերաբերում է արդեն ծնունդ առած տվյալ երևույթի սոցիալ-իմացական հիմնական նշանակությանը, նրա՝ երևույթների համար դրական թե բացասական դետերմինանտ ծառայելուն։ Պատմական արդարացումը վերաբերում է երևույթների ծագման օրինաչափությանը, դրական դերը՝ երևույթների գործողության բնութագրին։ Ծագումով բոլոր երևույթները հիմնականում ենթարկվում են միևնույն օրինաչափությանը, մասնավորապես դետերմինիզմի սկզբունքին, մինչդեռ, իրենց սոցիալ-իմացական ֆունկցիայով նրանք կարող են մինչև իսկ արմատապես հակադիր որոշակիություն ունենալ։*

*Ստացվում է, որ «պատմական արդարացում ունենալ» հասկացությունը շատ ավելի լայն է, քան «դրական դեր ունենալ» հասկացությունը։ Իր հերթին, «դրական դեր ունենալը» ավելի լայն է «ճշմարտություն» հասկացությունից։ Բոլոր կարգի ուսմունքներն ունեն իրենց պատմական դետերմինավորումը կամ արդարացումը։ Սակայն ոչ բոլոր ուսմունքներն են դրական դեր ունե-*

նում։ Առավել ևս ոչ բոլոր դրական դեր կատարած ուսմունքներն են միաժամանակ նաև ճշմարտություն բովանդակում։

Այդ իմաստով մետաֆիզիկան, իբրև տեսական՝ փիլիսոփայական սիստեմ, ինչպես իր ընդհանուր որոշակիության, այնպես էլ կոնկրետ դրսևորման յուրաքանչյուր դեպքի համար ունի իմացական ու սոցիալական անհրաժեշտ դետերմինավորում։ Մետաֆիզիկական մտածելակերպը իր բոլոր դրսևորումներով ընդհանրապես բնութագրվում է փիլիսոփայական ուսմունքներին հատուկ պատմական արդարացում ունենալու հատկանիշով, որը դեռևս ոչինչ չի ասում նրա՝ իմացության պատմության և սոցիալական կյանքում ունեցած նշանակության մասին։ Այստեղ հավաստվում է միայն հայացքների յուրաքանչյուր հնարավոր սիստեմի օբյեկտիվ բովանդակություն ունենալու վերաբերյալ մատերիալիստական սկզբունքը։ Այսինքն՝ բացառված է օբյեկտիվ իրականության հետ բացարձակապես առնչություն չունեցող ուսմունքի ըստեղծման հնարավորությունը. ամենակեղծ ուսմունքներն անգամ այս կամ այն կերպ արտացոլում են իրականությունը։ Հենց այդ «այս կամ այն կերպն» է, որ բովանդակում է գիտական ու ոչ-գիտական ուսմունքների տարբերությունը։

Գիտական ուսմունքի բովանդակությունը **համարժեք** օբյեկտիվն է, ոչ-գիտականինը՝ **ոչ-համարժեք, աղավաղված** օբյեկտիվը։ Ուրեմն, իրենց ընդհանուր որոշակիության մեջ օբյեկտիվ բովանդակություն ունեն բոլոր հնարավոր տեսությունները, նույնիսկ բոլոր հոգևոր որակները. իսկ օբյեկտիվ բովանդակությունը կարող է լինել ինչպես համարժեք, այնպես էլ ոչ-համարժեք կամ այդ իմաստով՝ կեղծ։ Մետաֆիզիկան, իբրև ուսմունք կամ իրականության որոշակի իմաստավորում և ուսումնասիրության որոշակի մեթոդ, ելակետ ունի շարժման ոչ թե համակողմանի համարժեք արտացոլումը, այլ նրա որևէ տենդենցի, կողմի, ձևի կամ դրսևորման միակողմանի բացարձակացումը։ Նման աղավաղված, ոչ-համարժեք բովանդակության առկայությունը ընդհանրապես բացառում է մետաֆիզիկական մտածելակերպի դրական նշանակությունը իմացության ու սոցիալական կյանքի առաջադիմության համար։ Ինչպես վերը նկատվեց, մետաֆիզիկան այդպիսի նշանակություն կարող էր ստանալ միայն իր պատմական որոշ դրսևորումներում, մասնավորապես, երբ այն կապված էր մատերիալիստական աշխարհըմբռնման հետ։ Մինչդեռ, իր բուն էության մեջ, իր գոյաբանական, իմացաբանական, ինչպես նաև սոցիալական որոշակիություններում մետաֆիզիկական մտածելակերպը ներքին ընդհանրություն է ձեռք բերում իդեալիստական աշխարհըմբռնման հետ և տրամաբանորեն ենթադրում այն։

Թե՛ իդեալիզմը, թե՛ մետաֆիզիկան բովանդակավորվում են իրականության որոշակի հարաբերությունների ոչ-համարժեք, աղավաղված արտացոլումներով։ Նրանք երկուսն էլ իմացաբանական տեսակետից ելակետ ունեն «միակողմանիությունը», «փայտայնությունը», «սուբյեկտիվիզմը», ոչ իրենց բնական կապերի մեջ երևույթների քննությունն ու արժեքավորումը։ Իդեալիստական յուրաքանչյուր սիստեմի ելակետը իրական կապակցություններում հոգու և հոգեկանի տեղի ու դերի աղավաղումն է։ Այդ իսկ պատճառով յուրաքանչյուր իդեալիստական սիստեմ իր այդ որոշակիությամբ միաժամանակ նաև մետաֆիզիկական է։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր իդեալիստական սիստեմի իմացաբանական արմատները այդպիսիք են նաև մետաֆիզիկայի համար։ Սակայն ոչ բոլոր մետաֆիզիկական սկզբունքներն են միաժամանակ



նաև իդեալիստական։ Իդեալիստական բովանդակություն ունեն միայն փիլիսոփայական ընդհանրացում ունեցող այն միակողմանիությունները, որոնց որոշակի ելակետը սուբյեկտիվ աշխարհի որևէ կողմն է, հոգեկանը՝ իր այս կամ այն դրսևորմամբ։ Մինչդեռ, մետաֆիզիկական է իրական համընդհանուր կապակցությունների ամեն մի խախտում, շարժման յուրաքանչյուր ձևի աղավաղված ըմբռնում։ Ստացվում է, որ մետաֆիզիկայի ու իդեալիզմի իմացաբանական ընդհանրությունն, ամենից առաջ, երևույթները միակողմանի արտացոլելը և այդ միակողմանիությունը բացարձակացնելն է։ Սակայն, մետաֆիզիկայի իմացաբանական «բազան» շատ ավելի լայն է, քան իդեալիզմինը։ Վերջինիս համար միակողմանիության բացարձակացման «ասպարեզ» է ծառայում միայն մարդու հոգևոր աշխարհը. իդեալիզմի իմացաբանական հնարավորությունը տրված է միայն շարժման մի ձևի՝ մտածողության շրջանակների, ավելի ստույգ՝ մտածողության սուբյեկտիվ կողմի մեջ, մինչդեռ մետաֆիզիկայի համար ելակետ կարող են ծառայել ոչ միայն մտածողությունը կամ նրա որևէ կողմը, այլև ընդհանրապես շարժումն իր բոլոր որոշակիություններում։ Հենց այս տարբերության անտեսումն է հարուցել այն սխալ եզրակացությունը, թե իբր յուրաքանչյուր փիլիսոփայական մակարդակի ընդհանրացում ունեցող աղավաղում արդեն ունի իդեալիստական բովանդակություն։ Այս կարգի տրամաբանությամբ «իդեալիստական» են հայտարարվել, օրինակ, աշխարհագրական դետերմինիզմը սոցիոլոգիայում, կիբեռնետիկայի փիլիսոփայական իմաստավորման հարցում տեղ գտած մեխանիստական ըմբռնումները, տիեզերքի «ջերմային մահվան» տեսությունը, ժառանգակիր նյութին ակտիվություն վերագրելը և այլն։

Ավելին, մետաֆիզիկայի իմացաբանական արմատները տարբերվում են իդեալիզմի իմացաբանական արմատներից միևնույն հոգևոր աշխարհի շրջանակներում երևույթների նկատմամբ ունեցած տարբեր մոտեցումներով։ Իդեալիզմը բնութագրվում է հոգեկանի սուբյեկտիվ կողմի բացարձակացմամբ, իսկ դրանով պայմանավորված երևույթների իրական կապերի աղավաղումը ներկայանում է իբրև նման մոտեցման անուղղակի, երկրորդական արդյունք։ Մինչդեռ մետաֆիզիկան անմիջականորեն և ուղղակի կերպով ելակետ ունի հենց երևույթների կապերն ու հարաբերությունները։ Ուրիշ խոսքով, իդեալիզմի համար վճռական նշանակություն ունի, թե ինչպիսի իմացաբանական աղավաղում է թույլ տրվում, մինչդեռ մետաֆիզիկայի համար այդ «ինչպիսին» կորցնում է իր նշանակությունը. նրա հնարավորությունն իրականություն է դառնում սոսկ աղավաղման փաստով։ Դրանով իսկ իդեալիստական աղավաղումը ներկայանում է իբրև միայն մետաֆիզիկայի հնարավոր դրսևորումներից մեկը։ Հենց այդ տարբերությունն է հնարավոր դարձնում մետաֆիզիկական մատերիալիզմի գոյությունը։ Եվ վերջապես, մետաֆիզիկան ու իդեալիզմը փոխադարձաբար ենթադրում են միմյանց իրենց սոցիալական դերով, որպես կանոն, լինելով իրական հարաբերությունների ոչ-համարժեք արտացոլմամբ շահագրգռված հասարակական խավերի գաղափարական զենքը։

Իդեալիզմի ու մետաֆիզիկայի ներքին ազգակցությունը և վերջինիս մատերիալիզմի էությանն օտար լինելը ակնառու է դառնում հատկապես իմացության ու սոցիալական կյանքի զարգացման ժամանակակից պայմաններում, երբ սկզբունքորեն բացառվում է մետաֆիզիկական մատերիալիստական

սիստեմի ստեղծման ռեալ հնարավորությունը և մատերիալիզմը դրսևորվում է միայն իբրև դիալեկտիկական մատերիալիզմ։

Այդ, ամենից առաջ, պայմանավորված է իմացության առաջընթացով։ Իմացության կամ գիտության զարգացումը, նրա որակությունը մեծապես որոշում են փիլիսոփայական սիստեմների ձևը, նրանց պրոբլեմատիկան ու բովանդակությունը։ Դիալեկտիկական մտածողության կազմավորումը կապված է հատկապես գիտության էմպիրիկ վիճակից տեսականին անցնելու հետ, որը գոյաբանական տեսակետից նշանակում է՝ փաստերի նկարագրումից անցնել նրանց հիմքում ընկած օրինաչափությունների բացահայտմանը։ Դեռևս դարասկզբին Լենինը ցույց տվեց, որ իմացության զարգացման տրամաբանական ընթացքով հին, մետաֆիզիկական մատերիալիզմը կամ պետք է անցում կատարի դիալեկտիկական մատերիալիզմին, կամ ռելյատիվիզմի վրայով գլորվի իդեալիզմի գիրկը։

Նման իմացական, ճանաչողական շարժառիթներից բացի մետաֆիզիկական մատերիալիզմը տեսական մտքի պատմության մեջ սկզբունքորեն անցած էտապ համարելը հիմնավորվում է նաև նրա սոցիալական համապատասխան պատճառավորմամբ։

Հայտնի է, որ փիլիսոփայական այս կամ այն սիստեմի գոյությունը արդարացվում է նրա սոցիալական համապատասխան բովանդակության՝ հասարակական այն ուժի առկայությամբ, որն իր իրականությամբ պայմանավորում է գաղափարական տվյալ համապատասխան զենքի իրականությունը։ Սոցիալական հիմքից, շահախնդրությունից զուրկ փիլիսոփայական ուսմունքի գոյությունը, առավել ևս արդի դարաշրջանում, բացառված է։

Մետաֆիզիկական մատերիալիզմն իր ժամանակին եղել է դարաշրջանի առաջավոր, հեղափոխական դասակարգի գաղափարական զենքը։ Ընդհանրապես մատերիալիզմն առաջավոր դասակարգի գաղափարախոսությունն է։ Մեր դարաշրջանի սոցիալական առաջադիմության կրողը պրոլետարիատն է, որի պատմական կոչմանը համապատասխանող գաղափարական միակ զենքը դիալեկտիկական մատերիալիզմն է։

Նման հանգամանքներում մետաֆիզիկական մատերիալիզմը զրկվում է իր սոցիալական դետերմինավորումից. սոցիալական կյանքը այլևս չի բովանդակում մատերիալիզմի մետաֆիզիկական տարատեսակի ստեղծման կամ նույնիսկ պահպանման ռեալ հնարավորությունը։ Փիլիսոփայական այդ սիստեմում շահագրգռված սոցիալական ուժ այլևս գոյություն չունի։ Այն կարող է միայն երանգավորել փիլիսոփայական տարբեր համակարգերի միջև տեղի ունեցող անցումները, բայց երբեք փիլիսոփայական ինքնուրույն հոսանք չներկայացնել։

Վերջապես մատերիալիզմի մետաֆիզիկական ձևն իր գոյության ռեալ հնարավորությունը սպառել է նաև փիլիսոփայական մտքի տրամաբանական զարգացման տեսակետից։

Տեսական մտքի զարգացման տրամաբանությունն այնպիսի ընթացք ունի, որ յուրաքանչյուր դարաշրջանում մատերիալիզմը և իդեալիզմը որոշ սահմաններում փոխադարձաբար պայմանավորում են մեկը մյուսի պրոբլեմատիկան, մասամբ դետերմինավորում մեկը մյուսի ձևը։ Այդ երևույթը գուցե նույնիսկ փիլիսոփայական մտքի զարգացման օրինաչափություններից մեկն է։ Մատերիալիզմը, որպես կանոն, ոչ միայն ներկայանում է իբրև տվյալ դարաշրջանի իդեալիզմի հակադրություն, այլև բովանդակում նրա մերժումը,



որպիսի տենդենցից զուրկ չէ նաև իդեալիստական աշխարհըմբռնումը։ Այդ նույն օրինաչափությամբ արդի մատերիալիզմը պետք է ներկայանա և ներկայանում է որպես ժամանակակից իդեալիզմի արժանավոր հակոտնյա ու բովանդակում նրա ռացիոնալ հերքումը։ Մինչդեռ, մետաֆիզիկական մատերիալիզմը վաղուց արդեն անկարող է նույնիսկ լուրջ դիմակայել իդեալիզմի ժամանակակից դրսևորումներին (դա, ըստ էության, ապացուցել է դեռ Հեգելը)։ Ժամանակակից իդեալիզմին արժանի, լուրջ ու նրա հաղթահարումը բովանդակող մատերիալիստական միակ սիստեմը կարող է ճանաչվել դիալեկտիկական մատերիալիզմը— փիլիսոփայական մի ուսմունք, որն իր իմացաբանական մեկնակետերում ելնում է ժամանակակից գիտության նվաճումներից, իսկ սոցիալական դետերմինավորումը գտնում դարաշրջանի ամենաառաջադեմ հասարակական ուժի՝ պրոլետարիատի հեղափոխական գործունեության մեջ։

Անգլիական մարքսիստ փիլիսոփա Մորիս Կորնֆորտը մատնացույց անելով ժամանակակից անգլիական բուրժուական փիլիսոփայության մեջ նկատվող մատերիալիստական կամ ավելի ճիշտ հակաիդեալիստական տենդենցները, գտնում է, որ իդեալիզմից վճռական դիմադարձը կարող է իրականանալ միայն դիալեկտիկական մատերիալիզմին անցնելով։ Այդ տեսակետից պատահական չէ, որ իդեալիզմից հեռացման փորձերը, մասնավորապես, Ս. Ալեքսանդերի, Ա. Ն. Ուայթհեդի և այլոց մոտ զուգակցվում են երևույթների պատմականությունը նախանշող ուսմունքների ստեղծման փորձերի հետ («էմերջենտյան էվոլյուցիա» և այլն)։ Հակաիդեալիստական նման տենդենցների հիմնական շարժառիթը, իհարկե, չի պատճառաբանվում սոսկ գիտական մտքի ու ողջախոհության ազդեցության փաստով, ինչպես կարծում է Կորնֆորտը։ Առավել արմատականը պետք է համարել անգլիական սոցիալական կյանքի և ժամանակակից իրականության մեջ ձախ ուժերի դերի ակնհայտ աճը, հասարակական կյանքի ձախացման հանգամանքը։

Արդի պայմաններում ո՛չ միայն մատերիալիզմը չի կարող մետաֆիզիկական հիմքերի վրա կանգուն լինել, այլև ինքը՝ մետաֆիզիկան անկարող է ժամանակակից գիտությունն ելակետ ունեցող մատերիալիզմի սկզբունքներին դիմակայել։ Մեր դարաշրջանում, երբ իմացության ավելի ու ավելի մեծ ասպարեզներ են տեսական բնույթ ստանում, երբ իմացության առավել շատ բնագավառներ են յուրովի «ծնում» դիալեկտիկական մատերիալիզմ—այս պայմաններում իդեալիզմից ձերբազերծվելու բոլոր մայրուղիները տանում են դեպի դիալեկտիկական մատերիալիզմ։ Եվ արդի մատերիալիզմը հրամայաբար ենթադրում է դիալեկտիկա, իսկ դիալեկտիկան իր ամբողջական դրսևորման համար պահանջում է միայն երևույթների իմաստավորման մատերիալիստական եղանակ։

Սկզբունքորեն օտարածին են ո՛չ թե մատերիալիզմն ու դիալեկտիկան, այլ մատերիալիզմն ու մետաֆիզիկան։ Դիալեկտիկայի իմմանենտությունը տրված է նրա մատերիալիստական մեկնակետերի մեջ։ Մատերիալիզմը հետևողական կարող է լինել միայն դիալեկտիկայի հիմքերի վրա, ինչպես և դիալեկտիկան չի կարող բացահայտել իր ողջ գիտական ու հեղափոխական ոգին, եթե չի ծավալվում մատերիալիզմի շրջանակներում։ Նույն տրամաբանությամբ իդեալիզմն ու մետաֆիզիկան են ենթադրում միմյանց, սկզբունքորեն հնարավոր դարձնում մեկը մյուսին։

Ժամանակակից փոփոխված պայմաններում փոխակերպվում են ինչպես

մետաֆիզիկական մտածելակերպի դրսևորման հիմնական աղբյուրները, այնպես էլ նրա ձևերը։ Մետաֆիզիկան, իբրև ամբողջական համակարգ, իր կեցությունն է գտնում միայն իդեալիստական սիստեմներում։ Ընդ որում, եթե մետաֆիզիկան, գոնե իր մեխանիստական ձևում, XVII—XVIII դդ. ներքնապես բավականին միաձույլ ամբողջություն էր ներկայացնում, ապա ժամանակակից պայմաններում տեսական մտածողության և ընդհանրապես գիտելիքների ծավալի անհամեմատ մեծացումն ու իմացության ապարատի բարդացումը հնարավոր է դարձրել մետաֆիզիկական մտածելակերպի դրսևորումը ամենաբազմազան ձևերով։ Մեր դարաշրջանի տեսական մտածողության մետաֆիզիկական սպեկտրը կազմավորվում է այնպիսի խայտաբղետությունններից, ինչպիսիք են՝ ռելյատիվիզմը, «ստեղծագործական էվոլյուցիոնալիզմը», նեոթոմիստական «հիլեմորֆիզմը», «կեցության շերտերը» նեոռեալիստների մոտ և այլն։ Այլ կերպ ասած՝ XVII—XVIII դդ. դասական մեխանիկայի սկզբունքների շատ թե քիչ միանական բացարձակացման փոխարեն մեր դարաշրջանում գործ ենք ունենում տեսական բազմազան սկզբունքների միակողմանի բացարձակացումների հետ։ Եվ դա պետք է դիտվի որպես ժամանակակից պայմաններում մետաֆիզիկական մտածելակերպի գոյության միակ հնարավոր (ինչպես նաև վերջին) ձևը։

Մեր դարաշրջանում մետաֆիզիկայի նման բազմազան դրսևորումները գուցե պետք է բացատրվեն նաև նրա՝ իդեալիզմի հետ ունեցած անմիջական կապի հանգամանքով. բոլոր ժամանակներում իդեալիստական աշխարհըմբռնման էական որոշակիություններից է եղել պլյուրալիզմը, զանազանակերպությունն իր ելակետերում։ Ընդհանրապես փիլիսոփայական ոչ գիտական սկզբունքներին հատուկ է ներքին միասնությունից զուրկ լինելը։ Եթե դիալեկտիկայի պատմությունը բնութագրվում է նրա նախորդ վիճակները հաջորդում վերառնելու օրինաչափությամբ, ապա տեսական մտածողության պատմության մեջ մետաֆիզիկական մեկ ծայրահեղությունը սովորաբար հաղթահարվել է նրա նույնքան ծայրահեղ մեկ այլ դրսևորմամբ։ Հետևողական մոնիզմը կապվում է միայն մատերիալիստական աշխարհայեցողության հետ։

Ժամանակակից պայմաններում մետաֆիզիկական մտածողության ամբողջական համակարգի ձևով դրսևորվելը միայն իդեալիստական աշխարհըմբռնման հետ կապելը բոլորովին էլ չի բացառում գիտական կամ գաղափարական այս կամ այն սկզբունքի մետաֆիզիկական իմաստավորումը նաև մատերիալիստական մեկնակետերի պայմաններում։ Դա կարող է արտահայտվել, մասնավորապես, առարկայական որոշ համասեռ խմբակցությանը վերաբերող օրինաչափություններն այլասեռ առարկայական խմբակցությունների վրա տարածելու, իմացության տրամաբանական ապարատի այս կամ այն տարրի տեղի ու դերի անիրավացի բացարձակացման և այլ ձևերով։ Գիտության առաջընթացում նկատվող նման երևույթները, որոնք հայտնի են դոգմատիզմ անվան տակ, առավել մեծ տարածում են ունենում հատկապես իրական հարաբերությունների իմաստավորման սոցիալ-քաղաքական ոլորտում։ Իմացական մոտիվներից բացի, այստեղ քիչ դեր չունի նաև համապատասխան սոցիալական ուժերի շահագրգռվածությունը։ Այս իմաստով մետաֆիզիկական մտածելակերպի հաղթահարումն իր բոլոր դրսևորումներով այս կամ այն կերպ կապված է ինչպես սոցիալական կյանքի, այնպես էլ իմացության հետագա առաջընթացի հետ։




## ԲԱՎԱՐԱՐԵՆՔ ՀՆԳՕՐՅԱԿԻ ՀՈԳՍԵՐԸ

ԴԵՄԻՐՃՅԱՆ Կ. Ս.

ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի քարտուղար

Մայրաքաղաքի ամբողջ արդյունաբերությունն ու շինարարությունը, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մնացած ճյուղերը կես տարի է, ինչ գործում են նոր ռեժիմով՝ հնգօրյա աշխատանքային շաբաթով, երկու հանգստյան օրով։

Հնգօրյա աշխատանքային շաբաթի կիրառումը նոր հնգամյակի սոցիալ-տնտեսական միջոցառումների կարևորագույն էտապներից է։ Այն կոչված է բարելավելու բանվոր-ծառայողների աշխատանքային և հանգստի պայմանները, ընդարձակելու նրանց մտավոր ունակությունների բարձրացման հնարավորությունները, պայմաններ ստեղծելու մարդկանց հոգևոր և կուլտուրական զարգացման համար։

Ոչ պակաս կարևոր է հնգօրյակի տնտեսական նշանակությունը։ Աշխատանքային նոր ռեժիմը բարենպաստ պայմաններ է ստեղծում աշխատանքի արտադրողականության, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման համար։ Այսպիսով, հնգօրյա աշխատանքային շաբաթը գալիս է բազմապատկելու սոցիալիստական հասարակարգի նյութական ու հոգևոր արժեքները և լիովին ապահովելու սովետական ժողովրդի բարգավաճումը։

Պետք է նշել, որ աշխատանքային նոր ռեժիմի կիրառումն ընթանում է տնտեսական ռեֆորմի իրականացմանը զուգընթաց։ Ռեֆորմի հաջող կենսագործումը լիակատար նախապայմաններ է ապահովում նոր աշխատաշաբաթի արգասաբեր իրագործման համար։ Արդեն առ 1-ը մայիսի 1968 թ. պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին են անցել Երևանի 81 արդյունաբերական ձեռնարկություն կամ քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների 37 տոկոսը, որոնք տալիս են քաղաքի արտադրանքի 58,2 տոկոսը։

Նախապես ասենք, որ նոր շաբաթի կիրառմամբ ակներև հաջող է ընթանում մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների պլանների քանակական ու որակական կատարումը։ Ի դեպ, հնգօրյակին կազմակերպված

անցնելու տեսակետից ուսանելի են Երևանի սարքաշինական գործարանի փորձերը (դիրեկտոր ընկ. Ա. Ավագյան, կուսկազմակերպության քարտուղար Ռ. Վահրամյան)։ Այս գործարանը 1966 թ. հունվարի 1-ից աշխատում է 8-ժամյա աշխատանքային գրաֆիկով։ Յուրաքանչյուր 8-րդ շաբաթը աշխատանքային օր է։ Այստեղ արմատավորվել է աշխատանքի գիտական կազմակերպումը, մեքենայացվել և ավտոմատացվել են որոշ տեխնոլոգիական պրոցեսներ, գործարկվել կոնվեյերային գծեր, մեքենայացվել են տեղափոխման որոշ աշխատանքներ, բարելավվել աշխատանքային պայմաններն ու արտադրակուլտուրան։ Էական աշխատանք է կատարվել որակի բարձրացման ուղղությամբ։ Կուսակցական կազմակերպությունն իր ձեռքն է վերցրել հնգօրյակի հետ կապված հարցերի լուծումն ու իրականացումը, լուրջ աշխատանք է ծավալել աշխատողների կուլտուրական հանգստի կազմակերպման ասպարեզում։

Շնորհիվ այս ամենի գործարանը 1966 և 1967 թվականներին հաջող կատարել է ապրանքային արտադրության պլանը, նախորդ տարիների համեմատությամբ տալով արտադրանքի 10,5 և 12,7 տոկոս աճ։ Կոլեկտիվի անդամները ազատ շաբաթ և կիրակի օրերին հանգստանում են Ծաղկաձորում, կազմակերպվում են կուլտ-մասսայական միջոցառումներ ինչպես գործարանում (շաբաթ օրերին), այնպես էլ գործարանից դուրս։ Գործարանը ձեռնամուխ է եղել Աղվերանում 150 տեղանոց պանսիոնատի կառուցմանը։

Քաղաքի մասշտաբով հնգօրյակի անցման շնորհիվ քաղաքի ձեռնարկություններում զգալիորեն նվազել են ներհերթափոխային պարապուրդները։ Այսպես, եթե 1967 թ. 1-ին եռամսյակում օրական և ներհերթափոխային պարապուրդները կազմում էին համապատասխանաբար 18591 մարդ-օր, ապա 1967 թ. 4-րդ եռամսյակում դրանք կազմեցին 11215 մարդ-օր։ Սա ցույց է տալիս, որ հնգօրյակը հնարավորություն է տալիս կարգավորելու հիմնական ֆոնդերի վիճակը, բարձրացնելու վերանորոգման աշխատանքների մակարդակը, վերացնելու որոշ անհամամասնությունները։

Սակայն հնգօրյակին անցնելիս քաղաքի որոշ կազմակերպությունների աշխատանքներում դեռևս առկա են լուրջ թերություններ։ Մի շարք կազմակերպություններում թերագնահատվել է նախապատրաստական աշխատանքների նշանակությունը, հաշվի չեն առնվել բանվոր-ծառայողների առաջարկություններն ու ցանկությունները, պայմաններ չեն ստեղծվել բարձր արտադրողական աշխատանքի համար, նշանակալիորեն չեն բարելավվել բանվորների կենցաղային պայմանները։

Այդ իսկ պատճառներով հնգօրյակի անցումը որոշ ձեռնարկություններում չի տվել սպասված արդյունքը։ Օրինակ. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի ֆաբրիկայում, գեղարվեստական ժամացույցների, էլեկտրաճշգրիտ սարքավորումների և այլ գործարաններում հնգօրյակի անցնելուց հետո, 1967 թ. 4-րդ եռամսյակում, իջել է աշխատանքի արտադրողականությունը, նույն տարվա 1-ին եռամսյակի համեմատությամբ։

1967 թ. քաղաքի 11 արդյունաբերական ձեռնարկություն չեն կատարել արտադրության ծավալային պլանները, իսկ 15 ձեռնարկություն՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։ Ընթացիկ տարվա առաջին 4 ամիսներում իրացման պլանը չի կատարվել 47 ձեռնարկությունների կողմից և չի իրացվել շուրջ 5 մլն. ռուբլու արտադրանք։



Հնգօրյա շաբաթին անցնելուց հետո էլ իրենց պլանների թերակատարմամբ աչքի ընկան շինարարական կազմակերպությունները. այդ առթիվ հատուկ որոշում ընդունեց Երևանի քաղկոմը, պատասխանատվության կանչելով մեղավորներին։ Թեև անհրաժեշտ է հիշատակել, որ ոչ միայն շինարարության, այլև արդյունաբերության պլանների թերակատարման կարևոր պատճառներից է՝ դրանց նյութատեխնիկական վատ մատակարարումը։ Հասկանալի է, որ այս իրողությամբ չի կարելի արդարացնել այն անմխիթար վիճակը, որը գոյություն ունի մայրաքաղաքի տրանսպորտային սպասարկման մարզում։ Անհանդուրժելի է, որ քաղաքի ձեռնարկությունները 560 հազար ռուբլի տուգանք են վճարել երկաթուղային տրանսպորտին, բեռնաթափման պլանները չկատարելու համար։

Առանց տրանսպորտի նորմալ գործունեության, հնարավոր չէ առաջ մղել տնտեսության և ոչ մի օղակի զարգացումը։ Ահա թե ինչու կուսշրջկոմներից պահանջվում է կոնկրետ և ճկուն միջոցառումներ, հիմնովին վերացնելու քաղաքային տրանսպորտի ոլորտում տեղ գտած թերությունները։

Հնգօրյա շաբաթը հրամայաբար թելադրում է տնտեսավարներին արդյունավետ միջոցներով կանխել բանվորական ուժի հոսունությունը, որը վերջերս մեծ չափերի է հասել։ Ժամանակն է սոցիոլոգիական ուսումնասիրմամբ բացահայտել այդ երևույթի նյութակազմակերպչական պատճառները և պետական մասշտաբով վերացնել նրա բացասական հետևանքները։

Տնտեսական խթանման և պլանավորման նոր սիստեմի կիրառումը և աշխատանքային նոր ռեժիմի արմատավորումը ստեղծում են օբյեկտիվ հնարավորություններ աշխատուժի հոսունության մեծ չափերը կանխելու համար։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ կարճ ժամանակամիջոցում շտկել գործերի վիճակն այս ասպարեզում։

Այժմ Երևանի արդյունաբերությունը, շինարարությունը և տնտեսության մյուս ճյուղերը բանվորական ուժի խիստ կարիք են զգում։ Հնգօրյակին անցնելուց հետո այդ պահանջն ավելի է մեծացել և այն պատճառով, որ շատ բանվորուհիներ և ծառայող կանայք, աշխատանքային ժամերի երկարացման պատճառով հնարավորություն չունեն աշխատելու և միաժամանակ երեխաներին խնամելու։ Մայրաքաղաքում դեռևս լիովին լուծված չէ նախադպրոցական երեխաներին մանկապարտեզներում և մանկամսուրներում ընդգրկելու հարցը։ Շատ մայրեր չեն աշխատում նաև դպրոցների բազմահերթության պատճառով և այլն։

Կարծում ենք, որ որոշ ձեռնարկություններում կարելի է կազմակերպել ոչ լրիվ աշխատանքային օր, ասենք 4 ժամյա աշխատանքի տևողությամբ և համապատասխան վարձատրությամբ։ Թվում է դա հնարավորություն կտա արտադրության մեջ ներգրավել մեծ թվով երեխա ունեցող կանանց, չափահաս երեխաներին և, նույնիսկ հաշմանդամներին ու թոշակառուներին։ Ըստ որում, այդ գործը հնարավոր է կազմակերպել օրվա այնպիսի ժամերին, որը ձեռնտու լինի ինչպես աշխատողների, այնպես էլ արտադրության համար։

Հնգօրյակն ավելի է սրում տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման պահանջը։ Դա մեծապես խնայում է մարդու էներգիան և հնարավորություն տալիս արդյունավետ աշխատելու ամբողջ աշխատանքային օրվա ընթացքում։

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացումը պահանջում է

բանվորից բարձր որակավորում և տեխնիկական գիտելիքներ։ Հնգօրյակը նպաստավոր պայմաններ է ընձեռում բանվորների տեխնիկական ուսուցման համար։ Այդ տեսակետից, օրինակ, ուսանելի է Հայէլեկտրագործարանի կուսակցական կազմակերպության աշխատանքի փորձը բանվորների արտադրական ուսուցման և որակավորման բարձրացման բնագավառում։

Հնգօրյակի կապակցությամբ այստեղ իրենց ուսումնական գրաֆիկները փոխել են պոլիտեխնիկ ինստիտուտի և էլեկտրամեխանիկական տեխնիկումների ֆիլիալները։ Վերակառուցել է իր գործունեությունը նաև № 11 բանվորական դպրոցը, որն այժմ աշխատում է 2 հերթափոխով։ Հնգօրյակի անցնելու կապակցությամբ ձեռնարկված միջոցառումների շնորհիվ այս ուսանողների և աշակերտների թիվն ավելացել է 200 մարդով։ Այժմ յուրաքանչյուր 3 բանվորից մեկը սովորում է։

Վերջապես, արտադրության ոլորտում աշխատանքային նոր ռեժիմի արմատավորումը պահանջում է հատուկ ուշադրություն դարձնել աշխատանքի գիտական կազմակերպման վրա, որի համատարած իրականացումը միայն կստեղծի երաշխիք սոցիալ-տնտեսական այս մեծ միջոցառման շնորհիվ դրական արդյունքներ ստանալու համար։

Սոցիալիստական հասարակարգի զարգացման ընթացքում ազատ ժամանակի դերն ու նշանակությունն անընդհատ աճում է։ Կոմունիզմի բարձրագույն փուլում, ըստ Մարքսի, հասարակության հարստության չափանիշը դառնում է ոչ թե աշխատանքային, այլ ազատ ժամանակը։

Հնգօրյա աշխատանքային շաբաթի իրականացումը ավելի նշանակալի և հրատապ է դարձնում ազատ ժամանակի ավելացումը, նրա խելացի և ռացիոնալ օգտագործումը՝ անհատի համակողմանի զարգացման, նրա հոգևոր հարստությունների բազմապատկման նպատակով։

Չնայած այն հանգամանքին, որ հնգօրյակի ներդրումով աշխատաժամանակի տևողությունը շաբաթվա ընթացքում մնում է 41 ժամ, ստեղծվում են լրացուցիչ հնարավորություններ ազատ ժամանակի ավելացման համար։ Բանվորներն ու ծառայողները տարեկան 52 անգամ պակաս են հաճախում ձեռնարկություն և ընդհանուր առմամբ ժամանակը տարվա ընթացքում ավելանում է ևս 8—10 օրով։

Հնգօրյակին անցումը բարդացնում է աշխատանքային ժամանակի ստրուկտուրան և պահանջում աշխատանքի ճիշտ կազմակերպմամբ կրճատել ժամանակի այն ծախսումները, որոնք կապված են աշխատավայր գնալու և վերադառնալու, տնային տնտեսության վարման, գնումների կատարման հետ և այլն։ Մի խոսքով, պահանջում է շեշտակի կերպով բարելավել քաղաքային տրանսպորտի, առևտրի, հասարակական սննդի և բուժսպասարկման գործը, ընդլայնել նախադպրոցական ձեռնարկությունների ցանցը։

Հնգօրյակի անցման հետ կապված լուրջ հարցերից մեկը՝ մարդատար տրանսպորտի կարգավորումն է։ Վերջին տարիներում այդ բնագավառում զգալի առաջխաղացում կա։ Սակայն դա չի բավարարում քաղաքի բուռն աճող բնակչության առօրյա պահանջները, պահանջներ, որոնք մեծանում են թեկուզ հնգօրյա շաբաթի հետևանքով։ Էլ չենք խոսում այն մասին, որ տրանսպորտի վատ սպասարկումն անմիջականորեն իջեցնում է աշխատանքի արտադրողականությունը մեր կյանքի բոլոր մարզերում։

Տրանսպորտի նորմալ աշխատանքի ապահովման գործում առանձնակի անելիքներ ունեն ոչ միայն քաղաքային սովետի գործադիր կոմիտեն, ավտո-



ավտո-տրանսպորտի մինիստրությունը, կուսակցական կազմակերպությունները, այլև քաղաքացիները։ Գաղտնիք չէ, որ բազմաթիվ ուղևորներ երթևեկում են տրանսպորտի տարրական կանոնի ոտնահարմամբ՝ անվճար։ Ուղևորների անտարբերությունն այս արատավոր վարքագծի նկատմամբ ոչ միայն նպաստում է նոր մակաբույծների ավելացման, այլև խոշոր վնասներ է պատճառում քաղաքային տրանսպորտի վիճակի բարելավմանը։ Ուստի, մեր մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունների ու շրջկոմների կարևորագույն հոգսերից մեկը եղել ու մնում է՝ տրանսպորտի կանոնավոր աշխատանքը, որի համար պետք է մոբիլիզացնել հասարակական բոլոր կազմակերպությունների ու քաղաքացիների ջանքերը։

Երևանի քաղաքային սովետը պետք է լուրջ կերպով զբաղվի քաղաքի մագիստրալային և ծանրաբեռնված փողոցների երթևեկային մասը բարեկարգ վիճակում պահելու հարցերով։ Գաղտնիք չէ, որ ձմեռվա ընթացքում փողոցների վատ վիճակի հետևանքով շատ մեքենաներ փչանում են։ Քաղաքային և շրջանային սովետները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն փողոցների մաքրության վրա, հատկապես ձմռան սեզոնին։

Հնգօրյակի պայմաններում ոչ պակաս կարևոր է բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպման հարցը։ Արդեն սահմանված կարգի համաձայն կենցաղային սպասարկման ձեռնարկությունների հանգստյան երկու օրերից մեկը չի համընկնում աշխատավորների ընդհանուր հանգստյան՝ կիրակի օրվան։ Իսկ, բաղնիքները, վարսավիրանոցները, լուսանկարչատները և այլն աշխատում են շաբաթվա բոլոր օրերին և նրանց հանգիստը իրականացվում է սահող գրաֆիկով։ Կենցաղային սպասարկման որոշ տեսակների գծով էլ աշխատանքը կազմակերպված է այն հաշվով, որ նրանք պատվերները ընդունում են և հանգստյան օրերին։ Ավելացել են սպասարկման տեսակները։

Քաղաքի 28 արդյունաբերական ձեռնարկություններում բանվորական և ուսանողական հանրակացարաններում կազմակերպվել են տարբեր տեսակների գծով կենցաղսպասարկման 37 նոր կետեր։

Բայց չի կարելի անտեսել, որ Երևան քաղաքում դեռևս ցածր է սպասարկման կուլտուրան։

Աշխատանքային նոր ռեժիմի պայմաններում, մեր կարծիքով, կենցաղսպասարկման աշխատանքային գրաֆիկները ռացիոնալ չեն։ Աշխատավորը հնարավորություն չունի հանգիստ կերպով օգտվելու կենցաղ սպասարկման ծառայություններից։ Խոսքը աշխատանքի սկսելու և ավարտելու մասին է։ Օրինակ, Լենինգրադում և Մոսկվայում կենցաղսպասարկման ձեռնարկություններում աշխատանքն սկսվում է ժամ 11—12-ին և վերջանում երեկոյան ժամը 8—9-ին։ Ըստ երևույթին մեզ մոտ էլ նույնը պետք է արվի։ Ժամանակն է արմատավորել կենցաղսպասարկման որոշ ձևերի երկհերթ աշխատանքը։ Այս բանն անպայման պետք է արվի մոտ ժամանակներս ընդունման կետերում, պատվերների բաժիններում և այլ տեղերում։

Հարկավոր է նաև վերանայել հանգստի օրերի հարաբերակցությունը։ Երևանի քաղաքային սովետի և կենցաղսպասարկման վարչության խնդիրն է կարճ ժամանակում լուծել այս հարցերը և բարելավել կենցաղսպասարկման վիճակը քաղաքում։ Այս հարցում մեծ անելիքներ ունեն շրջանային սովետները, որոնք կարծես թե մի կողմ են քաշված այս կարևոր գործից։ Շրջանային կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որպեսզի յուրաքանչյուր

շրջանում իրականացվի օրինակելի կենցաղային սպասարկում, որովհետև այդ հարցը շոշափում է աշխատավորների կենսական շահերը։

Մեծ անելիքներ ունեն այս գործում նաև արտադրական ձեռնարկությունները։ Նրանք պետք է ստեղծեն բոլոր պայմանները գործարաններում կենցաղսպասարկման կետեր բացելու համար։ Երևանի լամպերի գործարանը այդ տեսակետից ուսանելի շատ բան է արել։

Քաղաքի կուսակցական և պետական համապատասխան մարմինները պետք է մոտ ժամանակներս կազմեն և հաստատեն կենցաղային սպասարկման զարգացման գիտականորեն հիմնավորված հեռանկարային պլան։

Հնգօրյակի պայմաններում կարևոր նշանակություն ունի նաև առևտրի և հասարակական սննդի ճիշտ կազմակերպումը։ Պետք է նշել, որ քաղաքում առևտրի սովորական ապրանքների և սննդամթերքների վաճառքը որոշակի չափով բարելավվել է։ Սակայն մեծ թերություններ կան բանջարեղենի վաճառքի կազմակերպման գործում։ Նախ, անժամանակ և ոչ լրիվ են օգտագործվում առանձնացրած ֆոնդերը։ Մյուս կողմից եղած ֆոնդերը խանութների միջև բավարար համաչափությամբ չեն բաշխվում, որը առաջ է բերում քաղաքի տարբեր թաղամասերում բնակիչների դժգոհությունը։

Առևտրի աշխատանքների ոչ ճիշտ կազմակերպման հետևանքով առաջին անհրաժեշտության սննդամթերքների վաճառքի աճը ավելի քիչ է, քան ոգելից խմիչքներինը։ Սա լուրջ և անհանգստացնող փաստ է։ Կուսակցական և սովետական կազմակերպություններին պետք է հետաքրքրի ոչ միայն ապրանքաշրջանառության ընդհանուր պլանի կատարումը, այլև աշխատավորների, մանավանդ երիտասարդության առողջությունը, որին կարող է վնասել և վնասում է ոգելից խմիչքների գործածությունը։

Հնգօրյակի պայմաններում ավելի են բարդանում հասարակական սննդի կազմակերպման խնդիրները։ Օր-օրի մեծանում է հասարակական սննդի նկատմամբ պահանջարկը։ Դրան նպաստում է նաև աշխատավորների նյութական բարեկեցության ընդհանուր վերելքը։ Մինչդեռ անցած 9 ամիսները ցույց են տալիս, որ մայրաքաղաքի բնակչության հասարակական սննդի կազմակերպման գործում կան լուրջ թերություններ, որոնք իրավացի դժգոհության տեղիք են տալիս։

Նախ և առաջ հասարակական սննդի օբյեկտների թիվը շատ փոքր է. Երևանում գործում է ընդամենը 62 բանվորական ճաշարան՝ 8340 նստատեղով, 10 ուսանողական ճաշարան՝ 920 նստատեղով և 9 սրճարան-նախաճաշարան՝ 444 նստատեղով։ Դա շատ քիչ է։ Եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ Երևանում հաշվվում է 120 հազար արդյունաբերական աշխատող (ժողտնտեսության բոլոր ճյուղերում) և շուրջ 40 հազարից ավելի ուսանող, ապա նույնիսկ ճաշարանների երկհերթ աշխատանքի դեպքում (հաշվի առնելով արդյունաբերության մեջ հերթափոխությունները) վերը նշված թիվը խիստ անբավարար է։ Անհրաժեշտ է արմատապես ընդլայնել ու բարելավել հասարակական սննդի օբյեկտները, որոնց ինչպես արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների, այնպես և քաղառևտրի վարչության և առևտրի մինիստրության կողմից պատշաճ ուշադրություն չի հատկացվում։

Հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ կարճ ժամանակամիջոցում ընդլայնել և ստեղծել նոր ճաշարաններ այն հաշվով, որպեսզի աշխատողները հնարավորություն ունենան 15—20 րոպեի ընթացքում ստանալու պատշաճ սնունդ։ Այս գործում



անհրաժեշտ է ավելի խելացիորեն օգտագործել պետության կողմից հատկացվող վարկը։

Հանգստյան օրերը բնակչության կողմից ավելի ռացիոնալ օգտագործելու համար, մեծ նշանակություն ունի բանվորական ճաշարաններին կից կիսաֆաբրիկատների, հատկապես խմորեղեն կիսաֆաբրիկատների վաճառքի կազմակերպումը այն հաշվով, որպեսզի տանտիկինը ժամանակ չկորցնի կերակուր պատրաստելու համար խանութներից գնումներ կատարելու վրա։

Քաղաքի կուսակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում պետք է լինի հասարակական սննդի կազմակերպման գործը։ Այժմ կարևոր նշանակություն ունի աշխատավորների ազատ ժամանակի խելացի ու նպատակասլաց կազմակերպումը։

Նախ, հարկավոր է որպեսզի կուսակցական ուսուցման, ժողովների, դասախոսությունների և զրույցների համար պահանջվող ժամանակը ճիշտ կերպով համաձայնեցվի, եթե կարելի է այսպես ասել, և մտցվի նոր աշխատանքային գրաֆիկի մեջ։

Պետք է խիստ ռեգլամենտացիայի ենթարկվի նաև ղեկավար կադրերի՝ սկսած հիմնարկի ղեկավարից, վերջացրած բրիգադիրով, աշխատաժամանակը։ Անտեղի խորհրդակցություններն ու հավաքները պետք է վերացվեն։ Հարկավոր է, որպեսզի մարդը անտեղի ժամանակ չկորցնի։ Այդ տեսակետից ուրախալի է, որ մայրաքաղաքի մի շարք խոշոր ձեռնարկություններում արդեն մշակված են աշխատանքային կոմպլեքսային գրաֆիկներ, որոնք արտացոլում են աշխատանքային գործունեության և հասարակական աշխատանքի ժամանակների փոխհարաբերությունները։ Հարկավոր է ուժեղացնել ձեռնարկությունների, կուլտուրայի տների և ակումբների աշխատանքները, ավելի շատ մարդ ընդգրկել գեղարվեստական ինքնագործունեության մեջ, օգտագործելով այդ աշխատանքների համար երկու հանգստյան օրերը։

Բնականաբար, քաղաքի ոչ բոլոր հիմնարկ-ձեռնարկություններն են կարող իրենց կոլեկտիվների համար ստեղծել հանգստի և կուլտուրական ժամանցի համար անհրաժեշտ հնարավորություններ։ Ուստի, մեր կարծիքով, լավ կլինի պետության կողմից, կենտրոնացված ձևով, արտաքաղաքային պանսիոնատների և հանգստի վայրերի կառուցումը և դրանք ազգաբնակչությանը վարձով շահագործման հանձնելը։

Քաղաքացիների կուլտուրական հանգստի կազմակերպումը մեր առաջնահերթ խնդիրներից մեկն է, հանգիստ, որը նպաստի ոչ միայն ֆիզիկական, այլև հոգևոր ուժերի վերականգնմանը։

Այսպիսով, հնգօրյա շաբաթն իր հետ բերեց նոր հոգսեր, որոնց բավարարումը կուսակցական կազմակերպությունների ու պետական մարմինների ուշադրության կենտրոնում պետք է լինի։ Բանն այն է, որ հանգստյան օրերի ավելացումը հասարակական սպասարկման ոլորտի մեջ է առնում աշխատավորության անհամեմատ մեծ զանգվածների խայտաբղետ պահանջները։ Իսկ սա նշանակում է, որ անհրաժեշտ է ամենօրյա աշխատանքով ուսումնասիրել դրանք և ողջ սպասարկման ապարատը ի սպաս դնել մարդկանց կենսական ձգտումների բավարարմանը։ Այս հանգամանքը թելադրում է մեզ լինել ավելի հնարամիտ, հաշվի առնել եղբայրական ժողովուրդների դրական փորձը և արագ կերպով ներդնել գիտության նվաճումները մարդկանց բազմակողմանի սպասարկման նպատակով։

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱԿԱՐԴԱԿԸ

ՊՈՂՈՍՅԱՆ Ս. Կ.

ՀԿԿ Արարատի շրջկոմի առաջին քարտուղար

Գաղափարական աշխատանքը կուսակցական կազմակերպությունների գործունեության ամենակարևոր և դժվարին ոլորտն է։ Կուսակցությունը, նրա լենինյան Կենտկոմը պատմության բոլոր էտապներում, ելնելով կյանքի պահանջներից, լուրջ ուշադրություն են հատկացրել գաղափարական աշխատանքին, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, ժամանակին նշել այն գլխավոր պրոբլեմները, որոնց լուծմանը պետք է ուղղել գաղափարական ողջ աշխատանքը։

Գաղափարական աշխատանքի բնագավառում,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXII համագումարում,— կուսակցության բազմամյա ջանքերի մեծագույն արդյունքը սովետական նոր մարդու դաստիարակումն է։ Շարունակելով աշխարհում առաջին բանվորա-գյուղացիական պետության ստեղծած մարտիկների սերնդի հեղափոխական տրադիցիաները, սովետական մարդը կառուցեց սոցիալիզմ, տոկաց և ֆաշիզմին հաղթեց մահացու գոտեմարտում, պաշտպանեց մեր հեղափոխության մեծ նվաճումները և այժմ պատմության մեջ առաջինն է կառուցում կոմունիզմ։

Բարձր գնահատելով գաղափարական աշխատանքը, ՍՄԿԿ XXII համագումարը կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը համարեց նրա հետագա բարելավումը։ Առաջնորդվելով համագումարի ցուցումներով, ՀԿԿ Արարատի շրջկոմը և սկզբնական կուսակցական կազմակերպությունները վերջին երկու տարում զգալիորեն բարելավել են գաղափարական աշխատանքը։ Ամենից առաջ պետք է նշել, որ նախորդ տարիների համեմատությամբ, զգալի չափով ընդլայնվել է կոմունիստների քաղաքական ուսուցման ցանցը։ 1967—68 ուսումնական տարում շրջանում գործել են տարրական 3 քաղդպրոց, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների 66 դպրոց (49-ը ուսուցման առաջին, 5-ը՝ երկրորդ և 12-ը՝ երրորդ տարվա), բարձր տիպի 15 տեսական սեմինար։ Բացի դրանցից, շրջկոմին կից գործել են շրջկենտրոնի կուսակցական և սովետական ակտիվի ու կուսուսուցման ցանցի պրոպագանդիստների մշտական գործող սեմինարներ։

Այս ուսումնական տարին անցավ ավելի կազմակերպված ու բեղմնավոր։



Շրջանում սահմանվել էին քաղուսուցման միասնական օրեր՝ ըստ ուսուցման առանձին օղակների։ Դա հնարավորություն տվեց շրջկոմին ապարատի աշխատողների և կուսակցական ակտիվի միջոցով սիստեմատիկ վերահսկողություն սահմանել քաղդպրոցների և սեմինարների նկատմամբ, կենդանի օգնություն ցույց տալ կուսակցական կազմակերպություններին և պրոպագանդիստներին՝ կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումն ավելի հաջող կազմակերպելու համար։

Ուսումնական տարվա ընթացքում շրջկոմը և կուսկազմակերպությունները բազմիցս անդրադարձել են կուսուսուցման ցանցի առանձին դպրոցների սեմինարների աշխատանքին, օգնել բացահայտված թերությունների վերացմանը, ունկնդիրների գիտակցական կարգապահության բարձրացմանը։ Այս տարվա հունվարին, օրինակ, շրջկոմի բյուրոն հանգամանորեն քննության առավ մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն ուսումնասիրողների հետ տարվող աշխատանքի վիճակը։ Պարզվեց, որ ինքնուրույն սովորողների հիմնական մասը գրքի վրա աշխատում է սիստեմատիկաբար, հետևում պարբերական մամուլին, կարդում ուսումնասիրվող թեմային վերաբերող ամսագրերում և թերթերում տպագրված տեսական հոդվածները, լսում համապատասխան դասախոսություններ, կարողանում է հասարակական երևույթներն ընկալել ճիշտ և, վերջապես, իրեն լավ է դրսևորում պրակտիկ աշխատանքում։

Բայց, ցավոք, ինքնակրթությամբ զբաղվողների մեջ կան առանձին մարդիկ, որոնք հետևողականությամբ չեն աշխատում իրենց գաղափարական մտահորիզոնի ընդլայնման ուղղությամբ։ Նրանք ուսուցման ինքնուրույն ձևը փաստորեն դարձրել են յուրովի շիրմա՝ իրենց ծուլությունը և տեսության նկատմամբ անհոգությունը քողարկելու համար։ Շրջկոմը, իհարկե, դատապարտեց այդ երևույթը և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնին, կուսկազմակերպություններին պարտավորեցրեց՝ առաջիկայում լուրջ ուշադրություն նվիրել կուսուսուցման ցանցի աշխատանքի բարելավմանը, պատշաճ վերահսկողություն իրականացնել կոմունիստների ինքնակրթության վրա։ Խնդիրն այն է, որ կուսակցական կազմակերպությունները կատարելագործեն ինքնակրթության նկատմամբ վերահսկողության ձևերն ու մեթոդները, պատշաճ օգնություն կազմակերպեն ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստներին, զարգացնեն նրանց հետաքրքրությունը տեսական հարցերի նկատմամբ։

Վերջերս որոշակիորեն բարելավվել է պրոպագանդիստների ընտրության, նրանց ուսուցման և հրահանգավորման գործը։ Ուսումնական տարվա արդյունքների ստուգումը ցույց տվեց, որ ունկնդիրները, հիրավի, բարձրացրել են իրենց գաղափարական մակարդակը։ Այսպես, օրինակ, ուսումնական ծրագիրն ավարտել և անցած թեմաները յուրացրել են Ավշարի, Այգևանի և Թայթանի կոլտնտեսային, Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի, Դվին սովխոզի, Մ. Վեդու, Շիրազլուի, Արարատի գյուղական (տերիտորիալ) և այլ գյուղերի դպրոցական կուսկազմակերպություններին կից գործող քաղդպրոցների ունկնդիրները։ Այդ քաղդպրոցների պարապմունքներն անցել են կազմակերպված և բարձր մակարդակով, ունկնդիրները տեսական հարցերն ուսումնասիրել են կյանքի, իրենց կոլեկտիվի առաջ ծառացած պրակտիկ խնդիրների կատարման հետ սերտորեն կապված։ Դրա շնորհիվ զգալիորեն բարձրացել է նրանց աշխատանքային և հասարակական ակտիվությունը։

Շրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրում լավագույն պրոպագանդիստների փորձի մասսայականացմանը, նրանց խրախուսմանը։ Պրոպագանդիստներից Գուրգեն Նազարյանը, Պետրոս Գրիգորյանը և Ժորա Սաղաթելյանը բազմամյա բեղմնավոր աշխատանքի համար վերջերս պարգևատրվեցին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով։

Կուսակցական կազմակերպություններին մտահոգում է նաև կոմերիտականների մարքս-լենինյան ուսուցումը։ Կոմերիտական ուսուցման ցանցի տարբեր դպրոցներում և խմբակներում ընդգրկված են մոտ 1500 կոմերիտական և 540 արտամիությենական երիտասարդ։ Կոմերիտական քաղուսուցման ցանցի գրեթե բոլոր խմբերի ղեկավարները կոմունիստներ են, որոնք ունեն անհրաժեշտ տեսական պատրաստականություն, պրոպագանդիստական աշխատանքի փորձ, երիտասարդության դաստիարակությամբ զբաղվելու հմտություն։

Այս տարվա ապրիլին կուսշրջկոմը քննարկեց երիտասարդության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքի վիճակը Շիդլու և Շիրազլու գյուղերում։ Պարզվեց, որ այդ գյուղերի սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես օգնում են կոմերիտական կազմակերպություններին, հետաքրքրվում երիտասարդության դաստիարակության հարցերով։ Շիդլուի 160 երիտասարդներից 72-ը սովորում են ցերեկային և 18-ը՝ երեկոյան հանրակրթական դպրոցներում։ Գյուղական երիտասարդության ճնշող մեծամասնությունն ընդգրկված է հանրային արտադրության մեջ, ակտիվ մասնակցում է երգի-պարի և թատերական ինքնագործ խմբակների գործունեությանը, զբաղվում սպորտով։ Երիտասարդության շրջանում կուսակցական կազմակերպությունների կատարած դաստիարակչական աշխատանքի շնորհիվ գրեթե լրիվին վերացել են հակահասարակական երևույթները և այլն։

Մարքսիզմ-լենինիզմի տեսության պրոպագանդումը, որը գաղափարական աշխատանքի ողն ու ծուծն է, չի սահմանափակվում միայն կուսակցական ուսուցման ցանցի շրջանակներով։ Այն առավել լայն չափերով իրականացվում է զեկուցումների և զրույցների, պարբերական մամուլի, դիտողական ագիտացիայի և այլ միջոցներով։ Բավական է նշել, որ բացի քաղդըպրոցներից, շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում, հիմնարկներում և ձեռնարկություններում գործում են 50 ագիտկոլեկտիվներ, որոնք միավորում են ավելի քան 600 մարդ։ Դրանք, և՛ դասախոսական խմբերը շնորհակալ աշխատանք են կատարում։ Միայն շրջկոմի դասախոսական խմբի և ՀԿԿ Կենտկոմից գործուղված դասախոսների ուժերով 1967 թ. շրջանում կարդացվել է 499 և 1968 թ. առաջին հինգ ամսում՝ 205 դասախոսություն։ Առաջին քայլերն են արել 4—6 հոգուց բաղկացած քաղինֆորմատորների անդրանիկ խմբերը, որոնք առայժմ ստեղծվել են երեք արտադրական օբյեկտներում։ Այդ խմբերն իրենց ձեռնարկության կոլեկտիվներին կանոնավոր ինֆորմացիա են տալիս միջազգային դրության կարևորագույն իրադարձությունների, գիտության և տեխնիկայի բնագավառների աչքի ընկնող նորությունների, սոցիալիստական տնտեսվարության, աշխատանքի նոր, պրոգրեսիվ ձևերի ու մեթոդների մասին։

Շրջանում գործում են 3 հազար ռադիոկետ ու 10 հազար հեռուստացույց։ Հազարավոր մարդիկ հնարավորություն ունեն ռադիոյի ու կապույտ էկրանի միջոցով ոչ միայն սիստեմատիկաբար լսելու և դիտելու մայրաքա-



ղաքին, այլև մշտապես հաղորդակից լինելու հանրապետության ու ամբողջ երկրի կուլտուրական կյանքին։

Գաղափարական աշխատանքն առանձնապես ուժեղ թափ ստացավ Հոկտեմբերի 50-ամյակին նախապատրաստվելիս, երբ շրջանի բոլոր կուլտուր-լուսավորական հիմնարկները (10 կուլտուրայի տուն, 19 ակումբ, 40 գրադարան և այլն) ներգրավվեցին այդ գործին։ Կուլտուրայի տներում և ակումբներում ամենուրեք երևան եկան գեղեցիկ լուսանկարներով ու դիագրամներով ձևավորված ստենդներ ու ցուցափեղկեր։ Մեծ հոբելյանի տոնակատարության կապակցությամբ շրջկենտրոնում տեղադրվեցին 4 մեծ ստենդ՝ «Նվաճած բնագծերը և հնգամյակի խնդիրները» ընդհանուր խորագրով։ Կիրովի անվան սովխոզի բանավանում, Արարատում, Ավշար գյուղում և մի շարք այլ բնակավայրերում կանգնեցվեցին Հայրենական պատերազմում զոհված ռազմիկների հուշարձաններ։

Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքը սերտորեն զուգակցում են տնտեսական պլանների կատարման, նոր մարդու ձևավորման առավել հրատապ հարցերի լուծման հետ։ Հատուկ հոգատարություն է ցուցաբերվում, օրինակ, երիտասարդության գաղափարական դաստիարակության նկատմամբ։ Մենք ջանում ենք յուրաքանչյուր պատանու և աղջկա մոտ հարուցել հայրենանվեր աշխատասիրություն, սովետական քաղաքացու արժանապատվության խոր գիտակցում և հայրենիքի հանդեպ որդիական պարտքն անձնվիրաբար կատարելու պատրաստակամություն։ Այդ նպատակով ոչ միայն ռազմա-հայրենասիրական թեմաների շուրջ կազմակերպվում են դասախոսություններ և զեկուցումներ, այլև երիտասարդության հանդիպումներ հեղափոխության, աշխատանքի և պատերազմի վետերանների հետ։

Հոբելյանական տարում անցկացրած նման կարևոր միջոցառումներից էին, օրինակ, շրջանի երիտասարդության ջերմ հանդիպումները Հայրենական պատերազմի տարիներին Կրասնոդոնում գործող «Երիտասարդ գվարդիա» ընդհատակյա կազմակերպության հերոսներից մեկի՝ Ժորա Հարությունյանցի հետ։ Նա հանդես եկավ Արարատի ցեմենտագործների և դպրոցականների, Կիրովի անվան սովխոզի ու Ավշարի այգեգործների և շրջկենտրոնի աշխատավորների բազմամարդ ժողովներում։ Մարդիկ մտովի վերապրեցին Հայրենականի ահեղ օրերը։ Պետք էր տեսնել, թե ինչպես հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ, տարեց կանայք, տղամարդիկ, սիրով և լարված ունկնդրում էին հրաշքով կենդանի մնացած ժողովրդի սիրված զավակին՝ երիտգվարդիականին, որի գեղարվեստական կերպարը նրանք տարիներ շարունակ պահել էին իրենց սրտերում։ Ժորա Հարությունյանցի հետ ունեցած ամեն մի հանդիպման վերջում ընդունվել է փոքրիկ «բանաձև»։ Դա իրականում ոչ թե բանաձև էր, այլ շրջանի ողջ երիտասարդության անունից տրված հանդիսավոր երդում այն մասին, որ իրենք էլ «Երիտասարդ գվարդիա» դյուցազնավեպի հերոսների պես անձնազոհաբար կմարտնչեն հայրենիքի ազատության համար։

Երիտասարդությանը ռազմա-հայրենասիրական և ժողովուրդների լենինյան բարեկամության ոգով դաստիարակելու միջոցառումներից էր հերոս սահմանապահ Ալեքսանդր Կորյակովի աճյունի տեղափոխումը Արարատ քաղաք։ Այդ փաստը ևս ինքնին հուզիչ է, սովետական անձնազոհ հայրենասի-

րության երախտագիտությամբ հատուցելու իսկական սիմվոլացում: Տարիներ առաջ ռուս զինվորը սովետական սահմանի անձեռնմխելիության համար մենամարտում զոհվել է հերոսի մահով, զոհվել է իր ծննդավայրից հազարավոր կիլոմետր հեռու, հայկական հինավուրց հողում և թաղվել դեպքի վայրում: Սակավամարդ է այն վայրը, որտեղ հանգչում էր Ալեքսանդր Կորյակովի աճյունը: Հերոսի գերեզմանը մատչելի էր միայն փոքրաթիվ զինվորականների համար: Իսկ այժմ հերոս սահմանապահի գերեզմանը մարդաշատ քաղաքի զբոսայգում է, արարատցիների ուշադրության կենտրոնում և ամեն առավոտ սևաչյա մանուկները թարմ ծաղկեփնջեր են դնում նրա տապանաքարին:

Գաղափարական աշխատանքի մշտական ու ակտուալ հարցերից է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը: Շրջանում բնակվում և համատեղ աշխատում են հայեր, ռուսներ, ուկրաինացիներ, ադրբեջանցիներ, քրդեր և այլ ազգությունների ներկայացուցիչներ: Հաշվի առնելով այդ, շրջկոմը և շատ կուսկազմակերպություններ պարբերաբար քննարկում են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հետ կապված հարցեր, ձգտում ավելի ամրապնդել աշխատավորների եղբայրական բարեկամությունը:

Կուսկազմակերպությունների նախաձեռնությամբ ու օգնությամբ Փ. Վեդու կոլտնտեսությունը սոցմրցման պայմանագիր է կնքել Կրասնոդարի երկրամասի Վիսելկովսկու շրջանի «Դրուժբա» կոլտնտեսության հետ, իսկ խալիսացիները մրցման մեջ են մտել նույն շրջանի «Կուբան» կոլտնտեսության հետ: Երկու տնտեսություններում էլ գործուն պայքար է ծավալված պարտավորությունների կատարման համար: Վերջին ժամանակներս ավելի են ուժեղացել Խալիսայի և Նախիջևանի ԱՍՍՀ Իլյիչի շրջանի Դեմիրչի գյուղի կոլտնտեսականների միջև գոյություն ունեցող փոխադարձ օգնության տրադիցիոն կապերը:

Կուսակցական կազմակերպությունները շրջանի աշխատավորական կոլեկտիվներում պարբերաբար անց են կացնում բարեկամության երեկոներ, կազմակերպում հատուկ դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ՝ ուղղված ժողովուրդների բարեկեցության ամրապնդմանը:

Շրջանի բազմազգ բնակչության հոգևոր շփման ու մերձեցման ուղղությամբ նշանակալից դեր խաղացին Մ. Գորկու ծննդյան 100-ամյակի, Եղիշե Չարենցի ծննդյան 70, ադրբեջանական դեմոկրատ-գրող Ջալիլ Մամեդ Կուլիզադեի ծննդյան 100-ամյակի և կուլտուրայի ու արվեստի մյուս ականավոր գործիչների հոբելյանների անցկացումը.

Բարեկամության թեման եղել և մնում է դասախոսական պրոպագանդայի կենտրոնական հարցերից մեկը, որի առթիվ բազմաթիվ զեկուցումներ են կարդացվել շրջանի աշխատավորների համար:

Շրջանային «Արարատ» թերթը եղբայրական հանրապետություններում խորագրի տակ էջեր, առանձին հոդվածներ և ինֆորմացիաներ է տպագրում միութենական հանրապետությունների, նրանց անվանի մարդկանց մասին: Այդ բնույթի նյութերից են Սովետական Ադրբեջանի, Վրաստանի, Ուկրաինայի, Տաջիկստանի և մյուս հանրապետությունների հոբելյանական տարեթվերին նվիրված նպատակային էջերը, Հարևան Իլյիչի շրջանի Մեհթի Հուսեինզադեի անվան բամբակագործական կոլտնտեսության օղակավարուհի, Նախիջևանի ԱՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Զեյնաբ Մամեդովայի, Ղազախական ՍՍՀ ժողովրդական ակին Քենեն Ազերբաևի մասին տպագրված ինֆորմացիաները, լուսանկարները և շատ այլ նյութեր:



Աշխատավորների ինտերնացիոնալ կապերի ամրապնդման ձևերից է սոցիալիստական մրցությունը, որը տարեցտարի ընդլայնվում, ավելի մասսայական բնույթ է ստանում: Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի կոլեկտիվը տրադիցիոն մրցման մեջ է եղբայրական Վրաստանի և Ադրբեջանի ցեմենտի արդյունաբերության համանման ձեռնարկությունների կոլեկտիվների հետ: Տասնյակ տարիներ է, ինչ Արարատի շրջանը մրցում է Նախիջևանի ԱՍՍՀ Իլյիչի, Ուկրաինական ՍՍՀ Ղրիմի մարզի Ազովի, Խերսոնի մարզի Վելիկոալեքսանդրովսկի և Նովվորոնցովսկի շրջանների հետ: Այդ եղբայրական մրցությունում շահել ու շահում են նրա բոլոր մասնակիցները: Մրցակիցներից շատերը նամակագրական կապեր են պահպանում իրար հետ: Հետևելով իրենց հայրերի օրինակին, նամակագրական կապեր են հաստատել նաև մրցակից շրջանների պիոներ-դպրոցականները:

Հոբելյանական տարում մեր կոլտնտեսությունները և սովխոզները սոցիալիստական մրցության մեջ մտան Կրասնոդարի երկրամասի Վիսելկովսկի շրջանի կոլտնտեսությունների և սովխոզների հետ: Արարատցիները եղան Կուբանյան հողում, այնուհետև կուբանցիները փոխադարձ այցով եղան մեզ մոտ: Սոցմրցման պայմանագրեր կնքվեցին ոչ միայն երկու շրջանների, այլև բոլոր տնտեսությունների և սովխոզների միջև, ստանձնեցին բարձր պարտավորություններ: Այժմ շրջանային թերթը լայն տեղ է հատկացնում ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի լուսաբանմանը:

Շուտով մեր շրջանի պատվիրակությունը կմեկնի Վիսելկովսկի՝ ծանոթանալու մրցակիցների աշխատանքին:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունն իրականացվում է ոչ միայն քաղաքական պրոպագանդայի և ագիտացիայի նպատակասլաց կազմակերպման, բարեկամության երեկոների հրավիրման և սոցիալիստական մրցության լայն ծավալման միջոցով: Այստեղ խոսքը վերաբերում է մեր կուսակցության քաղաքականության կենսական հարցերից մեկի պրակտիկ կենսագործմանը:

Վերջին տարիներին ավելի նպատակասլաց դարձնելով գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, բարձրացնելով կուսակցական-կազմակերպական աշխատանքի մակարդակը, շրջանային կուսկազմակերպությունը կարողացավ բանվորների, կոլտնտեսականների և գյուղատնտեսության մասնագետների ջանքերն ուղղել ընթացիկ հնգամյակի կատարմանը և հասնել նորանոր հաջողությունների: 1966 թ. շրջանը խաղողի արտադրությունը հասցրեց 21,5 հազար տոննայի: Վերջին երեք տարում շրջանը և նրա առանձին տնտեսություններ նվաճեցին տասից ավելի միութենական և հանրապետական փոխանցիկ դրոշներ և հուշադրոշներ, ավելի քան 100 կոլտնտեսականներ և բանվոր-ծառայողներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով:

Այսուհանդերձ չենք կարող մոռացության մատնել այն, որ շրջանի գյուղատնտեսության գրեթե բոլոր ճյուղերում կան չօգտագործված շատ ռեզերվներ, դեռևս ցածր է արտադրության կուլտուրան: Առաջավոր տնտեսությունների և ֆերմաների կողքին մենք տակավին ունենք շատ ետ մնացողներ:

Մեր կոլտնտեսություններում և սովխոզներում այժմ համաժողովրդական լայն պայքար է ծավալված գոյություն ունեցող թերությունների վե-

րացման և հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքների կատարման համար։ Արարատցիները պարտավորվել են 1968 թ., նախորդ տարվա համեմատությամբ, գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքն ավելացնել 12 տոկոսով։ Շրջանի աշխատավորությունը բարձր պարտավորություններ է ստանձնել նաև արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի ու կապի, աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման բնագավառներում։

Գաղափարական աշխատանքի անմիջական արդյունքը—կադրերի աճը, նրանց հասունացումն է։ Շրջանի կուսկազմակերպությունն աճեցրել է սովետական հայրենիքին նվիրված գործունյա կադրերի մի ամբողջ սերունդ, որը մեծ եռանդով առաջ է տանում տնտեսական և կուլտուրական շինարարության գործը։



Ինչպես կյանքի ամեն մի բնագավառ, գաղափարական աշխատանքի ճակատն էլ ունի իր հասունացած հարցերը, չլուծված պրոբլեմները։

Ամենից առաջ պետք է բարելավել պրոպագանդիստների ուսուցման գործը։ Այն, ինչ այսօր պրոպագանդիստը հաղորդում է իր ունկնդիրներին, շատ դեպքում նրանց հայտնի ճշմարտություններ են։ Չէ որ նրանք գրագետ մարդիկ են, կարդում են գրքեր, հետևում պարբերական մամուլին։ Ուստի ժամանակն է կազմակերպել կենտրոնացված ձևով պրոպագանդիստներին երկրի ներքին և արտաքին դրության վերաբերյալ նյութերով և տեղական փաստերով ապահովելու գործը։

Գաղափարական աշխատանքը մեծապես կշահեր նաև այն բանից, եթե պետական և հասարակական առանձին կազմակերպություններում եղած որոշ թերությունները, կյանքի բացասական երևույթները, ուսումնասիրվեն և դրանց տրվեն գիտական բացատրություններ։ Դա, անշուշտ, կօգներ պրոպագանդիստական աշխատանքը տանել գիտական հիմունքներով։

Գործի շահերը պահանջում են ավելի ուժեղացնել կուլտուր-լուսավորական աշխատանքը, այն դարձնել պրոպագանդիստական աշխատանքի բաղկացուցիչ մասը։ Դա նշանակում է, որ գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկները միաժամանակ պետք է հանդիսանան մարքսիզմ-լենինիզմի տեսության և գաղափարների պրոպագանդման իսկական օջախներ։ Մինչդեռ գյուղական նոր ակումբների և կուլտուրայի պալատների նախագծերը կազմելիս մասնագետները հաշվի չեն առնում գաղափարական աշխատանքի պահանջները, միակողմանիորեն բավարարվում են միայն այդ օբյեկտների արտաքին ճարտարապետական լավ ձևավորմամբ։

Գաղափարական-քաղաքական աշխատանքի աշխուժացումը, որ դրսևորվում է մասսաների հասարակական և արտադրական ակտիվության ու տնտեսական պլանների հաջող կատարման մեջ, չպետք է ինքնահանգստացման տրամադրություններ առաջացնի կոմունիստների շարքերում։ Ընդհակառակը, կյանքը հրամայաբար պահանջում է ավելի ուժեղացնել գաղափարական աշխատանքը, ընդլայնել նրա ոլորտը։ Պրոպագանդելով ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումները, մենք պետք է ուժեղացնենք ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը, այն դարձնենք ավելի հարձակողական և ներգործուն։

# ՆԱԽԱՁԵՌՆՈՒՄ ԵՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

## ՊԱՊՅԱՆ Պ. Ա.

Լինում են դեպքեր, երբ կոլեկտիվի ժողովում սկսված և կարծես թե ավարտված վեճը նորից վերսկսվում է ու դառնում ընկերական զրույցների առարկա։ Ճիշտ այդպես ստացվեց Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի 1—11ա արտադրամասի կուսկազմակերպության վերջին հաշվետու ընտրական ժողովից հետո։ Խոսելով ժողովի արդյունքների մասին, Հուսիկ Մարգարյանն ասաց, որ լավ կլիներ, եթե արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար ընտրվեր ոչ թե շարքային կոմունիստ, փականագործ Կոնդրատ Ղարիբյանը, այլ պատասխանատու աշխատող։

Դրան հավանություն տվին Արշակ Միրզոյանը և Աղասի Ղահրամանյանը, թեպետ նրանք, ինչպես և Հ. Մարգարյանը որպես կավ կոմունիստի, բանիմաց մարդու, սիրում ու հարգում էին Կոնդրատ Ղարիբյանին։

— Շարքային բանվորի համար դժվար կլինի ղեկավարել արտադրամասային կուսակցական կազմակերպությունը։ Չէ՞ որ նա պետք է գործ ունենա բաժանմունքների, հերթափոխությունների ղեկավարների հետ, նրանցից պահանջի կատարելու այս կամ այն առաջադրանքը,— այս էր նրանց գլխավոր փաստարկը։

Միանգամայն այլ կերպ էր դատում կուսխմբի կազմակերպիչ Վաչագան Հովհաննիսյանը։ Նա գտնում էր, որ Կոնդրատ Ղարիբյանը քարտուղարի համար ամենալավ թեկնածուն է։

— Հապա մենք, կոմունիստներս որտե՞ղ ենք,— իր տեսակետն արտահայտեց նա,— կօգնենք, որպեսզի նորընտիր քարտուղարը պահանջկոտ լինի, կջանանք, որ կոլեկտիվի կյանքի հրատապ հարցերը ժամանակին դնի կուսակցական ժողովների ու բյուրոյի նիստերի քննարկմանը, որպեսզի ընդունվեն կոնկրետ ու նպատակասլաց որոշումներ...

— Որոշումներ։ Դու էլ բան ասացիր... Որոշումներ շատ ենք ընդունել, բայց գործը տեղից չի շարժվել...

Պնդելով իր տեսակետը, Հ. Մարգարյանը կուսակցական խմբի կազմակերպչին հիշեցրեց, որ, օրինակ քիմիկատների պատրաստման իրենց տեղամասի ծանր աշխատանքների մեքենայացման մասին բազմաթիվ որոշումներ են ընդունվել, բայց մնացել են թղթի վրա։

— Լավ է, որ բերիք այդ օրինակը,— ասաց Հովհաննիսյանը,— չէ՞ որ այդ ժամանակաշրջանում մեր արտադրամասի կուսկազմակերպության

քարտուղարները ոչ թե շարքային բանվորներ էին, այլ ինժեներներ, բաժանմունքի պետեր։

Քիմիկատների պատրաստման տեղամասում իրոք կան մեծ դժվարություններ։ Դրանք հաղթահարելու նպատակով մի ժամանակ նույնիսկ հայտարարվել էր լավագույն նորարարական առաջարկությունների մրցանակաբաշխություն, որը, ցավոք, նույնպես մնաց անհետևանք։

Օրվա վերջն է։ Կուսխմբի կազմակերպիչը արտադրամասի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարի մոտ է։ Նրանք երկուսով ուսումնասիրում են հաշվետու-ընտրական ժողովի արձանագրությունը, նշում կոմունիստների քննադատական դիտողությունները, առաջարկությունները։ Դրանք շատ են և շոշափում են տեխնոլոգիական ռեժիմի պահպանման ու արտադրանքի որակի բարձրացման, մեքենաների ու մեխանիզմների արագ նորոգման ու դրանց անխափան աշխատանքի ապահովման, հումքի, էլեկտրաէներգիայի, օժանդակ նյութերի խնայողության, աշխատողների կենցաղի ու կուլտուրական հանգստի կազմակերպման և այլ հրատապ հարցեր։

Վ. Հովհաննիսյանն այդ բոլորին ավելացրեց նաև քիմիկատների պատրաստման տեղամասի աշխատանքների մեքենայացման հարցը, որի մասին կոմունիստներն հիշեցրել էին։ Բայց դա արդեն այնպիսի հարց է, որը դուրս է գալիս արտադրամասի ադմինիստրացիայի և կուսկազմակերպության իրավասության շրջանակներից։ Հնարավոր չէ լուծել սեփական ուժերով։

Համակոմբինատային նման հարցեր են բարձրացրել նաև մյուս արտադրամասերում աշխատող կոմունիստները։

Բայց ինչի՞ց սկսել, ո՞ր հարցին տալ առաջնությունը, երբ բոլորն էլ կարևոր են, իհարկե, առաջին պլանի վրա է դնում քիմիկատների պատրաստման տեղամասում աշխատանքների մեքենայացման հարցը։ Սակայն կուսբյուրոյի քարտուղար Կ. Ղարիբյանի համար դժվար չէր նկատել, որ կուսակցականների առաջ քաշած գրեթե բոլոր հարցերը հիմնականում շոշափում են մի ընդհանուր պրոբլեմ՝ արտադրության կուլտուրայի բարձրացումը և անվտանգության տեխնիկայի պահպանումը։ Հենց այս հարցն էլ դառնում է արտադրամասի կուսկազմակերպության հերթական ժողովի օրակարգը։

Պետք է ասել, որ կուսբյուրոն խնամքով նախապատրաստեց այդ ժողովը։ Հարցի ուսումնասիրմանն ու նախապատրաստմանը ներգրավվեցին մեծ թվով կոմունիստներ և կոմբինատի վարչության անվտանգության տեխնիկայի բաժնի մասնագետներ։

Ժողովի նախօրեին՝ որոշման նախագիծը կազմելու կապակցությամբ, առաջադրված ընկերները հանգամանորեն զրուցեցին ու խորհրդակցեցին նաև արտադրամասի ղեկավարների ու պատասխանատու աշխատողների հետ։ Շնորհիվ դրան, առաջ քաշվեցին նոր հարցեր, որոնց մի մասը լուծվեց անմիջապես կոմունիստների նախաձեռնությամբ՝ արտադրամասի մարդկանց ուժերով։

Ահա մի քանի օրինակներ։ Արտադրամասի շենքի տանիքը տեղ-տեղ նորոգումներ էր պահանջում։ Հերթափոխության պետ, կուսանդամ Արտավազդ Հովհաննիսյանը հանձն առավ և տանիքը նորոգեց իր իսկ ղեկավարած կոլեկտիվի ուժերով։ Արտադրամասի առանձին տեղամասերում թույլ էր գիշերային լուսավորությունը։ Այն բարելավեցին կոմունիստներ Անդրանիկ Գալստյանն ու Ավետիք Սարգսյանը՝ էլեկտրամոնտյորների օգնությամբ։ Վերջապես փականագործների մի բրիգադա՝ մեխանիկ Բաբկեն Բաղալյանի ղեկավարու-



թյամբ, ձեռնամուխ եղավ արտադրամասի օդափոխման սարքավորումների նորոգմանը և պատվով կատարեց այն։

Այսպիսով, ստացվեց այնպես, որ արտադրամասի պետի տեղակալ Մարատ Նազարյանը ժողովի նախապատրաստման օրերին կոմունիստներին հաղորդեց արդեն կատարված աշխատանքների մասին։ Իսկ երբ խոսքը հասավ քիմիկատների պատրաստման տեղամասում աշխատատար պրոցեսների մեքենայացմանը, այդ առթիվ ժողովին ինֆորմացիա տվեց կառուցկի արտադրության պետ Ջեմլյակ Առաքելյանը։ Նա ասաց, որ կոմբինատի դիրեկցիայի կարգադրությամբ կոնստրուկտորական բաժինը արդեն ձեռնամուխ է եղել քիմիկատների արտադրության բաժանմունքի նոր շենքի նախագծային փաստաթղթերի պատրաստմանը։ Կոմունիստ Հ. Մարգարյանի առաջարկությամբ ժողովը որոշեց կուսակցական խիստ վերահսկողություն սահմանել այդ աշխատանքների նկատմամբ, ապահովելով դրանց ժամանակին կատարումը։

— Այսպիսի մի որոշում էլ պետք է ընդունել արտադրամասում հզոր օդափոխիչներ մոնտաժելու վերաբերյալ,— իր ելույթում ասաց կուսխմբի կազմակերպիչ Ռ. Հակոբյանը։ Նա առաջարկություն մտցրեց, որ առաջիկայում օդատար գծերը պատրաստվեն ոչ թե պողպատյա, այլ ալյումինի թիթեղից, որի դիմացկունությունը, պողպատի համեմատությամբ, երկու-երեք անգամ բարձր է։

Ուսումնասիրվել էր նաև օդափոխման համակարգը հզորացնելու հնարավորությունները։ Անհրաժեշտ էր նոր մեքենաներ և 13 հազար ռուբլու լրացուցիչ ծախսեր։ Բանն այն էր, որ այս միջոցառումները ժամանակին անտեսվել էին ադմինիստրացիայի կողմից։ Ձեռնարկության դիրեկցիան միշտ կարող էր այդ գումարը բաց թողնել, մանավանդ, երբ խոսքը վերաբերում է բանվորների աշխատանքի պայմանների բարելավմանը, մարդկանց առողջության պահպանմանը։

Սակայն հարցը միայն ֆինանսավորումը չէ։ Ավելի դժվար է աշխատանքի կազմակերպումը, մասնագիտացված կապալառու կազմակերպության որոնելն ու գտնելը։ Չէ որ «Հայքիմշին» տրեստը օդափոխիչների և օդատար գծերի մոնտաժման գործը հանձն չի առնում. գործը չի կարող կատարել նաև կոմբինատի մեխանիկական արտադրամասը, որի աշխատանքների գրաֆիկները սահմանված ու հաստատված են տարեսկզբից։ Կշռադատելով այն ամենը, 1—11 ա արտադրամասի կոմունիստները, վերջապես, գտան ելք. որոշեցին կոմբինատի ղեկավարությանը երաշխավորություն հարուցել օդատար գծերի մոնտաժումը ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրության շիննորոգման տրեստի բրիգադներից մեկին հանձնելու համար։ Այսպիսով, գտնվեց առաջին հայացքից դժվար թվացող հարցի լուծման ճիշտ ուղին և ամեն ինչ իր հունի մեջ մտավ...

Փորձը ցույց է տալիս, որ ընդունված որոշումների կենսագործումը բարձրացնում է կոմունիստների ակտիվությունը, ամրապնդում նրանց հավատը սեփական ուժերի և հարազատ կազմակերպության նկատմամբ, իսկ կուսկազմակերպությունն ամբողջությամբ վերցրած՝ դառնում է ավելի մարտունակ և ազդեցիկ ուժ։

Վերջին տարիներին, օրինակ, 1—11ա արտադրամասի կուսկազմակերպությունը շատ բան է արել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործման, երիտասարդ բանվորների քաղաքական ու հանրակրթական ուսուցման կազմակերպման ուղղությամբ։ Միայն անցած մեկ տարում արտադրամասի

երիտասարդ բանվորներից կոմերիտականներ Ռ. Գասպարյանը, Մ. Ավետիսյանը, Ա. Փանոսյանը և ուրիշներ, առանց արտադրությունից կտրվելու, ավարտել են բարձրագույն և միջին մասնագիտական դպրոցներ և առաջ քաշվել ինժեներական պատասխանատու աշխատանքի։ Բազմաթիվ երիտասարդ բանվորներ քաղաքականապես աճել և ընդունվել են ՍՄԿԿ շարքերը։

Սոցիալիստական մրցության նկատմամբ կուսակցական ղեկավարության ուժեղացումը բարձրացնում է արտադրամասի ցուցանիշները։ Բավական է ասել, որ ներկայումս այստեղ բոլոր հերթափոխությունները, բրիգադաներն ու բանվորները սիստեմատիկաբար գերակատարում են արտադրական պլանները։ Կաուչուկագործները և կենտրոնական լաբորատորիայի քիմիկոսները ձեռք-ձեռքի տված պայքարում են ավելի ևս բարձրացնելու արտադրանքի որակը, կաուչուկի մեջ ի հայտ բերելու նոր օգտակար հատկություններ ու դրանով ընդլայնելու Երևանյան նաիրիտի օգտագործումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Բավական է ասել, որ միայն անցած երկու տարում հայտնաբերվել, յուրացվել և սկսվել են մասսայաբար թողարկվել երեք տեսակի («Ս—Տ—Ս», «Ս—Ն» և «Կ—Պ» մակնիշներով) նորահայտ նաիրիտներ։

Սակայն 1—11ա արտադրամասի կուսկազմակերպությունը և ողջ կոլեկտիվը չեն սահմանափակվում ձեռք բերած այս հաջողություններով։ Կուսկազմակերպությունը հետևողականորեն խորամուխ է լինում արտադրության հարցերում, պայքար ծավալում թերությունների վերացման համար։

Վերջերս հերթական կուսժողովում լսվեց և քննարկվեց արտադրամասի պետ Սարգիս Ազարյանի զեկուցումը՝ օդափոխման համակարգի մոնտաժման աշխատանքների ընթացքի մասին։ Ստեղծվել էր ծանր վիճակ. օդափոխման մեքենաների ստացումը դանդաղելու հետևանքով գրեթե դադարեցվել էր մոնտաժային աշխատանքները։

— Եվ դրա համար մեր որոշումը չպե՞տք է կատարվի,— զեկուցողին հարցրեց ապարատավար Ռաֆիկ Հակոբյանը։

— Այդպես է ընդհանուր վիճակը,— պատասխանեց արտադրամասի պետը,— օդափոխման մեքենաներ չկան ոչ միայն կոմբինատում, այլև հանրապետությունում։ Իսկ Մոսկվայից ստանալու համար երկար ժամանակ է պահանջվում։

Արտադրամասի պետը նույնիսկ դժվարացավ հաստատակամորեն ասել, թե երբ կստացվեն նման մեքենաներ։ Պարզվեց, որ դրանք ձեռք բերելու համար պետք էր մեկ տարի առաջ պատվերներ ներկայացվեր վերադաս տնտեսական գերատեսչություններին, որպեսզի դրանք մտցվեին նյութատեխնիկական մատակարարման պլանների մեջ։

— Դրանք անցած-գնացած բաներ են, գուցե մենք ինքներս պատրաստենք,— դահլիճից անսպասելիորեն լսվեց մեխանիկ Բաբկեն Բադալյանի ձայնը։ Ժողովականները հավանություն տվին այդ առաջարկությանը։

...Մեխանիկ Բ. Բադալյանը, որ ձեռնարկության հնարամիտ մասնագետներից է, իր խոսքի տերը, ժողովից հետո երկար խորհեց այն մասին, թե ինչպես կատարել սեփական խոստումը՝ պատրաստել օդափոխման մեքենաները, որոնց կառուցվածքը, ըստ իրեն, այնքան էլ բարդ չէ. բավական է մոդեռնացնել կոմբինատում եղած փոքր կարողության օդափոխիչները և ամեն ինչ գլուխ կգա։ Իսկ դրա համար կարող ձեռքեր կան (փականագործներ Սուրեն Զարչյանը, Ավետիք Մխիթարյանը, Հայկ Սարգսյանը և ուրիշներ։



Շուտով նույն մարդիկ Բ. Բադալյանի ղեկավարությամբ ձեռնամուխ եղան օդամուղ մեքենաների պատրաստմանը։ Կարճ ժամանակում արագորեն մոնտաժվեցին ու գործի դրվեցին դրանք։ Արտադրամասի բանվորական տեղերում մաքուր օդի մղման արագությունը ժամում 18 հազարից հասցվեց 110 հազար խորանարդ մետրի։

Սեփական ուժերով օդափոխիչների մոնտաժմանը հաջորդեց նոր, ավելի նշանակալից նախաձեռնություն։ Այն ծնվեց կուսբյուրոյի առանձնասենյակում, կոմունիստների հետ արտադրության պետ Ջ. Առաքելյանի ունեցած սրտամոտ զրույցի ժամանակ։

Ջ. Առաքելյանը վառ գույներով նրանց նկարագրեց արտադրամասի մոտիկ ապագան։ Հեռու չէ այն օրը,— ասաց նա,— երբ քիմիական պրոցեսները տեղի կունենան փակ, հերմետիկ ապարատներում և այլևս մթնոլորտը չի ապականվի առողջության համար վնասակար քիմիական հեղուկների գոլորշիներով, անհամեմատ կբարելավվեն աշխատանքի պայմանները և, որ գլխավորն է, նաիրիտը կստացվի անընդհատ հոսքային եղանակով։ Բացի դրանից, ավելի կմեծանա աշխատատար պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման, հումքի, էլեկտրաէներգիայի, գոլորշու և օժանդակ նյութերի խնայողության հնարավորությունները։ Ձեռնարկությանը հնարավորություն կընձեռվի խնայողությունների հաշվին ամեն տարի ստանալ մի քանի միլիոն ռուբլու պայմանական օգուտ։

Ջերմ զրույցը բարձրացրեց մարդկանց տրամադրությունը, նրանց նպատակամղեց աշխատանքային սխրանքների։ Հենց այստեղ քիմիագործները պատրաստակամություն հայտնեցին հաղթահարել այն բոլոր դժվարությունները, որ կառաջանան նոր տեխնոլոգիական պրոցեսի յուրացման ընթացքում։

Տեխնոլոգիական այս նոր պրոցեսն ինքնին այնքան էլ նոր չէր, այն մասամբ ծանոթ էր հնագույն քիմիագործներին։ Բանն այն է, որ տարիներ առաջ աշխատել են այդ պրոցեսը յուրացնել, սակայն, ցավոք, ինչ-ինչ պատճառներով գործը մնացել է անկատար։ Ուրիշ են պայմանները այժմ. ապարատավարները ժամանակի ընթացքում ձեռք են բերել աշխատանքի հարուստ փորձ, արտադրական պրոցեսներում արդեն օգտագործվում են կոլեկտիվի ձեռքով կատարելագործված էլեկտրոնային ավելի ճշգրիտ ավտոմատ սարքեր։ Այս բոլորին պետք է ավելացնել նաև պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի գիտական աշխատողների պրակտիկ օգնությունն ու խելացի հանձնարարականները։ Ահա թե ինչու արտադրության պետի առաջարկությունը սիրով պաշտպանեցին նաև 1—11ա արտադրամասի կոմունիստները։

— Ինձ փոխադրեք այդ նոր տեղամասը,— ասաց ապարատավար Վ. Ազիզյանը։ Նրան ընդօրինակեցին Ռ. Հակոբյանը, Ի. Գրիգորյանը, Վ. Խաչատրյանը Կ. Սաֆարյանը, Ռ. Ղալումյանը և ուրիշներ։

Շուտով նրանք միահամուռ գործի անցան։ Ինչպես ամենուրեք, կոմունիստները հոսքային գծի վերականգնման աշխատանքներում նույնպես հանդես եկան ավանգարդային դերում։ Նոր հոսքայինը նշված ժամկետում շահագործվեց և այժմ շարունակվում է դրա կատարելագործումը։

Ու այսպես քանի-քանի ստեղծագործական կարևոր առաջարկություն-

ներ են անում կոմունիստները և նրանց անմիջական նախաձեռնությամբ ինչպիսի արմատական վերափոխումներ ու կատարելագործումներ են արվում հոսքային գծի վրա։

Քիմիագործ կոմունիստները հետևողականորեն պայքարում են իրենց խելացի առաջարկությունների կենսագործման համար։ Ահա կուսակցական կազմակերպության մի այլ ժողովի քննարկման են դրվել հոսքային գծի աշխատանքի առաջին փորձաշրջանի հանրագումարները։ Այդ մասին զեկուցումով հանդես է գալիս արտադրամասի պետ Սարգիս Ազարյանը։ Մտքերի փոխանակության ժամանակ ստեղծագործական մթնոլորտում բախվում և բյուրեղանում են մարդկանց կարծիքները, որոնք ընդհանրացվում, հղկվում և դրվում են ընդհանուրի կամքն արտահայտող որոշումների հիմքում, դառնում աշխատանքի ծրագիր։

Ինչ խոսք, որ 1—11ա արտադրամասում տեխնոլոգիական նոր պրոցեսների յուրացման գործում նույնպես կդրսևորվեն կոմունիստների նախաձեռնությունների ուժը, կոլեկտիվի համախմբվածությունն ու համերաշխությունը։



...Տարբեր բնավորության ու խառնվածքի մարդիկ են 1—11ա արտադրամասի կոմունիստները։ Կոնդրատ Ղարիբյանը քառորդ դար է, ինչ աշխատում է նրանց հետ։ Նա յուրաքանչյուրին ճանաչում է ոչ թե անկետային տվյալներով, այլ նրանց բնավորության խառնվածքով, կարողանում է թափանցել ամեն մեկի հոգու մեջ։ Ութ տասնյակից ավելի կոմունիստներից մեկը Հ. Մարգարյանն է։ Հուսիկը միայն վառոդի պես բռնկվել գիտեր։ Կարծես թե հնարավոր չէր նրան ներգրավել հասարակական աշխատանքներում. չէր հավատում որոշումներին, դրանք համարում էր «ձևական» և այլն։

Կուսբյուրոյի քարտուղարի անհատական աշխատանքը, նրա բարեկամական միջամտությունը ապարատավար Հ. Մարգարյանի «անձնական» գործերին, օգնեցին նրա ուղղվելուն։ Այժմ Հուսիկը կուսբյուրոյի անդամ է, սեփական նախաձեռնությամբ է հարցեր բարձրացնում, աշխատում է ժողովի որոշումների նախագծերի վրա և այն համոզմանն է, որ ճշմարիտ խոսքը «տաշած քար է և երբեք գետին չի մնա»։

Արշակ Միրզոյանը հաճախ է խոսում բանվորների շահերի պաշտպանության մասին։ Նրան թվում էր, թե, բանվորներին կարողանում է պաշտպանել միայն ինքը, այն էլ «համարձակ ելույթներով»։ Մինչդեռ այժմ նա տեսականորեն բավականին աճել և հասունացել է, գիտե, որ աշխատավորների իսկական շահերի պաշտպանությունը նախ՝ նյութական բարիքների արտադրության անընդհատ աճի մեջ է, սովետական և աշխատանքային օրենսդրության անշեղ կենսագործման մեջ։ Հաճելի է ասել, որ Ա. Միրզոյանը կուսբյուրոյի ակտիվ անդամներից է, անձամբ զբաղվում է աշխատանքային օրենսդրության պաշտպանության հարցերով։

Ինժեներական աշխատանքի առաջքաշված բանվորներից է հերթափոխի պետ Արտավազդ Հովհաննիսյանը։ Նա գիտե, որ գործի հաջողությունը կախված է կոլեկտիվի հետ համերաշխ, ձեռք-ձեռքի տված, համատեղ աշխատանքից, որ իր հերթափոխությունն արտադրական առաջադրանքները պատվով կկատարի միայն կոմունիստների ամենօրյա օգնությամբ, նրանց վրա հենվելով, նրանց ձայնին ունկնդրելով։

---

# ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՀԱՅ ԱԿԱՆԱՎՈՐ ԲԺՇԿԱՊԵՏԸ

(Մխիթար Հերացու ծննդյան 850-ամյակի առթիվ)

Արևելքի հնագույն ժողովուրդներից մեկը՝ հայերը, իրենց հերոսական անցյալի հետ մեկտեղ թողել են դարերի խորքից եկող հարուստ մշակույթ:



Այնպիսի մեծագույն մտածողներ, ինչպիսիք են՝ Մովսես Խորենացին, Անանիա Շիրակացին, Դավիթ Անհաղթը, Գրիգոր Նարեկացին, Հովհաննես Իմաստասերը, Մխիթար Գոշը, Ներսես Շնորհալին, Վարդան Այգեկցին և ուրիշներ, իրենց անմահ ստեղծագործություններով դուրս են գալիս ազգային նեղ սահմաններից և դառնում համամարդկային մշակույթի ջահակիրներ: Նրանց շարքում իր արժանի տեղն ունի հայ միջնադարի բժշկագիտության խոշորագույն ներկայացուցիչ, տաղանդավոր բժշկապետ Մխիթար Հերացին: Նա ապրել ու ստեղծագործել է XII դարում:

Բազմաչարչար հայ ժողովրդի քաղաքական կյանքում մի փոթորկալից ժամանակաշրջան էր այդ, երբ բյուզանդական կայսրության միտումնավոր

քաղաքականության, արաբների ու թուրք-սելջուկների կործանիչ արշավանքների հետևանքով քայքայվեց Հայաստանը։ Նրա հինավուրց քաղաքներից շատերն ավերվեցին։ Ահա այս պատճառով հայ ժողովրդի մի փիթխարի մաս իր ֆիզիկական գոյությունը պահպանելու համար, պանդխտության ցուպն առած, ակամա հեռացավ մայր հայրենիքից։ Պահլավունիների, Արծրունիների և Բագրատունիների զգալի մասն ապաստանեց Մերձավոր Արևելքում, բյուզանդական կայսրության ծայրամասային գավառներում։

Մերձավոր Արևելքում XI—XII դարերում ստեղծված հայկական մանր իշխանություններից առավել կենսունակը Ռուբինյանների իշխանությունն էր, որի հիմնադիրը եղավ հայոց Գագիկ II թագավորի մերձավոր զինակիցներից Ռուբենը՝ Բագրատունիների տոհմից։ Նրա անունով էլ կոչվում է Ռուբինյանների իշխանությունը։ Օգտագործելով բյուզանդական կայսրության ծանր վիճակը, Ռուբինյանները 1080 թվականին ապստամբեցին նրա դեմ, հռչակեցին հայկական անկախ իշխանություն, որը հետագայում վերածվեց թագավորության։

Կիլիկյան հայկական թագավորությունն իր մոտ երեքհարյուրամյա գոյության ընթացքում խոշոր դեր խաղաց հայ պետականության ու մշակույթի պատմության մեջ։ Ամրանալով Տավրոս ու Ամանոս լեռների անառիկ վայրերում, ավելի խաղաղ ու բարենպաստ պայմաններում, հայ ժողովրդի այդ հատվածն սկսեց բարգավաճել։

Այստեղ, Կիլիկիա՝ հայ ժողովրդի երկրորդ հայրենիքը, փոխադրվեց նաև կաթողիկոսարանը։ Կիլիկյան Հայաստանը, գտնվելով Միջերկրական ծովի ափերին և ցամաքային ճանապարհներով կապված լինելով արևելքի և արևմուտքի երկրներին, ավելի սերտ առևտրական կապեր հաստատեց Եվրոպայի, Ղրիմի ու Մերձավոր Արևելքի երկրների հետ։

Շփվելով արաբական, հունական, արևմտա-եվրոպական ժողովուրդների հետ, հայերն ավելի մոտիկից ծանոթացան Եվրոպայի քաղաքակրթությանն ու արաբական մշակույթին։

Պատմա-քաղաքական նոր պայմաններում, համեմատաբար խաղաղ վիճակում, հայերն սկսեցին ո՛չ միայն վերականգնել հայ մշակույթը, այլև ավելի զարգացնել այն։ Թե՛ վանական և թե առանձին դպրոցների թիվն սկսեց բազմապատկվել։ Կիլիկյան հայկական դպրոցներում սովորում էին ո՛չ միայն տեղի, այլ հայաբնակ ուրիշ վայրերի, ինչպես՝ Մեծ Հայաստանի երիտասարդությունը։

XII դարի երկրորդ կեսին, այսինքն՝ Մխիթար Հերացու օրոք, մեծ հռչակ ունեին հայ անվանի բազմաթիվ մտավորականներ, փիլիսոփաներ, երաժիշտներ, մատենագիրներ, մանկավարժներ... Առավել աչքի ընկնողներից էին՝ մանկավարժ ու մատենագիր Խաչատուր Սկևռացին, երաժիշտ ու մանկավարժ Գրիգոր Սկևռացին, Ներսես Շնորհալին, Գրիգոր Տղան, Ներսես Լամբրոնացին և շատ ուրիշներ։ Գիտնականների այս համաստեղության մեջ է ապրել ու ստեղծագործել Մխիթար Հերացին։ Նա մտերիմ է եղել Ներսես Շնորհալու հետ։ Վերջինս է հանձնարարել Հերացուն գրելու իր «Ջերմանց մխիթարութիւն» աշխատությունը։

Ներսես Շնորհալու մի երգից (Ի խնդրոյ առն բժշկապետի և աստղագէտի Մխիթարայ (Ալիշան, «Շնորհալի և պարագայ իւր», էջ 279) կարելի է եզրակացնել, որ Մխիթար Հերացին հայտնի է եղել ո՛չ միայն որպես բժիշկ, այլև աստղագետ։



Մխիթար Հերացու մտերիմներից էր և Հայոց կաթողիկոս Գրիգոր Տղան (1173—1193) Ներսես Շնորհալու եղբոր՝ Վասիլի որդին, որը բացի կրոնաքաղաքական գործունեությունից զբաղվել է նաև գիտությամբ։ Շնորհալու հետ միասին նա ևս հանձնարարեց Մխիթար Հերացուն՝ գրել «Ջերմանց մխիթարութիւնը»։ Այդ մասին Հերացին իր գրքի ներածականում գրում է. «Ի թուականիս հայոց ՈԼԳ (633—1184) ի հայրապետութեան սրբազան կաթողիկոսիս Հայոց տեառն Գրիգորի, որդոյ Վասիլի բարեպաշտ իշխանի Պահլաւունոյ, որ և եղեւ պատճառն գրոց» («Յիշատակարանք Ձեռագրաց», էջ 503)։

Առաջին վկայությունը հայ բժիշկների մասին վերաբերում է IX դարին, որտեղ հիշատակվում է «Յակոբայ բժշկապետին» («Գիրք Վաստակոց, թարգմանութիւն նախնեաց», Վենետիկ, 1877, էջ 6), «Հովհաննես բժիշկ (թ)» (Ալիշան, «Շնորհալի եւ պարագայ իւր», Վենետիկ, 1873, էջ 63)։ Բայց ովքե՞ր էին այդ Հակոբ և Հովհաննես բժիշկները և ի՞նչ գործեր են գրել, մեզ անհայտ է։ Իր գրքի առաջաբանում Հերացին վկայում է, որ հայերեն բժշկագիտական գրքեր չեն եղել՝ «և ի Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն և զիմաստ նախագիտութեան» (Մխիթար Հերացի, «Ջերմանց մխիթարութիւն», նախաբան)։ Այդ պատճառով էլ նա նշում է, որ ինքը հարկադրված է եղել օգտվել լատինական, պարսկական և արաբական բժիշկների գործերից։

Մխիթար Հերացին իր գրքում հայտնում է, որ եղել է «Ի Հեր քաղաքն ծնընդեամբ» (Մխիթար Հերացի, «Ջերմանց մխիթարութիւն», նախաբան), այսինքն՝ նա ծնվել է Մեծ Հայաստանի Հեր (այժմ Խոյ) քաղաքում։ Այդ մասին Ալիշանը գրում է. «Ինքն ծննդեամբ ի Հեր քաղաքէ, որ է այժմեանն Խոյ ի Պարսկական Հայս, անոր համար Հերացի կըսուի (Ալիշան, «Շնորհալին և պարագայ իւր», էջ 258)։ Սկզբնական կրթությունն ստացել է հայրենի քաղաքում։ Հետագայում, Վարդան Հաղպատեցու, Մխիթար Գոշի և այլ երիտասարդների օրինակով Մեծ Հայաստանից նա գնացել է Կիլիկյան Հայաստան, Սև Լեռան դպրոցում կատարելագործելու իր ուսումը։

Հավանաբար ուսման պրոցեսում արտակարգ ընդունակություններ դրսևորելու շնորհիվ նրան պահել են Կիլիկյան Հայաստանում։ Դեռ մանկությունից նա սիրել է բնական գիտությունները, հատկապես բժշկությունը։ Այդ մասին ինքը՝ Հերացին, գրում է. «Ի բժշկաց, որ ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան և բժշկական արուեստից» (Մխիթար Հերացի, նույն տեղը)։ Ուստի, նա ուսումնասիրել է բազմաթիվ լեզուներ. «Վարժեցայ ի դպրութիւն արաբացւոց և պարսից, հելլենացւոց, տեսի յընթերցումն որ առ նոսայ գրոցն»... («Յիշատակարանք Ձեռագրոց, էջ 501) «Զի ունեին զարուեստ բժշկութեան լի...» (նույն տեղը)։

Մխիթար Հերացու գործերից մեզ են հասել «Ջերմանց մխիթարութիւնը»[1], «Քարերը և նրանց բուժիչ հատկությունները»[2] և «Վասն շինուածոց և յօրինուածոց աչացըն»[3]։ Եղել են նաև բժշկական այլ գործեր, որոնք, հավանաբար, մեզ չեն հասել։ Կան վկայություններ, որ Մխիթար Հերացին աշխատություն-

---

1 Մխիթարայ բժշկապետի Հերացւոյ, «Ջերմանց մխիթարութիւն», Վենետիկ, 1832։

2 Հերացու այս աշխատության (որի ձեռագիրը գտնվում է մատենադարանում) մի մասը հրապարակված է (տե՛ս «Բազմավեպ», 1921 թ, № 10)։

3 Մխիթար Հերացու ակնաբուժական այս աշխատությունները մեզ են հասել բժիշկ Աբուսայիդի միջնորդությամբ (տե՛ս Գրիգորիս, ներածություն, էջ XXXV)։ Բարձր է սույն աշխատության արժեքը ո՛չ միայն բժշկագիտության, այլև աշխարհագրության և ուրիշ բնագավառների համար (տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1899, էջ 206)։

ներ է գրել նաև մարդակազմության, կենսաբանության, ինչպես նաև ախտաբանության վերաբերյալ: «Ջերմանց Մխիթարութիւն» 46 գլխից բաղկացած աշխատությունը Հերացին ավարտել է 1184 թվականին: Հանգամանորեն ուսումնասիրելով գրքի բովանդակությունը՝ դժվար չէ նկատել, որ հեղինակը գերազանցապես այն նվիրել է ջերմության հետ կապված հիվանդությունների բազմակողմանի հետազոտությանը:

Բացի ինքնուրույն ստեղծագործություններից, Մխիթար Հերացին օտար աղբյուրներից կատարել է նաև թարգմանություններ: Դրանցից մեկն արաբերենից թարգմանված «Գիրք վաստակոց»[1] բժշկագիտական աշխատությունն է, որի հեղինակն անհայտ է:

Ինչպես հայտնի է, միջին դարերում մտավորականը հաճախ հանդես էր գալիս միաժամանակ մի քանի մասնագիտություններով: Այսպես. օրինակ Հովհաննես Իմաստասերը փիլիսոփա էր և բանաստեղծ, մաթեմատիկոս և մանկավարժ... Մխիթար Հերացին ևս բնագետ էր, մանկավարժ, աստղագետ, փիլիսոփա, բժիշկ... Հայ մատենագիրները նրան անվանում էին «բժշկապետ»:

Անհրաժեշտ է նշել, որ Մեծ Հայաստանում (Մեծ Հայք) վաղ է զարգացել բժշկագիտությունը: Կիլիկիայում եղել են բժշկագիտական դպրոցներ, գործել հիվանդանոցներ, որբանոցներ, ուր խնամողների մեծ մասը եղել են բժիշկները:

Կիլիկյան Հայաստանում բժշկագիտական դպրոցների առկայության մասին են վկայում Բոլոնացու հաղորդած տեղեկությունները[2]: XIII դարի հայ ականավոր բժիշկ Գրիգորիսը ո՛չ միայն օգտվել է Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» աշխատությունից, այլև առանձին մտքեր բառացի արտագրել նրանից: Այստեղ զարմանալի ոչինչ չկա, քանի որ Գրիգորիսից առաջ միայն Մխիթար Հերացին է բժշկագիտության վերաբերյալ մի շարք աշխատություններ գրել, որոնցից օգտվել են թե՛ Գրիգորիսը և թե հետագայում ուրիշ հայ բժիշկներ:

Մխիթար Հերացու աշխատություններից օգտվել է նաև XV դարի հայ տաղանդավոր բժիշկ Ամիրդովլաթ Ամասիացին (ծնվ. 1415 թ.): Նա իր մի քանի գրքերում «Մարդակազմութիւն», «Ախտաբանութիւն», «Ուսումն բժըշկութեան», «Ախրապատին» և բժշկագիտության վերաբերյալ այլ աշխատություններ գրելիս լայնորեն օգտվել է Մխիթար Հերացու գործերից:

Ամիրդովլաթ Ամասիացին իր «Անգիտաց անպէտ» հայտնի աշխատության մեջ, թվարկելով բոլոր այն բժիշկների անունները, որոնցից օգտվել է, առաջինը հիշատակում է հայ բժշկապետ Մխիթար Հերացուն: Նա գրում է. «Եւ ի յայս բանիցս առին առաջին բժշկապետքն մեր՝ մեծն Մխիթար բժիշկըն, և Ահարոն բժիշկն, և որդին նորա Ստեփանոս բժիշկն և... որ շատ գրեանք շիներ էին վասն դեղերուն զաւրութեանն և ազդութեանն կարճառաւտ էին արել» (Ամիրդովլաթ Ամասիացի, Անգիտաց անպէտ, Վիեննա, 1927, էջ 2):

Կարևորն այն է, որ ուշ ժամանակվա բոլոր հայ բժիշկները՝ Գրիգորիսը, Ամիրդովլաթը և ուրիշներ, հետևելով Մխիթար Հերացու օրինակին, իրենց աշխատությունները նույնպես գրել են ժողովրդին հասկանալի լեզվով՝ Կիլիկիայի հայ բարբառով: Այսպիսին է եղել նաև XIII դարի հայ բժիշկ Ստեփանոսը.

---

[1] Գիրք վաստակոց, Թարգմանութիւն նախնեաց յարաբացի լեզուէ, Վենետիկ, 1877:

[2] Ձեռագիր, № 2173, էջ 160 բ:



Նա իր «Ծաղիկ» կոչված աշխատությունը նույնպես շարադրել է 1232 թվականին, Կիլիկյան հայ բարբառով: Ընդհանրապես բժշկագիտության վերաբերյալ գրքերը գրվել են կա՛մ հունարեն, կա՛մ լատիներեն: Մինչև հիմա էլ համաշխարհային բժշկագիտության տերմինները հիմնականում լատիներեն են: Միջին դարերում, արաբական էքսպանսիայի ժամանակաշրջանում, հանդես եկավ նաև արաբերենը, որն, իհարկե, չփոխարինեց լատիներենին: Մխիթար Հերացու հայոց լեզվով հանդես գալը նշանակալից երևույթ էր:

Մխիթար Հերացին՝ հայ առաջին բժշկապետը, իր գործերը չի գրել անհասկանալի, մեռած լատիներենով, ինչպես այդ արել է սրբացված Հիլդեգարդը, այլ «գեղջուկի բարբառով»: Մխիթար Հերացու գրքի ներածականից երևում է, որ հիանալի տիրապետում է դասական գրաբարին, բայց նա իր աշխատությունը շարադրում է ժողովրդին հասկանալի, պարզ լեզվով. «Եւ արարի զսա գեղջուկ և արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց, առ ի յիշատակել զմեզ», համեստությամբ նշելով, որ «ըստ իմոյ կարողութեան և շնորհի՝ զոր ետ ինձ տէր գիտութիւն» («Մխիթարայ բժշկապետի Հերացւոյ», հեղինակի նախաբանից):

XII—XIII դարերում բուռն զարգանում է բժշկագիտությունը: Հայ բժիշկներն իրենց ստեղծագործությունների հետ միասին զարկ են տալիս նաև թարգմանական գրականությանը: Հայ գիտնականները հունարենից, պարսկերենից, արաբերենից թարգմանում են ալքիմիայի, ձիաբուժության և բժշկության վերաբերյալ բազմաթիվ գործեր:

Հայտնի է սորի մտավորական Իշավխի, Միքայել Ասորու «Ժամանակագրութիւն» գրքի հայերեն թարգմանությունը: Բժշկական արվեստի մեջ Իշավխի հմտությունը հաստատվում է հայերեն շարադրված նրա՝ «Գիրք ի վերայ բնութեան»... աշխատությամբ: Պրոֆ. Կծոյանը, որը մեծ վաստակ ունի հայ բժըշկության պատմության բնագավառում, նշում է, որ Իշավխը միակ ասորին չէ, որ նպաստել է բժշկության զարգացմանը Կիլիկյան Հայաստանում. «Անտարակույս,—գրում է նա,—ասորի է եղել «Յաղագս կազմութեան մարդոյ» ուշագրավ աշխատության հեղինակը՝ Աբուսայիդը, որի միջնորդությամբ պահպանվել է Մխիթար Հերացու ակնաբուժական աշխատության տեսական բաժինը: Այպա նա բերում է նշված աշխատության այն տեղը, ուր գրված է. «Ասացեալ է մեծն Մխիթար թէ ամենայն բժիշկ, որ աղաց կամենայ ծառայել, պիտի որ զկամութիւն աղացն կարդայ, որ իւր տարածումն իմաստութեամբ լինի».

Ինչպես հայտնի է, Եվրոպայում «Սուրբ հայրերը» հրով ու սրով ոչնչացնում էին ամեն տեսակ առաջադիմություն, իսկ դիահերձումը համարում դիվային երևույթ, պղծություն: Անգամ Սալերնոյի հանրահռչակ բժշկագիտական դպրոցում հերձում էին միայն կենդանիներին և հերետիկոս էին անվանում բոլոր նրանց, ովքեր ժողովրդի մեջ լուսավորություն էին տարածում: Դեռ ավելին, իսպանական ժողովրդի մեծանուն գիտնական Սերվետ Միգելին միջնադարյան բարբարոս ինկվիզիտորները խարույկի վրա բարձրացրին այն բանի համար, որ նա դիահերձման փորձ էր կատարել:

Այդ տեսակետից այլ էր վիճակը Կիլիկյան Հայաստանում, ուր XII—XIII դարերում չկային սահմանափակումներ: Հայ գիտնականները դիահերձում էին կատարում և խոսում դրա նշանակության մասին: Այդ են վկայում Հովհաննես Երզնկացու՝ դիահերձման մեթոդներին նվիրված աշխատությունները:

Երբ մինչև XVI—XVIII դարերը կաթոլիկ եկեղեցին ամեն մի առաջադեմ

մարդու կարող էր մեղադրել հերետիկոսության մեջ և արգելել գիտության զարգացումը, ապա Կիլիկյան Հայաստանում ո՛չ միայն զարկ էր տրվում գիտությանը, արվեստին, այլև հին հունական գիտնականների գործերը թարգմանվում էին հայերեն, մեկնաբանվում: Օրինակ, Հայաստանում թարգմանվել են Արիստոտելի, Թրակացու, Պլատոնի, Զենոնի և այլոց աշխատությունները: Հայտնի է, որ դեռ XI դարում հայերենի թարգմանվեց Էվկլիդեսի «Երկրաչափութիւն»-ը բնագրից, իսկ Եվրոպայում այն թարգմանվեց բավականին ուշ, այն էլ ոչ թե բնագրից, այլ արաբերենից:

Միջնադարյան Հայաստանում բժշկագիտության նոր թափը և դրա համաժողովրդական ճանաչումն սկսվեց XII դարից, որի խոշորագույն ներկայացուցիչը հայ մեծ բժշկապետն էր: Նրա «Ջերմանց մխիթարութիւն» աշխատության ձեռագիրը հայտնաբերվեց բոլորովին անսպասելի: Ֆրանսիական մինիստր Մորպանը Փարիզի Արքայական գրադարանի համար հին ձեռագրեր հայթայթելու նպատակով հատուկ մասնագետներ ուղարկեց Արևելք. նրանցից մեկը Կոստանդնուպոլսում, 1728 թվականին, հայտնաբերեց մի հայ մտավորականի մոտ 160 հին ձեռագիր: Դա մեծ զարմանք հարուցեց Եվրոպայում: Հիշված բոլոր ձեռագրերը գնվեցին և փոխադրվեցին Փարիզի Արքայական գրադարանը: Ահա այդ ձեռագրերի մեջ էր և Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն»-ը: Փարիզում այն ընդօրինակեց Վենետիկի Մխիթարյաններից Արսեն Բագրատունին, որը հրապարակվեց 1832 թվականին, Վենետիկում:

Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» աշխատության բնագրի հրապարակումից չանցած մի տարի, 1833 թվականին, լույս տեսավ գերմանական ականավոր գիտնական, Փարիզի, Բեռլինի և Ս. Ղազարի միաբանության ակադեմիաների անդամ Կ. Նեյմանի հոդվածը, նվիրված Հերացուն, որը հրապարակվեց «Viener jarbücher der Literatur» (Վենական գրականության տարեգիր) ժուռնալի 62-րդ համարում: Համաշխարհային հռչակ վայելող գիտնականի այդ բովանդակալից հոդվածը մեծ հետաքրքրասիրություն առաջացրեց եվրոպական գիտնականների շրջանում:

Մխիթար Հերացու մասին Փարիզի բժշկական գիտությունների ակադեմիայում 1899 թվականին բովանդակալից զեկուցմամբ հանդես եկավ հայ ականավոր բժշկապետ Վ. Թորգոմյանը: Նույն թվականին ֆրանսիական չորս մասնագիտական հանդեսներում հոդվածներ հրապարակվեցին Մխիթար Հերացու մասին, որոնցից առավել հետաքրքրահարույցն էր «Le bulletin medical» (բժշկական բյուլետեն) 1899 թվականի № 59-ում հրապարակվածը: Այնուհետև Մխիթար Հերացու վերաբերյալ հոդվածներով հանդես եկան ֆրանսիական գիտնականներից Ֆեռեն, Լեգրենը և ուրիշներ:

Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւնը» համաշխարհային բժշկագիտության սեփականությունը դարձավ այն ժամանակ, երբ բժշկության պատմության պրոֆ. Կարլ Զյուդհոֆի աջակցությամբ գերմանական ականավոր գիտնական Էռնեստ Զայդելը հայերենից գերմաներեն թարգմանեց այն և 1908 թվականին հրապարակեց Լայպցիգում: Հաջող թարգմանության համար Էռնեստ Զայդելը արժանացավ Ֆուշմանի անվան բարձր մրցանակի:

Այդ օրվանից Մխիթար Հերացին մտավ համաշխարհային բժշկագիտության գանձարանը և նրա ստեղծագործությունները դարձան համամարդկային սեփականություն: Մխիթար Հերացուն համեմատելով XII դարի գերմանական հայտնի բուսաբան Հիլդեգարդի հետ, Էռնեստ Զայդելն առաջնությունը տալիս է հայ բժշկապետին, չնայած, Հիլդեգարդը համաշխարհային ճանաչում



էր գտել, նրան իր հայրենիքում դասել էին ազգային սրբերի շարքը և ութ հարյուր տարի անընդհատ նշել սեպտեմբերի 1-ը, որպես «Սուրբ Հիլդեգարդի օր»: Էռնեստ Զայդելը գրել է. «Երբ առանց կանխակալ կարծիքի մենք համեմատում ենք Ս. Հիլդեգարդին բնագիտության հայ վարպետ Մխիթար Հերացու վաստակի հետ, տեսնում ենք, որ վճռականապես հայ վարպետին պետք է հանձնենք առաջնության դափնեպսակը՝ բնության ավելի արմատական իմացության, ավելի հետևողական և ինքնուրույն մտածողության, ինչպես նաև սխոլաստիկական նախապաշարումներից լիովին զերծ մնալու համար»: Գերմանացի ճանապարհորդ Ռորբախը, այցելելով Հռոմկլա, այնտեղ, ուր ապրել և աշխատել է Մխիթար Հերացին, այն համեմատում է գերմանական Շտոլցենֆելդ դղյակի հետ և ասում, որ դրանք կողք-կողքի դնելիս գերմանական դղյակը նմանվում է փոքրիկ պահակախցի:

Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» աշխատությունը Երևանում 1955 թվականին թարգմանվել է նաև ռուսերեն[1]: Թարգմանությանը կցված են ընդարձակ ներածություն և արժեքավոր ծանոթագրություններ: Մեսրոպյան Մատենադարանում ունենք Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» աշխատության ամենահին ձեռագիրը, ավելի հին, քան Փարիզի Արքայական Մատենադարանինը կամ Երուսաղեմինը: Մատենադարանում պահվող ձեռագիրն արտագրված է 1279 թվականին, այսինքն՝ Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւնը» գրելուց մեկ դար հետո:

Մխիթար Հերացին իր աշխատությունները գրել է ուսումնասիրելով պարսկերեն, հունարեն, արաբերեն բազմաթիվ բժշկական գրքեր, որտեղից նյութեր քաղելով կազմել է իր «Ջերմանց մխիթարութիւն» անմահ գործը, որը սուր դիտողությունների, բազմակողմանի գիտականության և ախտորոշման ճշգրիտ սահմանների առումով խոշոր ներդրում է բժշկագիտության պատմության մեջ:

Միջնադարում շատ բժիշկներ են եղել, բայց նրանցից ոչ ոք այնպիսի վարպետությամբ բժշկագիտությունը չի ներկայացրել ժողովրդին, ինչպես այն արել է հայ մեծ բժշկապետը: Նա իր գործերը գրել է ոչ թե առհասարակ բժշկագիտության համար, այլ ժողովրդին ծառայելու նպատակով: Հենց դրանով է բացատրվում նրա «ռամիկ» ոճը:

Մխիթար Հերացու դերն ու նշանակությունը չեն սահմանափակվում միայն բժշկագիտության բնագավառում նրա նորարարությամբ. նա միաժամանակ փիլիսոփա է ու տեսաբան: Մխիթար Հերացին կենդանահերձությունից, ինչպես և բժշկական իր պրակտիկ փորձից ելնելով, բավականին լուրջ գիտական ընդհանրացումների հանգեց: Նրա՝ բնական գիտությունների վերաբերյալ ընդհանրացումները և գիտական եզրահանգումները ոչ մի առնչություն չունեն աստվածաբանության հետ:

Մխիթար Հերացու փիլիսոփայական խոր մտքերն իմաստավորված են, նրա փիլիսոփայական հայացքը մատերիալիստական է: Հենց այդ ոգով էլ նա բացատրում է երևույթները: Ըստ նրա՝ հոգին սերտորեն շաղկապված է մարմնի հետ և երկուսը միասին կազմում են միասնություն: Հետևելով Արիստոտելի և Հիպոկրատի կողմից առաջադրված բաժանմանը՝ Մխիթար Հերացին հայտ-

[1] *Мхитар Гераци,* Утешение при лихорадках, перевод с армянского, введение и комментарии Арутюняна Г. Г., Кцояна А. С., Мелик-Парсаданяна Х. А., Оганесяна Л. А., Сепетчяна А. О., Ереван, 1955 г. 264 стр.

նում է այն կարծիքը, թե հոգին երեք նյուղերի է բաժանվում՝ հոգի բնութեան—լյարդն է, հոգի կենդանութեան—սիրտն է, հոգի զգայութեան—գլխի առաջին փորոքն է: Հոգու գործունեությունը հայ բժշկապետը բացատրում է մարդու մարմնում կատարվող պրոցեսներով: Ահա այն մատերիալիստական ըմբռնումը, որը մենք տեսնում ենք XII դարի հայ մտավորականների աշխատություններում:

Հայ բժշկապետը փիլիսոփայական խոր ընդհանրացումներով գիտական ճիշտ բացատրություն է տալիս մարդու հիվանդության առաջացման մասին, այն կապելով մարդու արտաքին միջավայրի, հիվանդի ներքին վիճակի, աշխատանքի լարվածության և այլ պայմանների հետ:

Այժմ տեսնենք, թե գիտական ինչ նոր մտքեր է հայտնել Մխիթար Հերացին և որն է նրա նորարարության համաշխարհային նշանակությունը:

Պրոֆ. Էռնեստ Զայդելը Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» աշխատության գերմաներեն թարգմանության ներածականում հայտնում է այն կարծիքը, որ այնտեղ հանդիպելով «բորբոսային» և «անբորբոսային» բառերին, չափազանց զարմացել և խիստ կասկածել է այն պարզ պատճառով, որ նման տերմինները բժշկագիտության մեջ սկսել են գործածվել մի քանի դար հետո: Այդ պատճառով մեծանուն գիտնականը միանգամից դժվարացել է հավատալ այդ տերմինների իսկությանը: Մխիթար Հերացին դեռ XII դարից այն կարծիքը հայտնեց, որ մարդու մարմինն ունի ծակոտիներ, որոնք մարմնի համար զաղտնի շնչահարների դեր են կատարում: Այդ պատճառով էլ նա խորհուրդ է տալիս հրաժարվել այն օճառից, որը մեծ քանակությամբ ձեթ է պարունակում, քանի որ ձեթոտ օճառը կարող է փակել մաշկի ծակոտիները և մարդու օրգանիզմում հիվանդություն առաջացնել: Այս կարևոր հանգամանքն իրավունք է տալիս Էռնեստ Զայդելին՝ Մխիթար Հերացուն համարելու բակտերոլոգիայի «նախահայրը»: Այս գնահատականի ստուգությունը թողնելով բժշկագիտության մասնագետներին, չմոռանանք ասել, որ Հերացին իր ժամանակին հայտնաբերել է մի շարք հիվանդություններ: «Իրական և անառարկելի փաստ է,—գրում է ակադեմիկոս Լևոն Հովհաննիսյանը,— որ մինչև բակտերիոլոգիական դարաշրջանը բժիշկներից ոչ մեկը վարակման ընթացքի բնորոշման համար չի օգտագործել իրականությունն այդքան ճիշտ արտացոլող տերմին, ինչպես որ այդ արել է Մխիթար Հերացին»:

Հունա-հռոմեական բժշկության հայր Գալենի զինակից և աշակերտ Փիլիպոսի կարծիքով, մարդը երիտասարդ հասակում հիվանդանալիս անպայման ջերմություն պիտի ունենա: Մխիթար Հերացին առաջինն էր, որ մերժեց այդ հակագիտական տեսությունը: Նա իր գործունեությամբ ու գիտական պրպտումներով հանգեց այն եզրակացության, որ ամեն տարիքում հիվանդությունը կարող է ուղեկցվել ջերմությամբ և հակառակը:

Մխիթար Հերացին շատ բաներ նկատեց բժշկագիտության մեջ, որոնց մասին բժշկագետները բավականին ուշ կռահեցին: Այսպես, օրինակ, նիդեռլանդացի ապակեգործ Անտոնի վան Լևենհուկն իր պատրաստած չորս հարյուր անգամ մեծացնող խոշորացույցով հայտնաբերեց անտեսանելիների (մանրէների) աշխարհը: Սակայն հարկ է նշել, որ դրանից մոտ չորս հարյուր հիսուն տարի առաջ հայ բժշկապետ Մխիթար Հերացին արդեն հայտնել էր իր կարծիքը անտեսանելիների առկայության մասին: Դժբախտաբար այդ հայտնագործումը չէր դարձել համաշխարհային բժշկագետների ուսումնասիրության



առարկա, քանի որ հայ բժշկապետի ձեռագրերը դարեր շարունակ թաղված էին գրադարաններում:

Ակադեմիկոս Լևոն Հովհաննիսյանն, ավելի քան կես դար զբաղվելով հայ բժշկագիտության պատմությամբ, ուսումնասիրել է բազմաթիվ հայ բժիշկների թողած ժառանգությունը, որոնցից հատուկ ուշադրություն է նվիրել Մխիթար Հերացու աշխատություններին: Նրա ռուսերեն հրապարակված գործերում կարելի է հանդիպել շատ ջերմագին էջերի, որտեղ բազմավաստակ գիտնականը խոսում է համաշխարհային բժշկագիտության մեջ Մխիթար Հերացու դերի ու նշանակության մասին: Այս տեսակետից ուշագրավ է Փարիզում, բժիշկների միջազգային համաժողովում (1958 թ.) նրա կարդացած հետաքրքրական զեկուցումը, որտեղ համաժողովի մասնակիցները ո՛չ միայն զարդարեցին իրենց կուրծքը Մխիթար Հերացուն պատկերող դիմանշաններով, այլև ավելի մոտիկից ծանոթացան միջնադարյան հայ բժշկագիտությանը:

Մխիթար Հերացին հայ բժշկության մեջ թողել է մի վիթխարի հուշարձան՝ «Ջերմանց մխիթարութիւն» անմահ աշխատությունը, որը մեծ արժեք ունի ոչ միայն հայ, այլև համաշխարհային բժշկագիտության համար:

«Այս ինքնատիպ աշխատությունը,—կարդում ենք գրքի ռուսերեն թարգմանության ներածականում,—լավագույններից մեկն է հայ բժշկագիտական ստեղծագործություններից: Նրա նշանակությունը դուրս է գալիս ազգային շրջանակներից, քանի որ այնտեղ արտացոլված են նաև Հունաստանի ու Հռոմի անտիկ, Բյուզանդիայի և Առաջավոր ու Միջին Ասիայի միջնադարյան բժշկության նվաճումները՝ հեղինակի կողմից արծարծված հարցերի քննագավառում»:

Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանի շքամուտքի առջև կխոյանա հայ ժողովրդի մեծանուն գիտնականի՝ բժշկապետ Մխիթար Հերացու քանդակը, երախտագիտությամբ հավերժացնելով նրա անմահ ժառանգությունը, ի հաստատումն այն ճշմարտության, որ

«Ձեռս գնա դառնա ի հող,
գիրս մնա աստ ինձ հիշող»:

ԳԱԼՍՏՅԱՆ Ա. Գ.
Պատմական գիտությունների դոկտոր

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԱՅԻՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ*

Ներկայումս կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերը խմբավորվում են հետևյալ կերպ՝ շենքեր և կառուցումներ, ուժային և գյուղատնտեսական մեքենաներ, տրանսպորտային միջոցներ, մթերատու ու բանող անասուններ, բազմամյա տնկարկներ: Բացի դրանից, հիմնական ֆոնդերից է հողերի բարելավման նպատակով օգտագործվող սարքավորումների և գույքի մի մասը:

Հիմնական ֆոնդերի առանձին տեսակները տնտեսությունների արտադրական ցուցանիշների վրա միատեսակ չեն ազդում: Շենքերի կառուցումների և բազմամյա տնկարկների մի մասը, թեև խիստ անհրաժեշտ են արտադրության զարգացման և գյուղատնտեսական արտադրանքի պահպանման համար, բայց արտադրության չափերը դեռևս սրանցով չեն որոշվում: Օրինակ, անասնապահական շենքերը նպաստում են անասունների մթերատվությանը, սակայն արտադրանքի ծավալը, առաջին հերթին, պայմանավորված է ո՛չ թե շենքերով, այլ անասնագլխաքանակով և անասունների մթերատվությամբ: Իսկ մնացած հավասար պայմաններում, արտադրությունն ավելի արդյունավետ է այնտեղ, որտեղ համեմատաբար քիչ միջոցներ են ծախսվում արտադրության պայմանների ստեղծման և ավելի շատ՝ հիմնական ֆոնդերի այն տարրերի վրա, որոնք անմիջականորեն առնչվում են արտադրության ծավալի և աշխատանքի արտադրողականության մակարդակի հետ: Կոլտնտեսությունների շենքերը, կառուցումները արտադրության էական նախադրյալ են, թեև արտադրական ֆոնդերի ընդհանուր արդյունավետության համար յուրաքանչյուր տնտեսության մեջ անհրաժեշտ է հասնել հիմնական ֆոնդերի ակտիվ և համեմատաբար պասսիվ տարրերի այնպիսի հարաբերակցության, որտեղ հնարավոր լինի վերջինիս համար հատկացվող միջոցները հասցնել տնտեսագիտորեն հիմնավորված մինիմումի:

Հիմնական ֆոնդերի կառուցվածքում որքան մեծ լինի ակտիվ տարրերի տեսակարար կշիռը, այնքան մեծ կլինի մեկ ռուբլի հիմնական ֆոնդերին ընկնող համախառն արտադրանքը և աշխատանքի արտադրողականության մակարդակը: Այդ ցույց տալու համար համեմատենք Սիսիանի շրջանի Հացավանի և Թաղագյուղի կոլտնտեսությունները, որոնք միատեսակ բնակլիմայական պայմաններում են, ունեն արտադրական զարգացման միևնույն ուղղություն և միմյանցից տարբերվում են հիմնական ֆոնդերի կառուցվածքով[1] (աղյուսակը տե՛ս 87-րդ էջում):

Աղյուսակից երևում է, որ ֆոնդափոխհատուցման ցուցանիշը և աշխատանքի արտադրողականության մակարդակն ավելի բարձր է Հացավանի կոլ-

* Տպագրվում է հարցադրման կարգով—խմբ.

[1] Տվյալները վերցված են կոլտնտեսությունների 1966 թ. տարեկան հաշվետվություններից:



տնտեսությունում, որովհետև հիմնական ֆոնդերի կառուցվածքում ակտիվ տարրերն ունեցել են ավելի մեծ տեսակարար կշիռ:

| Կոլտնտեսություններ | Հիմնական ֆոնդերի կառուցվածքը (տոկոսներով) | | 1 ռ. հիմնական ֆոնդերին արտադրվող համախառն արտադրանքը (ռուբ.) | Մարդ-օրին ընկնող համախառն արտադրանքը (ռուբ.) |
|---|---|---|---|---|
| | ակտիվ մաս | պասսիվ մաս | | |
| Հացավան . . | 9 | 51 | 0,89 | 7,9 |
| Թաղագյուղ . . | 45 | 55 | 0,84 | 5,1 |

Հացավանի կոլտնտեսությունում 1 ռ. հիմնական ֆոնդերին ընկնող համախառն արտադրանքը 5 կոպեկով ավելի է, իսկ աշխատանքի արտադրողականության մակարդակը բարձր է 55 տոկոսով: Անշուշտ, այս տարբերությունները հետևանք են նաև մի շարք այլ կազմակերպական միջոցառումների. բայց ակնհայտ է, որ վերջիններիս մեջ առանձնակի նշանակություն ունի հիմնական ֆոնդերի կառուցվածքը:

Կոլտնտեսությունների էկոնոմիկայի հետագա զարգացմանը զուգընթաց, գյուղատնտեսական արտադրության մեջ բարձրանում է աշխատանքի ֆոնդազինվածությունն ու էներգազինվածությունը, որոնք լայն հնարավորություններ են ստեղծում արտադրության կոմպլեքսային մեքենայացման, բուսաբուծության և, հատկապես, անասնապահության մեջ առաջավոր տեխնոլոգիայի ներդրման համար: Իսկ այստեղ հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է նաև կուտակման արդյունավետությամբ: Արտադրական և ոչ արտադրական կուտակման ու ընթացիկ սպառման ֆոնդերի մեջ առաջնային տեղը պատկանում է կուտակման ֆոնդին, իսկ կուտակման ֆոնդի մեջ՝ հիմնական ֆոնդերի ակտիվ տարրերի ձեռքբերմանը: Հենց դրանով է բացատրվում այն փաստը, որ վերջին տարիներս կապիտալ ներդրումներում զգալի չափով մեծացել են տեխնիկայի գնման համար կոլտնտեսությունների կատարած ծախսերը: Միայն 1957—1966 թթ. հանրապետության կոլտնտեսությունները պետությունից գնել են 49 մլն ռուբլու գյուղատնտեսական տեխնիկա: Դրա շնորհիվ հիմնական ֆոնդերի կառուցվածքում կատարվել են որակական զգալի փոփոխություններ: Այսպես, ուժային և բանող մեքենաների ու սարքավորումների տեսակարար կշիռը 1962 թվականի 9,5 տոկոսից, 1966-ին հասավ 11,6 տոկոսի, մթերատու անասուններինը՝ 19,2-ից՝ 20-ի, իսկ բազմամյա տնկարքներինը՝ 4,4-ից՝ 5,4 տոկոսի: Նույն ժամանակամիջոցում իջել է հիմնական ֆոնդերի համեմատաբար պասսիվ տարրերի տեսակարար կշիռը շենքերի կառուցումների և փոխադրող սարքավորումներինը՝ 53,7-ից՝ 49,5 տոկոսի, բանող անասուններինը՝ 2,2-ից՝ 1-ի:

ՍՍՀՄ-ում գյուղատնտեսության մեքենաշինության համակողմանի զարգացումը հնարավորություն կընձեռի մոտակա տարիներին ավարտելու գյուղատնտեսության արտադրության հիմնական պրոցեսների մեծ մասի կոմպլեքսային մեքենայացումը: Սա նոր նախադրյալներ կստեղծի հիմնական ֆոնդերի կազմի և կառուցվածքի փոփոխության համար: Անընդհատ կավելանա դրա ակտիվ մասի (տեխնիկական միջոցների) և համեմատաբար կիջնի պասսիվ մասի (շենքերի կառուցումների) տեսակարար կշիռը: Իհարկե, սա չի նշանակում, որ ուշադրությունից պետք է վրիպի շենքերի, հատկապես պահեստների ու հրապարակների կառուցումը: Շենքերի պակասը կամ անբավարար վիճակը (որոշ պայմաններում) իջեցնում է արտադրության մակարդակը:

Այժմ, երբ գյուղատնտեսության առջև խնդիր է դրված ինտենսիվացնել արտադրությունը, հիմնական ֆոնդերի առանձին տարրերը պետք է նպաստեն ո՛չ միայն աշխատանքի արտադրողականության աճի բարձրացմանը, այլև արտադրանքի ավելացմանը (յուրաքանչյուր հեկտար հողատարածու-

թյունից)։ Այդ նպատակով անհրաժեշտ է միջոցներ առանձնացնել շինարարության համար։ Ճիշտ է, այդ չափը կարող է փոխել հիմնական ֆոնդերի կառուցվածքը, ազդել մեխանիկական միջոցների տեսակարար կշռի վրա, բայց ապահովել աշխատանքի արտադրողականության արագ աճը ֆոնդազինվածության աճից, որի շնորհիվ կբարձրանա ֆոնդափոխհատուցը։

Հիմնական ֆոնդերի կառուցվածքային պրոգրեսիվ փոփոխությունն ուղեկցվում է որակական մեծ տեղաշարժերով։ Օրեցօր գյուղատնտեսությունն արդյունաբերությունից ստանում է կատարելագործված, տնտեսապես ավելի արդյունավետ տեխնիկա։ Որակական և քանակական փոփոխությունների շնորհիվ այսուհետև ավելի կմեծանա գյուղատնտեսության մեքենա-տրակտորային պարկի հզորությունը։

Գյուղատնտեսության վերելքի, հիմնական ֆոնդերի կառուցվածքային փոփոխության և աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրների հաջող լուծումը մեծ չափով պայմանավորված է արդյունաբերության զարգացմամբ, մեքենաների ու սարքավորումների հաջող մատակարարմամբ, որը կոլտնտեսային արտադրության լրիվ մեքենայացման հիմնական նախապայմանն է։

Ներկայումս մեր երկրի արդյունաբերությունը թողարկում է ավելի քան 500 տեսակի գյուղատնտեսական մեքենա ու մեխանիզմ, որը հնարավորություն կընձեռի մեքենայացնելու գյուղատնտեսական շատ ճյուղեր։

Տեխնոլոգիական քարտերի հիման վրա կատարված հաշվարկների համաձայն ՀՍՍՀ գյուղատնտեսության մեջ մեքենայական պարկը՝ տրակտորների, կոմբայնների և բեռնատար ավտոմեքենաների այսպիսի հաշվեկշիռ է ունեցել.

(1966 թ. վերջին)

| Մեքենաների քանակը | Փաստացի թիվը | Պահանջը | Ապահովվածությունը (տոկոսներով) |
|---|---|---|---|
| Տրակտորներ (15 ձիուժի վերածած) . | 15193 | 25700 | 62 |
| Կոմբայններ . . . . . . . . | 1514 | 2400 | 63 |
| Ավտոմեքենաներ . . . . . . . | 3795 | 5700 | 67 |

Ինչպես ցույց են տալիս աղյուսակի տվյալները, գյուղատնտեսական աշխատանքներն ագրոտեխնիկական ժամկետներում կատարելու համար անհրաժեշտ է մեքենա-տրակտորային պարկն ավելացնել մոտ $1/3$-ով։

Գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացման համար անհրաժեշտ է ունենալ 800 տեսակի գյուղատնտեսական մեքենաներ ու մեխանիզմներ։ Գյուղատնտեսության տեխնիկական բազայի հետագա ամրապնդումը և որակական փոփոխությունները զգալի չափով պետք է ընթանան ունիվերսալ տեխնիկայի ստեղծման ուղիով, որը հնարավորություն կընձեռի նույն միջոցներն արդյունավետ օգտագործել տարբեր արտադրական պրոցեսներում։

Նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրմանը զուգընթաց ավելի մեծ նշանակություն են ստանում հիմնական ֆոնդերի տիպային դասակարգման և կառուցվածքային փոփոխման հարցերը. սակայն այդ գործում դեռևս գոյություն ունեն որոշ թերություններ։

Մեր կարծիքով, դասակարգման գոյություն ունեցող կարգի դեպքում ոչ արտադրական նշանակություն ունեցող հիմնական միջոցների մի խումբ (կուլտուր-կենցաղային, վարչական հիմնարկների շենքեր, կառուցումներ, մարդատար մեքենաներ և այլն) հիմնական ոչ արտադրական ֆոնդեր անվան տակ մտցվում են հիմնական ֆոնդերի մեջ։ Բայց հիմնական և հիմնական ոչ արտադրական ֆոնդերի միջև (սպառողական արժեքների յուրացման և վերարտադրության տեսակետից) կան խոր և էական տարբերություններ։ Հիմնական ոչ արտադրական ֆոնդերն արտադրության ընթացքում անմիջապես չեն սպառվում և ունեն ոչ արտադրողական սպառման ձև։ Մինչդեռ արտադրական հիմնական ֆոնդերն ունեն միայն արտադրողական սպառման ձև։



Ուստի, հիմնական արտադրական և հիմնական ոչ արտադրական ֆոնդերը միմյանց հետ ընդհանուր ոչինչ չունեն ոչ արտադրության պրոցեսում և ոչ էլ դրանից դուրս։

Նկատենք, որ հիմնական ֆոնդերը, նախ՝ արտադրական ֆոնդեր են և միայն դրանք կարող են տրոհվել հիմնական և շրջանառու արտադրական ֆոնդերի։ Ինչպես նկատում է Մարքսը, «միմիայն արտադրական կապիտալը կարող է տրոհվել հիմնական և հոսուն կապիտալի» («Կապիտալ», հ. II, Երևան, 1936, էջ 135)։

Մեր կարծիքով, անհրաժեշտ է հիմնական ֆոնդերի կառուցվածքից առանձնացնել հիմնական ոչ արտադրական ֆոնդերի ամբողջությունը, այն անվանելով «երկարատև սպառման հասարակական ֆոնդեր» կամ «տևական սպառման հասարակական ֆոնդեր»։ Այս փոփոխությունը կնպաստի հիմնական ֆոնդերի պլանավորմանը, կառուցվածքային փոփոխությունների ճիշտ վերլուծությանն ու գնահատմանը։ Այդ ավելի քան անհրաժեշտ է, որովհետև հիմնական արտադրական և հիմնական ոչ արտադրական ֆոնդերն ունեն աճի միանգամայն տարբեր տեմպեր։ ՀՍՍՀ կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների տվյալների համաձայն 1959—1966 թվականներին արտադրական ֆոնդերն ավելացել են 210, մինչդեռ հիմնական ոչ արտադրական ֆոնդերը՝ 280 տոկոսով։ Նշած տարբերությունն արտահայտվում է նաև վերարտադրության պրոցեսում։ Հիմնական ոչ արտադրական ֆոնդերից ամբողջական վերարտադրության համար ամորտիզացիոն մասհանումներ չեն կատարվում։ Ամորտիզացիան այստեղ ունի տնտեսական միանգամայն այլ բովանդակություն։ Այն նախատեսվում է տվյալ օբյեկտների կապիտալ վերանորոգման ծախսերը ըստ ժամկետների հավասարեցնելու համար։ Հիմնական ոչ արտադրական ֆոնդերից կատարվող ամորտիզացիոն մասհանման նորմաները զգալիորեն ցածր են հիմնական արտադրական ֆոնդերի ամորտիզացիոն նորմաներից և դրանց վերարտադրությունը կատարվում է տնտեսության մեջ կենդանի աշխատանքային ծախսումներից գոյացած արժեքի հաշվին։

Հիմնական ֆոնդերի կառուցվածքային փոփոխության հարցերը քննելիս անհրաժեշտ է նկատել, որ հողը նույնպես մտնում է կոլտնտեսությունների արտադրական ֆոնդերի մեջ։ Բայց պրակտիկայում այդպես չի կատարվում՝ հողի գնահատման (դրամական արտահայտությամբ) բացակայության պատճառով։

Ավելի քան մեկ տասնամյակ է սովետական տնտեսագետները զբաղվում են հողի տնտեսական և արժեքային գնահատման հարցերով։ Այս պահանջն ելնում է սոցիալիստական արտադրահարաբերությունների սիստեմում հողի ունեցած տնտեսական դերը գնահատելու անհրաժեշտությունից։ Հողերի հաշվառման գործող սիստեմը չի համապատասխանում սոցիալիստական գյուղատնտեսության մեջ աշխատանքի գիտական կազմակերպման պահանջներին։ Հաշվառման սիստեմի հիմնական թերությունն այն է, որ անհրաժեշտ ձևով չի բացահայտվում առանձին հողատեսքերի որակական տարբերությունը և չի արտացոլում օգտագործելի հողերի համեմատական արժեքը միմյանց նկատմամբ։

Տնտեսագետներն ու հողագետները այն կարծիքին են եղել, որ սոցիալիզմի պայմաններում հողի տնտեսական գնահատումը տեսականորեն անընդունելի է և պրակտիկորեն աննպատակ, քանի որ այն կարող է հանգեցնել բացարձակ հողային ռենտայի և կապիտալիստական հասարակարգին հատուկ այլ տնտեսական կատեգորիաների ընդունման փաստին։ Դժբախտաբար, նման հարցադրումները մինչև այժմ էլ կաշկանդում են սոցիալիզմի պայմաններում հողի տնտեսական գնահատման պրոբլեմի լուծումը. հայտնի է, որ հողի նկատմամբ մասնավոր սեփականության վերացման շնորհիվ ոչնչացվում է բացարձակ հողային ռենտան, իսկ դրանով էլ հողի ապրանք հանդես գալու նյութական հիմքը։ Ուստի, դրա տնտեսական գնահատումը չի կարող պայմաններ ստեղծել մեկի և մյուսի առաջացման համար։ Հողի տնտեսական գնահատումը ենթադրում է, որպես արտադրության միջոցի, սահմանել դրա համեմատական գնահատությունը, ճիշտ որոշել նրա սոցիա-

ման դերը սոցիալիստական հասարակարգի տնտեսական հարաբերություն-ների սիստեմում։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տնտհաշվարկի սկզբունքների կիրառումը հողի գնի նկատմամբ, մեծ հնարավորություններ կստեղծի հազարավոր հեկտար օգտագործելի հողատարածություններ վատնումից պաշտպանելու համար։ Սա առանձնապես կարևոր է մեր հանրապետության համար, որտեղ չափազանց սուղ են օգտագործելի հողատարածությունները։ Տնտեսագիտության կողմից այս պրոբլեմի ճիշտ լուծումը կնպաստի գյուղատնտեսության մեջ հողի օգտագործման արդյունավետության բարձրացմանը և նպաստավոր պայմաններ կստեղծի արտադրական ֆոնդերի կազմում հողի ունեցած տնտեսական դերի ճիշտ գնահատման հարցում։

Հասարակական արտադրության մեջ հողն արտադրամիջոց է ընդհանրապես, իսկ գյուղատնտեսության մեջ՝ հիմնական արտադրամիջոց։ Հողը բնության պարգև լինելով, աշխատանքի արդյունք չէ և չունի արժեք, բայց կապիտալիզմի պայմաններում մասնավոր սեփականություն է, ենթակա է գնման և վաճառքի, հանդես է գալիս որպես ապրանք։ Դրա գինը կապիտալացված հողային ռենտան է։ Սոցիալիզմի ժամանակ հողի մասնավոր սեփականության վերացմամբ, վերանում են բոլոր այն պայմանները, որտեղ հողը կարող է հանդես գալ որպես ապրանք։ Արտադրության մեջ հանդիսանալով համընդհանուր հիմք, իսկ գյուղատնտեսության մեջ՝ որպես հիմնական արտադրամիջոց, հողը նյութական արտադրության վճռական գործոններից մեկն է, որի համար անհրաժեշտ է այն հաշվի առնել տնտեսական հաշվարկի մեջ։ Պրակտիկայում հողի դրամական գնահատման հարցը դժվար իրագործելի է, քանի որ դրան, որպես արտադրամիջոցի, չի տրվում արժեքային արտահայտություն։ Ամեն մի ձեռնարկության բալանսում հաշվարկվում և իրենց արժեքային արտահայտությունն են գտնում արտադրական ֆոնդերի բոլոր տարրերը։

Հողի բացակայությունը բալանսում, հետևապես և հիմնական ֆոնդերի կառուցվածքում, մի կողմից՝ աղճատում է ձեռնարկության աշխատանքի զինվածության ցուցանիշը, մյուս կողմից՝ ձեռնարկությանը զրկում հիմնական միջոցների տնտեսական գործունեության ճիշտ վերլուծություն կատարելու հնարավորությունից։

Մեր կարծիքով, հիմնական ֆոնդերի օգտագործման նպատակով կատարվող վերլուծության քննարկումը հույժ կարևոր հարց է։ Ուստի, տնտեսագիտության կողմից դրանց ճիշտ լուծումը դրական ազդեցություն կունենա կոլտնտեսությունների արտադրության պլանավորման և կազմակերպման միջոցառումների իրականացման վրա։

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Գ. Ս.



# ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՅԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՖՈՆԴԵՐԸ

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ ընթացիկ հնգամյակում խոշոր կապիտալ ներդրումներ են կատարվում, որոնց հաշվին շինմոնտաժային աշխատանքների ծավալի աճի միջին տարեկան տեմպերը 1968—1970 թթ. կազմելու են 12—14 տոկոս։ Կապիտալ շինարարության նախատեսված ծրագիրը հաջողությամբ կենսագործելու համար անհրաժեշտ է լիովին օգտագործել ու մեծացնել շինարարական ինդուստրիայի հիմնական ֆոնդերը, որոնք կառուցող կազմակերպությունների արտադրակարողությունների մեջ գլխավորն ու որոշիչն են։

Սակայն, մեր հանրապետությունում այդ կարևոր խնդրին անբավարար ուշադրություն է նվիրվել, որը շինմոնտաժային աշխատանքների պլանների սիստեմատիկ թերակատարման գլխավոր պատճառներից է։ Ամենից ավելի խոշոր կապալային կազմակերպությունը՝ ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրությունը 1958—1967 թթ. 947,5 մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարեց 96,5 տոկոսով կամ թերակատարեց՝ 34,5 մլն ռուբլով։ Այդ նշանակում է, որ շատ օբյեկտներ և արտադրական կարողություններ ժամանակին չեն գործարկվել։ Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ լիովին չեն օգտագործել հիմնական արտադրաֆոնդերը։ Ահա թե ինչու շինարարական ինդուստրիայի հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման ուսումնասիրման պրոբլեմն ակտուալ նշանակություն է ձեռք բերում, մանավանդ, որ շինարարական ինդուստրիան ու դրա հիմնական ֆոնդերը ժողովրդական տնտեսության այլ բնագավառների համեմատ, ունեն իրենց յուրահատկությունը։

Շինարարական էկոնոմիկային նվիրված գրականության մեջ այդ հարցի առթիվ կան տարբեր առաջարկներ։ Շատ հեղինակներ գտնում են, որ հիմնական ֆոնդերի օգտագործման ցուցանիշներ կարելի է համարել այնպիսիք, որոնցով գնահատվում է շինարարական կազմակերպությունների ֆոնդահագեցվածությունը։ Տվյալ խնդրին նվիրված առավել ընդհանրացված աշխատություն է ՍՍՀՄ պետշինի շինարարական էկոնոմիկայի գիտահետազոտական ինստիտուտինը։ Աշխատության հեղինակներն առաջարկում են ֆոնդերի օգտագործման արժեքային ցուցանիշներ համարել՝ շինարարության ֆոնդատարողությունը, շինարարության և աշխատանքի մեքենազինվածությունը, ֆոնդահատույցի և հիմնական ֆոնդերի շահութաբերության գործակիցները։ Նման մոտեցման հետ չպետք է համաձայնել, քանի որ առաջարկվող ցուցանիշների խումբն իր էությամբ հիմնական ֆոնդերի ընդհանուր պրոբլեմի երեք ինքնուրույն հարցն է բնութագրում։

Ֆոնդատարողությունն ու մեքենազինվածությունը ցույց են տալիս հիմնական արտադրական ֆոնդերով շինարարական կազմակերպությունների հագեցվածության աստիճանը ընդհանրապես և մեքենայացման միջոցներով՝ մասնավորապես։ Հիմնական ֆոնդերի շահութաբերության գործակիցը, հակառակ շինարարության տեսակարար ֆոնդատարողության նախահաշվային արժեքի, որոշվում է շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի իջեցման

ղությունը։ 1967 թվականին ավելի քան 0,35 մ³ շերեփի տարողություն ունեցող մեկշերեփյա էքսկավատորների փաստական արտադրանքը շերեփների տարողության մեկ մ³ դեպքում կազմել է 62,4 հազար մ³ կամ պլանայինի 88 տոկոսը։ Սկրեպերներինը, համապատասխանաբար՝ 5,2 հազար մ³ կամ 94,5 տոկոսը, բուլդոզերներինը՝ 26,4 հազար մ³ կամ 82,5 տոկոսը, սլաքավոր և աշտարակավոր ամբարձիչներինը՝ 0,9 հազար տոննա կամ 90 տոկոսը։

Հայկական ՍՍՀ-ում, մյուս հանրապետությունների համեմատ, բավական ցածր են մեքենաների արտադրական շատ ցուցանիշներ։ Այսպես, շերեփի ավելի քան 0,35 մ³ տարողություն ունեցող մեկշերեփյա էքսկավատորների արտադրանքը Հայաստանում 1966 թվականին կազմել է ընդամենը 60,1 հազար մ³, մինչդեռ Միությունում միջինը՝ 127,5 է եղել, Ուկրաինական ՍՍՀ-ում՝ 147,9։ Սկրեպերներինը, համապատասխանաբար՝ 3,4 հազար մ³, 6,0, 6,7։ Ինչ խոսք, մեր հանրապետության ապառաժային բնահողերն իջեցնում են հողափորիչ մեքենաների արտադրողականությունը, բայց անհրաժեշտ է նշել, որ հիշատակված մեքենաների խմբերի ժամանակի օգտագործման գործակիցը նույնպես ցածր է։ Ոչնչով չի արդարացվում ցածր, ընդ որում, անընդհատ իջնող աշտարակային մեկ ամբարձիչի արտադրանքը, որը չափվում է շահագործման հանձնված բնակելի տարածության քառակուսի մետրերով։

1959 թվականին այդ ցուցանիշը ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության մասշտաբով կազմեց 3500 մ², իսկ 1966 թվականին՝ 1300, մինչդեռ երկրի շատ կազմակերպություններում այն կազմում է ավելի քան 4500—5000 մ²։ Մոսկվայի և Լենինգրադի առաջավոր տնաշինարարության կոմբինատներում այն 20 հազար մ² է։ Շինարարության մեքենաների անբավարար օգտագործման պատճառների բացահայտման համար, մինիստրության տարբեր շինարարության վարչությունների 150 օբյեկտներում մեր կողմից ուսումնասիրվել են հաշվետվության և շինարարական մեքենաների աշխատանքի քրոնոմետրաժային տվյալները։ Դրան առընթեր կազմվել է շինարարական մեքենաների երկու հիմնական խմբերի (հողափորիչ և ամբարձիչ տրանսպորտային) միջին հերթափոխային և տարեկան փաստական շահագործման ռեժիմները։ Փաստական և նորմադրական ռեժիմների համեմատությունից (որն առաջարկել է տնտեսական գիտությունների դոկտոր պրոֆեսոր Ս. Ե. Կանտորերը) կարելի է հանգել այն եզրակացության, որ հերթափոխության ընթացքում էքսկավատորների աշխատանքի զուտ ժամանակը 20 տոկոսով պակաս է, իսկ կազմակերպական բնույթի պարապուրդները՝ 84 տոկոսից ավելի են։ Հայկական ՍՍՀ շինարարական մինիստրության կազմակերպություններում կազմակերպչական բնույթի պարապուրդները կազմում են հերթափոխության ընդհանուր տևողության 30—37 տոկոսը։ Էքսկավատորներն ամենից շատ պարապուրդներ են տալիս տրանսպորտի բացակայության ու անսարքության պատճառով։ Հատկապես անհրաժեշտ է ընդգծել այն հանգամանքը, որ յուրաքանչյուր հերթափոխից հետո տեխնիկական սպասարկման նպատակներով արվող փաստացի ընդմիջումները նորմադրականից 2,3 անգամ պակաս են, իսկ պարապուրդներն (անսարքության հետևանքով) նախատեսվածից 3—4 անգամ շատ են։ Այդ ցույց է տալիս, որ շինարարական մեքենաների պլանային նախազգուշական վերանորոգման գործն անբավարար է։

Ներկա պայմաններում խիստ անհրաժեշտ է դարձել աշտարակավոր ամբարձիչների օգտագործման վերլուծությունը, որովհետև սրանք մոնտաժային ամբարձիչների ընդհանուր թվի 70 տոկոսն են կազմում։ Ըստ քրոնոմետրաժային զննումների միջին տվյալների, պարապուրդները կազմակերպական պատճառներով կազմում են ընդհանուր հերթափոխային տևողության 32—35 տոկոսը։ Ընդ որում, աշտարակավոր ամբարձիչները հիմնականում պարապուրդ են տալիս օբյեկտից օբյեկտ տեղափոխվելիս (9,5—10,8 տոկոսը), աշխատանքի ֆրոնտի (11,9—12,9 տոկոսը), նյութերի բացակայության (16,6—17,3 տոկոսը), մեքենաների անսարքության (21,5—22 տոկոսը) պատճառներով։ Մեքենաների ներհերթափոխային պարապուրդների հետևանքով ընկնում է վերջիններիս արտադրողականությունը, թերակատարվում են աշ-



խատատար պրոցեսների և ծանր աշխատանքների մեքենայացման պլանները։

1967 թվականին հողային աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման մակարդակը հասավ 82,5 տոկոսի, մինչդեռ Միությունում և մի շարք այլ հանրապետություններում այն 95—99 տոկոս էր։ Բետոնի պատրաստմանը, համապատասխանաբար՝ 73,6 և 85—90, կոնստրուկցիաների մոնտաժմանը՝ 90,3 և 93—97 տոկոս։ Հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության կազմակերպությունները վճռական միջոցներ չեն ձեռնարկում մեքենաների պարապուրդները կրճատելու, երկհերթ աշխատանքի անցնելու, տեխնիկական սպասարկումն ու վերանորոգումը բարելավելու, ինչպես նաև մեքենայական պարկի շահագործման ձևերը կատարելագործելու համար։ 1959 թ. ընթացքում էքսկավատորների տեխնիկական պատրաստության գործակիցն իջավ 14,5 տոկոսով, բուլդոզերներինը՝ 11,0, աշտարակավոր ամբարձիչներինը՝ 14,0, ավտոմոբիլային ամբարձիչներինը՝ 8,5 տոկոսով։ Այս երևույթի հիմնական պատճառներից մեկը պլանային նախազգուշական վերանորոգման դրվածքի մեծ թերություններն են։ Մի շարք կազմակերպություններում այդ սիստեմի գոյությունը ձևական է։ Չնայած մեքենաների վերանորոգման գրաֆիկի առկայության, դրանք, փաստորեն, վերանորոգվում են, երբ լրիվին կորցնում են աշխատունակությունը։ Անքաթող է արված նաև մեքենաների տեխնիկական սպասարկումը։

Շինարարները գտնում են, որ մեքենաներն աշխատունակ վիճակում պահելու կարևոր միջոցը դրանց վերանորոգումն է։ Այդ պատճառով էլ վերանորոգումների միջև ընկած ժամանակահատվածում մեքենաների խնամքը լրովին վերավստահված է մեքենավարներին, որոնք այն կատարում են անկանոն և անորակ։ Տեխնիկական խնամքի այսպիսի անհոգի վերաբերմունքի հետևանքով մեծանում է վթարային վերանորոգումների թիվը, կրճատվում նրա ցիկլը, ավելի շատ պահեստամասեր են ծախսվում։ Այս ամենի հետ մեկտեղ մինիստրությունը չունի վերանորոգման համապատասխան բազա, անբավարար է պահեստամասերի մատակարարումը, վատ են գործադրվում գործող արտադրական կարողությունները։

Վերանորոգման բազայի զարգացմանը խանգարող ցայտուն վկայությունն է մեքենայացման միջոցների և վերանորոգման գործարանների ու արհեստանոցների արդյունաբերական արտադրաֆոնդերի արժեքների աճի դինամիկայի անհամամասնությունը։ 1959 թվականի համեմատությամբ, մեքենայացման միջոցների արժեքի 5,5 անգամ աճի դեպքում վերանորոգման բազայի հիմնական ֆոնդերի արժեքը մեծացավ ընդամենը 163 տոկոսով։ Դրա հետևանքով ոչ միայն չի բավարարվել մեքենաների վերանորոգման անհրաժեշտ պահանջը, չի ապահովվել տեխնիկական մատակարարումը, այլ, ընդհակառակը, սիստեմատիկորեն վատացել է։ Միաժամանակ, մինիստրությունը տարեցտարի չի կատարում վերանորոգման բազայի ստեղծման կապիտալ ներդրումների պլանը։ 1967 թվականին, օրինակ, Գագարինի ավանում ձախողվեց էքսկավատորների և ամբարձիչների վերանորոգման գործարանի գործարկումը։

Մեքենաների օգտագործման արդյունավետության բարձրացմանը օգնում են մեքենայական պարկի շահագործման կազմակերպական ձևերը և շինարարական մեքենաների աշխատանքի հաշվարկային սիստեմը։ Մեքենայական պարկի շահագործման ամենից ավելի տարածված ձևը շինարարական կազմակերպությունների մեքենաները վարձակալության տվող մեքենավարձույթատու բազաների սիստեմն է։ Այդպիսի բազաներ կան գրեթե բոլոր տրեստներում, որի հետևանքով էլ հենց ցրված է մեքենայական տեխնիկան։ Իսկ որոշ կազմակերպություններում խոշոր շինարարական մեքենաները նույնիսկ գտնվում են շինարարական վարչությունների բալանսում։ Մեքենայական պարկի շահագործման այս ձևը վատթարացնում է դրանց օգտագործումն ու վերանորոգումը։

Հաշվումները ցույց են տալիս, որ մեքենայական պարկի խոշորացման շնորհիվ կարելի է 10 տոկոսով ավելացնել նրա օգտագործումը։ Ավելի մեծ արդյունքի կարելի է հասնել (15—20 տոկոս) մեքենայացման տրեստներում

և վարչություններում մեքենաների համակենտրոնացման ճանապարհով մասնագիտացված պարկ ստեղծելով։

Ներկայումս Միությունում կան մեքենայացման 82 տրեստ և ընդհանուր շինարարական տրեստների մեջ մտնող 280 վարչություն, ուր կենտրոնացված է շինարարական հիմնական մեքենաների մոտ 65 տոկոսը։ Սակայն տրեստներ ու վարչություններ հիմնադրելիս անհրաժեշտ է ամեն առանձին դեպքում նկատի առնել տեխնիկա-տնտեսական խոր վերլուծության արդյունքները և յուրաքանչյուր հանրապետության ու շրջանի աշխարհագրական յուրահատուկ պայմանները։ Ելնելով դրանից, մեր հանրապետությունը բաժանվել է շինարարական 6 գոտու—Երևանի, Լենինականի, Կիրովականի, Սևանի, Իջևանի և Ղափանի։ Ընդ որում, առաջիկա տարիների ընթացքում, շինմոնտաժային աշխատանքների գրեթե 40 տոկոսը կատարվելու է Երևանի գոտում, 16-ը՝ Լենինականի, 17-ը՝ Կիրովականի, 13-ը՝ Սևանի, 4-ը՝ Իջևանի և 10-ը՝ Ղափանի։ Հաշվի առնելով յուրաքանչյուր գոտու, ինչպես և դրա կազմի մեջ մտնող շինարարական տեղամասերի առանձնահատկությունները, Հայկական ՍՍՀ-ում 1968—72 թթ. ընթացքում անհրաժեշտ է ստեղծել շինմեքենայացման երեք տրեստ (Երևանի, Կիրովականի, Լենինականի գոտիներում) և յուրաքանչյուր տրեստի կազմում հողափորիչ մեքենաների, աշտարակավոր և ինքնագնաց ամբարձիչների մասնագիտացված վարչություններ։ Շինարարական մյուս գոտիներում, կենտրոնացված շինարարական հանգույցների բացակայության պատճառով, նպատակահարմար է հանրաշինարարական տրեստների կազմում ստեղծել մեքենայացման մասնագիտացված վարչություններ։ Հետագայում, երբ կմեծանան ու կհամակենտրոնանան շինմոնտաժային աշխատանքները, մասնագիտացված վարչությունների բազայի վրա կստեղծվեն շինմեքենայացման տրեստներ։ Շինարարական մեքենաների օգտագործման բարելավման համար կարևոր գործոն է դրանց շահագործման հաշվարկային սիստեմը։ Այդ գործոնի նշանակությունը մեծանում է շինարարական մեքենաների առաջարկվող համակենտրոնացմամբ։

Հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման վատթարացումն հանգեցնում է շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի բարձրացմանը։ Եթե 1959 թվականին, պլանի համեմատությամբ, փաստական ինքնարժեքի մեծացումը տեղի էր ունենում նյութերի արժեքի (ընդհանուր ծավալի 78 տոկոսը) և մեքենաների ու մեխանիզմների շահագործման ծախսերի (16,6 տոկոսը) հաշվին, ապա, 1966 թվականի թանկացումը հիմնականում կատարվել է մեքենաների ու մեխանիզմների շահագործման ծախսերի (61,4 տոկոս) և բանվորների հիմնական աշխատավարձի (38,6 տոկոս) հաշվին։

Մեքենաների ինտենսիվ օգտագործման կարևոր պայմանն է մոնտաժի, դեմոնտաժի, օբյեկտից օբյեկտ վերաբազավորման տևողության կրճատումը։ Այսպես, ԲԿՍՄ—5 աշտարակավոր ամբարձիչների մոնտաժի ու դեմոնտաժի վրա, 185 մարդ-ժամ նորմադրականի դեպքում, փաստորեն, ծախսվում է մոտ 400 մարդ-ժամ, Մ—3—5—5 ամբարձիչների վրա, համապատասխանաբար՝ 355 և 620 մարդ-ժամ, Ս—419-ի վրա՝ 298 և 530 մարդ-ժամ։ Քրոնոմետրաժային տվյալները ապացուցում են, որ ժամանակի կորստի հիմնական պատճառներն են՝ շինարարական հրապարակի անսարքությունը (բոլոր պարապուրդների 25—28 տոկոսը), էլեկտրաէներգիայի և օժանդակ մեխանիզմների (19—25 տոկոսը), յուրահատուկ տրանսպորտի միջոցների (20—23 տոկոսը), օժանդակ նյութերի բացակայությունը և մեքենաներում առաջացած անսարքությունները ժամանակին չվերացնելը (16—18 տոկոսը), բանվորական կադրերի անբավարար որակավորումը (5—6 տոկոսը)։ Ինչպես տեսնում ենք, հիմնական պատճառները կազմակերպչական են, որոնց վերացմամբ կարելի կլինի 3—5 տոկոսով բարձրացնել մեքենայական պարկի արտադրողականությունը։

Շինարարության մեջ ֆոնդահատույցի բարձրացման գործում մեծ դեր ունի մոնտաժավորվող շենքի կոնստրուկտորական լուծումը։ Քանի որ խոշոր տարրային շենքերի ժամանակակից նախագծերում մեծ տարբերություններ կան տարրերի կշիռների միջև, բավական ցածր է մոնտաժային ամբարձիչների բեռնունակության օգտագործումը։ Ժամանակակից նախագծերի լուծումներում ամբարձիչների բեռնունակության օգտագործման գործակիցը չի անցնում 0,25—0,29։



Այս ամենի հետ մեկտեղ, ռեալ հնարավորություն կա ամբարձիչների բեռնունակության օգտագործման գործակիցը հասցնելու 0,7-ի։ Դրանով ամբարձիչների տարեկան արտադրողականությունը կբարձրանա միջին հաշվով 2,2 անգամ, դրանց շահագործման ընդհանուր ինքնարժեքը կիջնի 40 տոկոսով, իսկ ամբարձիչների ձեռք բերման համար կատարվող տեսակարար կապիտալ ներդրումներինը՝ 2 անգամ։

Հաշվումները ցույց են տալիս, որ հիշատակված հարցերի լուծումը հնարավորություն կընձեռի 23—25 տոկոսով ավելացնելու շինարարության ֆոնդահատույցը, որի շնորհիվ առանց նշանակալի կապիտալ ներդրումների կաճի շինարարական ինդուստրիայի արտադրողականությունն ու կարողությունը։

Շինարարության մեջ մեքենաների ու մեխանիզմների անբավարար օգտագործման պատճառներից մեկն էլ այն է, որ պակաս ուշադրություն է նվիրվում մշտական ու բարձրորակ կադրերի պատրաստմանը։ Մի շարք կառույցներում մեքենաները վարում են մասնագիտական կրթություն չունեցողները, չկա մշտական կադրերի կազմ։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը վերջերս քննարկելով երկրում կապիտալ շինարարությունը կադրերով ապահովելու հարցը, այդ գործի բարելավման համար միջոցառումներ մշակեցին։

Ընթացիկ հնգամյակի և հետագա տարիների կապիտալ շինարարության պլանները հաջողությամբ իրագործելու համար կուսակցական և արհմիութենական, կառուցող կազմակերպությունները պետք է լայնորեն տարածեն առաջավոր փորձը, ներդնեն աշխատանքի կազմակերպման գիտական մեթոդները, շինարարության մեջ մեքենայացման մակարդակի սիստեմատիկ բարձրացման միջոցով խիստ կրճատեն ձեռքի աշխատանքը, առավել չափերով օգտագործեն մեքենաներն ու փոխադրական միջոցները։

ՏԵՐ-ԻՍՐԱԵԼՅԱՆ Ա. Վ.



## ԱՀԱ ՄԵՐ ՆՈՐ ԳՅՈՒՂԸ

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է Հայաստանի գյուղը: Գյուղի աշխատավորները լիովին հաղորդակից են մեր մեծ հայրենիքի կուլտուրական կյանքին: Այսօրվա գյուղն ընդհուպ մոտենում է առաջավոր քաղաքների հոգևոր պահանջներին: Այս առումով խոշոր դեր են խաղում գյուղական կուլտուրայի տները, ակումբները:

Մեր հանրապետությունում գործում են գյուղական 800 ակումբ և կուլտուրայի տուն, որոնք վաղուց դարձել են աշխատավորների ամենացանկալի վայրը:

Արդ, այժմ ծանոթանանք դրանցից երկուսին:

### ԵՐԲ ՄԹՆՇԱՂՆ Է ԻՋՆՈՒՄ ԼԵՌՆԵՐՈՒՄ...

*Երեկո է: Դադրած գյուղն իր լույսերն է վառել մթնշաղի դեմ. ու գալիս է գյուղը, գալիս է հեռու և մոտիկ հանդամասերից, գալիս է՝ ողջ օրը բանած մեխանիզատորի, դաշտավարի քայլերով և ուղղվում դեպի կուլտուրայի տուն: Գյուղը մոռանում է այստեղ հոգնությունն ու ժպտում սրտանց...*



*Մինչև ներկայացման սկսվելը բավական ժամանակ կա: Ճեմասրահը լի է մարդկանցով. նրանք դիտում են հետաքրքրական ցուցափեղկերը.* Ինչի համար է պայքարում կոլտնտեսությունը 1968 թվականին *ընդհանուր խորագրի տակ զետեղված թվերն արտացոլում են տնտեսության պարտավորությունները: Ահա և* Մեր գյուղը հիսուն տարում, Ինչի համար է պայքարում կոլտնտեսությունը նոր հնգամյակում, Հայաստանը հնգամյակի տարիներին, Ինչ է տալիս Հայաստանի արդյունաբերությունը 1968 թվականին *և այլ ցուցափեղկեր: Ճեմասրահի ռազմա-հայրենասիրական անկյունի մոտ 200 լուսանկարները նվիրված են մեծ հայրենականում նահատակված հայրենակիցներին:* Մեր փառոսները *պատվո տախտակից ժպտադեմ նայում են հողի աշխատավորն ու հմուտ մեքենավարը: Դիտում են գյուղի մարդիկ այս բոլորը, կարդում լոզունգները ու կարծիքներ փոխանակում... Լավ է, երբ այդ ամենի մեջ դու էլ մաս ունես, միշտ էլ քո ջանքերն ես համատեղել աշխատանքային եռուզեռում ու երեկոյան գալիս ես մասնակցելու հետաքրքրական միջոցառումների, հանդիպումների...*

*Հնչում է առաջին զանգը, երկրորդը, երրորդը... Ճեմասրահում արդեն ոչ ոք չկա: 600 տեղանոց դահլիճը լեփ-լեցուն է: Վերջին գործողությունից հետո երբ փակվեց վարագույրը, բուռն ծափահարությունները երկար ժամանակ չէին լռում: Այդպես է վարձատրում Գյուղն ամեն անգամ իր շնորհալի դերասաններին, որոնք այդ օրը բեմադրում էին Լ. Մանվելյանի* Խորթ *մայրը ողբերգությունը:*

*Ներկայացումից հետո դերակատարները հավաքվեցին կուլտուրայի տան*



*դիրեկտորի առանձնասենյակում: Միջահասակ է դիրեկտոր Հրանտ Բաբաս-*
*յանը, գործունյա, մազերի մեջ ճերմակն իր թելերն է գցել, բայց նա դեռ*
*երիտասարդ է, աշխույժ, ստեղծագործելու և նախաձեռնելու եռանդով լի: Նա*
*շնորհավորում է թատերական ինքնագործ խմբի անդամներին և սկսվում է*
*ներկայացման թռուցիկ քննարկումը: Կարճ, ամփոփ, ավելի մանրամասն*
*կխոսեն վաղը. կխոսեն, կվիճեն, կքննադատեն, կվերհանեն թերությունները,*
*որ հաջորդ անգամ դրանք քիչ լինեն:*
*— Ի՞նչ կասես Վոլոդյա,—վերջում հարցնում է Հրանտ Բաբասյանը, երբ*
*խաղացողներից յուրաքանչյուրին արել էր իր դիտողությունը: Բարձրահասակ*
*է Վոլոդյա Ծատուրյանը, դեմքը՝ կնճռոտ: 20 տարի է, ինչ խաղում է նա:*
*— Մեր ինքնագործ խումբը բավականին առաջ է գնացել, լավ են խա-*
*ղում. միայն դեռևս շատ աղքատ է բեմի ձևավորումը: Չէ՞ որ մեր հանդիսա-*
*տեսի ճաշակն առաջվանը չէ:*
*Այնուհետև խոսում են Ջուլիետան, Մարուսյան, Սիրուշը...*



*Առավոտյան, երբ ամենքը գնում են դաշտ՝ աշխատանքի, ակումբը խա-*
*ղաղ է և ավելի հեշտ է ամեն ինչ դիտել, տեղեկանալ: Ճեմասրահի երկար սե-*
*ղանի վրա խնամքով շարված են թերթերն ու ամսագրերը: Ընդհանուր լռու-*
*թյունը խախտում են դաշնամուրի ստեղներից պոկվող հնչյունները, որ գալիս*
*են բեմի խորքից: Ահա և խաղասենյակները:*
*Հրանտ Բաբասյանը պատմում է, որ խորհուրդը որոշել է հանդիպում*
*կազմակերպել կարտոֆիլագործ Տիգրան Ավալյանի հետ, որն անցյալ տարի*
*հեկտարից ստացել է 350 ցենտներ կարտոֆիլ:*
*— Թող պատմի իր հաջողությունների մասին, իր առաջավոր փորձը հա-*
*ղորդի բոլորին: Այսպիսի միջոցառումներ հաճախ ենք կազմակերպում. հան-*
*դիպումներ կոլտնտեսային արտադրության առաջավորների, պատերազմի,*
*հեղափոխության վետերանների, գյուղի առաջին կոմերիտականների հետ...*
*Հետաքրքրական թեմատիկ երեկոներին, վիկտորինաներին, զրույց-զեկու-*
*ցումներին մասնակցում են շատ աշխատավորներ:*
*Այնուհետև մեծ ոգևորությամբ Հրանտ Բաբասյանը պատմում է կուլտու-*
*րայի տան ինքնագործ խմբերի մասին, այդ խմբակներում ընդգրկված երի-*
*տասարդները հարկ եղած դեպքում դերասաններ են, շնորհալի երաժիշտներ,*
*երգիչներ, իսկ երբ պահանջվում է՝ նաև լավ ագիտատորներ: Աշխատանքում*
*էլ նրանք առաջավոր են, կազմակերպող, իրենց օրինակով վարակող:*
*Թատերական ինքնագործ խումբը միայն անցյալ տարի բեմադրել է վեց*
*նոր պիես: Հարուստ է նաև ժողովրդական գործիքների անսամբլի խաղացան-*
*կը: Երգի-պարի անսամբլն անցյալ տարի մասնակցել է ինքնագործունեու-*
*թյան շրջանային փառատոնին (նվիրված Մեծ Հոկտեմբերի 50-ամյակին) և*
*առաջնություն շահելով եկել Երևան, մասնակցել նախ՝ հանրապետական ստու-*
*գատեսին, ապա՝ եզրափակիչին և արժանացել մրցանակի:*
*— Վերջին մի քանի տարիների կուլտուր-մասսայական լավ աշխատանք-*
*ների համար,— շարունակում է Բաբասյանը,—մեր կուլտուրայի տանը շնորհ-*
*վեց* Գեղազանց կուլտուրայի տուն *պատվավոր կոչումը, այն արժանացավ*
*նաև փոխանցիկ դրոշի և 500 ռուբլի պարգևի. խորհրդի նախկին նախագահ*
*Իվան Թոփչյանը, քիմիայի խմբակի ղեկավար, հանրապետության վաստա-*

կավոր ուսուցիչ Խաչիկ Ինանցը, գյուղատնտեսության խմբակի ղեկավար Լերմոնտ Բալյանը, զոոտեխնիկայի խմբակի ղեկավար Մուշեղ Ասիլբեկյանը գերազանց աշխատանքի համար պարգևատրվել են ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության և կուլտուրայի աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեի պատվոգրերով: Կատարողական վարպետության համար պատվոգիր է ստացել նաև երգի-պարի անսամբլի գեղարվեստական ղեկավար Վալյաթ Առաքելյանը:

Իսկ իր մասին լռում է Բաբայանը: Նա արժանացել է ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության և կուլտուրայի աշխատողների կենտրոնական կոմիտեի պատվոգրին:

— Մեր կոլեկտիվի աշխատասիրության, համերաշխության, բարձր պատասխանատվության արդյունք են մեր հաջողությունները: Ութերորդ տարին է, ինչ աշխատում եմ այստեղ: Հիշելու և պատմելու շատ բան կա:

Եվ պատմում է: Ի՞նչ խոսք, դժվար է եղել այսօրվա կոլեկտիվն ստեղծելը, այսպիսի հաջողությունների հասնելը: Առաջին հերթին այստեղ ընտրվել է կուլտուրայի տան խորհուրդը: Իր շուրջը համախմբելով շնորհալի երիտասարդների ու աղջիկների, Հրանտ Բաբայանը գործել է նրանց օգնությամբ, նրանց հետ մեկտեղ: Ամսվա, եռամսյակի, մեկ տարվա աշխատանքային պլանները կազմելիս խորհրդին հուզող առաջին հարցը միշտ էլ լինում է աշխատավորների հանգստի խելացի, նպատակային կազմակերպումը: Այդ նույն նպատակին են ծառայում նաև պարբերաբար գործող խմբակները (կար ու ձևի, երաժշտական և այլն), կուլտուրայի համալսարանը: Գյուղում կազմակերպվող միջոցառումներն անց են կացվում նաև անասնապահական օբյեկտներում, դաշտերում, իսկ ամռանը՝ յայլաղներում, ուր այդ ժամանակ տեղաբաշխվում է տնտեսության հիմնական աշխատուժը. այնտեղ գործող ակումբներին ևս սպասարկում է կուլտուրայի տունը:

1968 թվականին թատերական խումբը բեմադրել է երկու ներկայացում. այժմ պատրաստում է Ա. Պապայանի՝ Աշխարհն, այո՛, շուռ է եկել կոմեդիան:

— Եթե մի լավ ռեժիսյոր ունենայինք, շատ գոհ կլինեինք: Ձեզ չի՞ պատահել, ամեն ինչ արել, բոլոր մթերքներն ու համեմունքներն ապահովել եք, բայց ճաշն անհամ է ստացվել և հետո, ուտելիս միայն, զգացել եք, որ աղը պակաս է: Ա՛յ, այդպես էլ մենք: Շատ հաճախ զգում ենք հմուտ մի ռեժիսյորի, սովորեցնողի, շտկողի կարիքը.—խոստովանում է Բաբայանը:

Նրան կլանում են օրվա հոգսերը, կոլտնտեսականների հանգիստը կազմակերպելու նորանոր ձևերի որոնումները...



Երեկո է. գյուղն իր լույսերն է վառել մթնշաղի դեմ: Ու գալիս է գյուղը, հավաքվում կուլտուրայի տանը, որի դռները միշտ բաց են, սրահները՝ մարդաշատ. գալիս է ուրախանալու, հանգստանալու, մոռանալու օրվա խոնջենքը:

«Լենինյան ուղիով» ամսագրի կոլեկտիվ թղթակից՝
Շամշադինի շրջանային «ԱՅԳԱԲԱՑ» թերթի աշխատակիցներ
ԶԻԼԻՆԳԱՐՅԱՆ Յ. Ի., ԱՍԻԼԲԵԿՅԱՆ Ս. Հ.

# ԱՅՍՏԵՂ ԵՆ ՀԱՆԳՍՏԱՆՈՒՄ ԱՅԳԵԶԱՐԴՑԻՆԵՐԸ

Հերոսների գյուղ—այսպես են կոչում Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղը. հիրավի, Փարիզյան կոմունայի անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոլտնտեսությունում կան անվանի խաղողագործներ ու պտղաբույծներ, բանջարաբույծներ ու անասնապահներ: Աշխատանքային մեծ հաջողությունների հասած կոլտնտեսականները սիրում են լավ հանգստանալ, բովանդակալից անցկացնել աշխատանքից ազատ ժամանակը: Ահա այդ նպատակին է ծառայում Այգեզարդի կուլտուրայի տունը, որի գործունեությունը սերտորեն կապված է կոլտնտեսության կյանքին: Կուլտուրայի տան խորհրդի անդամները՝ գյուղսովետի գործկոմի նախագահ Թ. Հակոբյանը, կուսկազմակերպության քարտուղար Վ. Մեսրոպյանը, կոլտնտեսության նախագահ Հ. Սարգսյանը, անվանի բրիգադավար Ժ. Սահակյանը, մանկամսուրի վարիչ Վ. Խաչատրյանը, կոլտնտեսական Վ. Աղագյուլյանը, գլխավոր գյուղատնտես Դ. Պետրոսյանը, Է. Զոհրաբյանը և կուլտուրայի տան դիրեկտոր Հ. Մանուկյանն ամեն ինչ անում են՝ բազմազան միջոցառումներով ավելի հետաքրքրական դարձնելու համագյուղացիների հանգիստը: Նրանք բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները:

Ավելի քան քսան տարի է, ինչ կուլտուրայի տան դիրեկտորն է Հակոբ Մանուկյանը. միշտ պրպտող ու նախաձեռնող, միշտ նորը, առաջավորը ընկալող: Մեր կուլտուրայի տունը և նրա դիրեկտորը բազմիցս արժանացել են ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության մրցանակներին և դրամական պարգևների: 1961 թվականին Հ. Մանուկյանը մասնակցեց Մոսկվայում կայացած կուլտուրայի աշխատողների համամիութենական հավաքին և պարգևատրվեց ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության և ՀԱՄԿԽ-ի պատվոգրով: Կուլտուր-լուսավորական աշխատանքի հանրապետական գիտա-մեթոդական կաբինետը 1964 թվականին հրատարակեց առանձին բրոշյուր Կուլտուրայի տունը քայլում է կյանքի հետ խորագրով: Լավագույն աշխատանքի համար 1965 թվականին այն պարգևատրվեց Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության և ՀԱՄԽ-ի պատվոգրով, նվաճեց փոխանցիկ դրոշը և արժանացավ 500 ռուբլի պարգևի: 1967 թվականին այն արժանացավ Գերազանց աշխատանքի, իսկ Հ. Մանուկյանը՝ Կուլտուր-լուսավորական աշխատանքի գերազանցիկի կոչման: Շրջանային «Արտաշատ» թերթը բազմիցս լուսաբանել է կուլտուրայի տան հանրօգուտ գործունեությունը:

Կուլտուրայի տունը զգալի գործ է կատարել ՍՄԿԿ XXIII համագումարի և կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումների պրոպագանդման, առաջավորների փորձի մասսայականացման, հին ծիսակատարություններին նոր բովանդակություն տալու, աշխատավորների կուլտուրական հանգիստն ավելի հետաքրքրական դարձնելու ուղղությամբ:

Կուլտուրայի տանը կազմակերպված է գյուղին նվիրված թանգարան, ուր ցուցադրված են հին Դարղալուն և նոր Այգեզարդը: Գյուղի մակետի վերև փակցված են բարձրագույն ուսումնական հաստատություններն ավարտած 109 տեղացիների լուսանկարները: Հենց այս ցուցափեղկի մոտ են կազմակերպվել Բուհերն ավարտածները, Մեր գյուղի անվանի մարդիկ մեծարման ու հանդիպման երեկոները: Այգեզարդցիներն իրոք հպարտանում են այգե-

վարդցի գիտնականներով: Կուլտուրայի տան խորհրդի նախաձեռնությամբ կազմակերպվել է **Մեր գիտնականները** թեմայով երեկո:

Հուզմունքով է դիտվում Մեծ հայրենականում հանուն հայրենիքի ազատության ու անկախության ընկած այգեզարդցիներին նվիրված ցուցափեղկը: Ամեն տարի մայիսի 7—9-ը կազմակերպվում է հիշատակի երեկո: Այդ երեկոները մեծ ազդեցություն են գործում մասնակիցների, հատկապես երիտասարդների վրա: 1967 թվականին կայացած այդպիսի մի երեկոյի խարկով քաղաքից հրավիրվել էին այն ռուս ընկերները, որոնք գտել ու հողին էին հանձնել Հարազատ քաղաքի ազատագրման համար զոհված այգեզարդցի Աղամ Թևոսյանի դիակը:

Ուշագրավ են նաև **Մեր գյուղի հերոսները, Մեր շքանշանակիրները** ցուցափեղկերը, ուր փակցված են սոցիալիստական աշխատանքի հերոսներ, Լենինի շքանշանակիրներ՝ Անդրանիկ Մուրադյանի, Մարիամ Ասլանյանի, Սիսե Կարապետյանի, Պայծառ Հովհաննիսյանի, Փեփրոնե Գրիգորյանի և Ռոզա Ստեփանյանի նկարները:

Երբ կուլտուրայի տունը նախապատրաստվում էր նշելու ՍՍՀՄ զինված ուժերի 50-ամյակը, այդ տոնին նվիրված ցուցափեղկը ձևավորելու համար խորհրդի անդամները նամակներ ուղարկեցին այն բոլոր զորամասերին, ուր ծառայում են այգեզարդցիները: Ստացվեցին շատ լուսանկարներ: Կուլտուրայի տան խորհուրդը միաժամանակ շնորհավորական հեռագրեր ուղարկեց այդ զորամասերի հրամանատարներին ու քաղաշխատողներին:

Կուլտուրայի տան սենյակներից մեկում գործում է հեղափոխության թանգարանը: Այստեղ ցուցադրվող լուսանկարները, ֆոտոփաստաթղթերը վերհանում են գյուղի ու շրջանի հեղափոխական անցյալը. ահա գյուղի առաջին հեղկոմի նախագահ Մարիամ Խաչատրյանը, որին դաժանաբար սպանել են դաշնակ մաուզերիստները: Գյուղ այցելած ուկրաինացի բանաստեղծ Վիկտոր Կուզմենկոն հետևյալ տողերն է նվիրել հերոսուհուն.

Կանգնել եմ ահա այն պատի առաջ,
Որտեղից, Մարիա՛մ, դու վերջին անգամ
Տեսար արևի լույսը ճառագած
Ու ոսոխներիդ՝ նենգ ու չարակամ:
. . . . . . . . .
Ես՝ ուկրաինացի պոետս, ահա՛,
Եկել եմ գյուղը քո հայրենական
Եվ խոնարհվելով սուրբ շիրիմիդ վրա,
Քեզ երգ եմ ձոնում՝ որպես հուշարձան...

Կուլտուրայի տանը կից գործում են գիտաաթեիստական համալսարանը, երիտասարդ մայրերի դպրոցը. կազմակերպվել է նաև ռազմա-հայրենասիրական դպրոց: Հատկապես հետաքրքրական են անցնում կոլտնտեսականների մեծարման երեկոները:

Այս միջոցառումներով, իհարկե, չի սահմանափակվում կուլտուրայի տան գործունեությունը: Կազմակերպվել են երեկոներ՝ **Միլիոններ ստեղծողները, Քառորդ դար մանուկների հետ, Սարերի սրնգահարները, Ոսկե ձեռքեր, Զինվորի հիսուն տարվա փայլը, 50-րդ Հոկտեմբերը,** ինչպես նաև **Բարի երթ, Բարի վերադարձ** և բազմաթիվ այլ թեմաներով:



Կուլտուրայի տան գործունեությունն ավելի է աշխուժանում, հատկապես, գարնան-դաշտային աշխատանքների, գյուղատնտեսական կուլտուրաների մշակության և բերքահավաքի ժամանակ: Կուլտուրայի տան խորհրդի ուժերով կազմակերպվում են ագիտացիոն-մասսայական աշխատանքներ, լույս են տեսնում «Կայծակ» թերթիկներ և գյուղական պատի թերթը:

Կուլտուրայի տանը կից կազմակերպված երգի-պարի, թատերական ինքնագործ խմբակների ելույթները մեծ հաճույք են պատճառում ո՛չ միայն այգեզարդցիներին, այլև հարևան գյուղերի աշխատավորներին: Նրանք համերգներ ու ներկայացումներ են տվել շրջանի 24 գյուղերում: Ստուգատեսների ժամանակ այդ ինքնագործ խմբերը միշտ գրավում են պատվավոր տեղեր:

Կանոնավոր են գործում նաև շախմատի, շաշկի, վոլեյբոլի, բասկետբոլի, ֆուտբոլի, կար ու ձևի, սկսնակ նկարիչների, ֆոտոսիրողների և այլ խմբակներ, որոնցում ընդգրկված են գյուղի մոտ 200—250 երիտասարդներ:

— Ոսկե ձեռքեր ունի մեր Հակոբը,— ասում է կոլտնտեսության նախագահ Հմայակ Սարգսյանը,— գյուղի ամբողջ ցուցադրական ագիտացիան նրա ձեռքերով է շունչ առնում:

Կուլտուր-լուսավորական աշխատողների սեմինարներն անցկացնում ենք այս օրինակելի կուլտուրայի տանը, որի աշխատանքի փորձը մասսայականացվում է ամբողջ շրջանում,— ասում է շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի վարիչ, կուլտուրայի վաստակավոր գործիչ Աղասի Սաֆարյանը:

Ամեն օր որևէ հետաքրքրական բան է կազմակերպվում այս ակումբում:

Երբ իջնում է երեկոն, գյուղում ամենից պայծառ վառվում են Այգեզարդի հյուրընկալ կուլտուրայի տան լույսերը, հրապուրում, կանչում և սկսվում է բովանդակալից ու հետաքրքրական մի նոր միջոցառում:

ՍԱՀԱԿՅԱՆ Ն. Գ.
«Արտաշատ» թերթի խմբագիր

## ԳԻՐՔԸ ԲՈԼՈՐԻՆ

**Ինչպես հայտնի է, մեր հանրապետությունում գործում են մոտ 3000 գրադարան՝ 25 միլիոն գրքային ֆոնդով: Դրանցից մեկի՝ վերջերս «Հանրապետության լավագույն գրադարանի» դիպլոմին արժանացած գրադարանի մասին է պատմում վարիչը՝ Ցոլակ Հասրաթյանը:**

Արտաշատն այսօր մեր ծաղկող քաղաքներից մեկն է դարձել: Իսկ այն երբեմնի Ղամարլու գյուղն է, որն ուներ մի գրադարան: Այժմ Արտաշատի շրջանային գրադարանը գրքի ու կուլտուրայի ճանաչված օջախներից է: Լինելով շրջանի ամենամեծ գրադարանն ու գրադարանային ցանցի մեթոդական աշխատանքի կենտրոնը, այն կարևոր դեր է խաղում աշխատավորության կուլտուրական սպասարկման բնագավառում:

Այստեղ են գալիս ոչ միայն շրջկենտրոնի, այլև մոտիկ ու հեռավոր գյուղերի ընթերցողները—մեխանիզատորներ ու կոլտնտեսականներ, բանվորներ ու ծառայողներ, դպրոցականներ ու հեռակա կարգով ուսանող երիտասարդություն, գյուղերի գրադարանավարներ:

Ճիշտ է, գրադարանի շենքը փոքր է ու խիստ անհարմար, բայց նրա գրքային ֆոնդը հասնում է 55 հազարի (հայերեն և ռուսերեն)։ Վաղուց արդեն զգալի է ընթերցասրահի փոքրությունը։ Խիստ մեծացել է ընթերցողների թիվը, ավելացել գրքի օրական տացքը։ Այսպես, 1967 թ. ընթացքում 1784 ընթերցողներ գրադարանից վերցրել են 37.789 գիրք։

Իր կազմակերպած քաղ-մասսայական միջոցառումներով գրադարանը պրոպագանդում է ՍՄԿԿ և սովետական կառավարության որոշումները, դրանց շուրջ կազմակերպում զրույցներ։

Քաղաքական ու գիտամասսայական թեմաներով զեկուցումները նպաստում են կոլտնտեսականների գաղափարական դաստիարակությանը, մտահորիզոնի ընդլայնմանը։

Գրադարանում կազմակերպված է գրական ստուդիա, ուր ընդգրկված են շրջանի գյուղերի 21 երիտասարդ ստեղծագործողներ։ Ամիսը մեկ անգամ նրանք հավաքվում են պարապմունքի։ Բուռն վեճեր են լինում, հետաքրքրական ելույթներ լսվում, խմբակի անդամների ստեղծագործությունները քննարկելիս։ Գրական ստուդիայի ղեկավարն է համալսարանի բանասիրական ֆակուլտետի ուսանող Ջավեն Բաբագյուլյանը։ Ստուդիայի անդամների լավագույն բանաստեղծությունները տպագրվում են «Ավանգարդ» և շրջանային «Արտաշատ» թերթերում։ Ստուդիայում հեղինակների մասնակցությամբ քննարկվել են Հ. Մկրտչյանի Անհայտ զինվորի հիշատակարանը, լսվել է Ար. Մալխասյանի զեկուցումը «Լեգենդար Գայը»-ի մասին (որին ներկա էր զորավարի դուստր Թամարա Բժշկյանցը) և այլն։ Ընթերցողները հետաքրքրությամբ լսեցին պատմական գիտությունների թեկնածու Հ. Կարապետյանի ելույթը՝ «Հայ ժողովրդի մասնակցությունը Հոկտեմբերյան հերոսամարտերին» թեմայով։

Մեր երկիրն ու աշխարհի ողջ առաջադեմ մարդկությունը պատրաստվում են նշելու Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։ Մտնելով շրջանային գրադարան, ընթերցողը տեսնում է Վ. Ի. Լենինի հայ զինակիցները պատմական նյութերով հարուստ գրքային ցուցահանդեսը ու Վ. Ի. Լենին բաց գրադարակը։ Մեծ առաջնորդի երկերն ու առանձին աշխատությունները դարձել են գրադարանի ամենօրյա տացքի առարկան։ Այս տարվա հունվար-փետրվար ամիսներին ընթերցողներին տրված 942 քաղաքական գրքերից 217-ը Վ. Ի. Լենինի գործերից են։ Այժմ պատրաստվում են Վ. Ի. Լենինը գեղարվեստական գրականության մեջ թեմատիկ քարտարանը և գրադարակը. նախատեսված է լսել մի շարք դասախոսություններ՝ նվիրված Իլյիչի կյանքին ու հեղափոխական գործունեությանը։

Գրքի պրոպագանդման նպատակով կազմակերպվում են նաև թեմատիկ զրույցներ, գրքի բիբլիոգրաֆիական տեսություններ, զեկուցումներ, գրական պարապմունքներ, զրույցներ ու դասախոսություններ միջազգային հարցերի շուրջ և այլն։ Հետաքրքիր անցավ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստ»-ի 120-ամյակին նվիրված զրույցը։ Այդ առթիվ մասնագիտական տեսություն էր կազմել ընթերցասրահի վարիչ Գոհար Ավետիսյանը։ Նման տեսություններ են կազմվել Խ. Հ. Բարսեղյանի Մարքսիզմի տարածումը Հայաստանում և Ա. Սարգսյանի Հեղափոխական կռիվների միջով գրքերի մասին։ Այդպիսի կարճատև զրույցներն ու գրքային անոտացիաները հետաքրքրական են հատկապես երիտասարդների համար։



Գրադարանն ստեղծել է Ճանաչի՛ր քո շրջանը գրադարակը և Երկրագի-
տական քարտարաններ։ Քաղաքացիական կռիվները Ղամարլուում ցուցա-
փեղկը նվիրված է 1920—21 թթ. քաղաքացիական կռիվների աչքի ընկած
մասնակիցներին, պարտիզաններին, կուսակցական ու ռազմական գործիչնե-
րին, գյուղական հեղկոմների նախագահներին։ Նրանց լուսանկարներն ու
գործունեությունն արտացոլող պատմական փաստաթղթերը, նրանց նվիրված
գրքեր են ցուցադրված այդտեղ։

Շրջանային գրադարանի աշխատողները մեթոդական ակտիվ օգնություն
են ցույց տալիս գյուղական գրադարաններին, կազմակերպում սեմինար-
խորհրդակցություններ, բանավոր ու գրավոր կոնսուլտացիաներ, այցելում
առանձին գրադարաններ։

Շրջանային գրադարանի աշխատողներն օգնում են ընթերցողներին՝ խո-
րանալու իրենց մասնագիտության մեջ, զարգացնելու նրանց գեղարվեստա-
կան ճաշակը, հարստացնելու նրանց գիտելիքների պաշարը, բարձրացնելու
գաղափարական զարգացման մակարդակը, նպաստում մարդու բազմակող-
մանի, ինչպես և բարոյական դաստիարակությանը։

Ջանասեր, լավ աշխատանքի համար արժանին է հատուցվել գրադարա-
նին. նրան հանձնվել է հանրապետության լավագույն գրադարանի դիպլոմ։
Այդպիսի ուշադրությունն ավելի մեծ պատասխանատվությամբ է համակել
գրքերի աշխարհի՝ այդ անեղր տիեզերքի աշխատողներին։



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՎԱԼՅՈՒՏԱՖԻՆԱՆՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ավելի քան տաս ամիս է, ինչ վալյուտաֆինանսական ճգնաժամը շարունակում է ցնցել կապիտալիստական աշխարհը: Այն հատկապես սուր բնույթ է ընդունել կապիտալիստական առաջավոր երկրներում՝ Անգլիայում և ԱՄՆ-ում: Այդ է վկայում դրամական միավորների դևալվացիայի փաստը:

Սովորաբար դևալվացիան կատարվում է այն ժամանակ, երբ տեղի է ունենում ինֆլյացիա, և պետությունը պաշտոնապես ընդունում է թղթադրամի գնողունակության անկումը: Դրամական միավորի ոսկու պարունակության չափը սահմանում է պետությունը: Տարբեր երկրների վալյուտաների հարաբերությունների պարիտետը (համազորությունը) որոշելու համար անհրաժեշտ է համեմատել դրանց միջև սահմանված ոսկու կշռային չափերը: Վերցնենք դոլարի և ռուբլու համազորության հարաբերությունը: Մինչև 1961 թվականը Սովետական Միությունում կատարված գների մասշտաբների փոփոխությունը ռուբլու մեջ սահմանված ոսկու պարունակությունը 0,222168 գրամ էր, իսկ դոլարինը՝ 0,88867, այսինքն՝ մեկ դոլարը համազոր էր 4 ռուբլու: Դրանից հետո ռուբլու ոսկու պարունակությունը սահմանվեց 0,987412 գրամ և մեկ դոլարը համազոր դարձավ 90 կոպեկի:

Դևալվացիան կիրառվում է ինֆլյացիայի ժամանակ, երբ տվյալ երկրի փողային միավորը զգալի չափով արժեքազրկվում է և կառավարությունը դրա միջոցով փորձում է կարգավորել փողի շրջանառությունը ու վերացնել պետական բյուջեում առաջացած դեֆիցիտը: 1928—1933 թվականների համաշխարհային տնտեսական ծանր ճգնաժամից հետո, երբ ֆունտ ստեռլինգի կուրսը Անգլիայում բավականաչափ ընկել էր, այն ենթարկվեց դևալվացիայի, այսինքն՝ ֆունտ ստեռլինգի կշիռը իջավ 30 տոկոսով և կազմեց 3,58134 գրամ, որի համապատասխան էլ նրա պարիտետը 5 դոլարից իջավ 4,03 դոլարի (ի դեպ, մի անգամ չէ, որ անգլիական կառավարությունը դիմել է ֆունտ-ստեռլինգի դևալվացիային):

1949 թվականին ֆունտ-ստեռլինգը վերստին ենթարկվեց դևալվացիայի և այս անգամ սրա ոսկու քաշը իջավ 2,48878 գրամի, իսկ համազորությունը դարձավ 2,8 դոլար: Այդ օրինակին հետևեցին 30 կապիտալիստական երկրներ, որոնք իրենց ազգային վալյուտայի կուրսը դոլարի նկատմամբ իջեցրին 30 տոկոսով: Ուշագրավ է այն փաստը, որ դևալվացիան կատարվեց Ամերիկայի Միացյալ Նահանգների ճնշմամբ, որը լայն ուղի բացեց եվրոպական երկրների էկոնոմիկայի մեջ ամերիկյան կապիտալի ներխուժման համար:

Ինչո՞վ է բացատրվում անգլիական ֆունտ ստեռլինգի ներկա դևալվացիան և ինչո՞ւ այն տարածվեց մի շարք կապիտալիստական երկրների վրա:

Ինչպես հայտնի է, Անգլիան հետպատերազմյան շրջանում կորցնելով ավելի քան 33 միլիոն քառ. կմ տարածություն ունեցող գաղութային երկրներ, զրկվեց եկամուտների հարուստ աղբյուրից: Մինչդեռ, վերջին տարիների ռազմական հսկայական ծախսերի հետևանքով պետական բյուջեում մեծ ճեղքվածք առաջացավ (1967 թվականին Անգլիայի ռազմական ծախսերը կազմում էին ավելի քան 2 միլիարդ ֆունտ ստեռլինգ, 1968-ին նախատեսված է այն ավելացնել 205 միլիոն ֆունտ ստեռլինգով): Վճարային հաշվեկշռի դեֆիցիտը և գների բարձրացումը ֆունտ ստեռլինգի նկատմամբ առաջ բերին անվստահություն: Սկսվեց վալյուտաֆինանսական ճգնաժամ, որը հատկապես սուր բնույթ ընդունեց 1967 թվականի աշնանը: Օտարերկրյա ավանդատուները, կորցնելով իրենց հավատը ֆունտ ստեռլինգի նկատմամբ, մեկ ամսվա ընթացքում (հոկտեմբերի 15-ից նոյեմբերի 15-ը) սկսեցին մասսայաբար հանել իրենց ավանդները անգլիական բանկերից և այն փոխարինել ոսկով: Այս օրինակին հետևեցին նաև Անգլիայի քաղաքացիները, որոնք սկսեցին թղթադրամ ֆունտ ստեռլինգը հապճեպ փոխարինել արծաթով և օտարերկրյա վալյուտաներով: Տեղի ունեցավ ոսկու չտեսնված արտահոսք անգլիական բանկերից, և ակնհայտ դարձավ, որ անգլիական կառավարությունը կանգնած է վալյուտաֆինանսական ծանր ճգնաժամի փաստի առջև: Վարկ ստանալու հույսեր չունենալով, նա չէր կարող արգելակել ֆունտ ստեռլինգի փոխարկումն ոսկով և օտարերկրյա վալյուտայով, մանավանդ, ֆինանսական ճգնաժամը զուգադիպեց Անգլիայի ընդհանուր շուկայի մեջ ընդունվելու հարցի քննարկմանը: Նոյեմբերի 18-ին կառավարությունը պաշտոնապես հայտարարեց ֆունտ ստեռլինգի դևալվացիան 14,3 տոկոսով. դրա հետևանքով, եթե մինչև նոյեմբերի 18-ը ստեռլինգը համազոր էր 2,8 դոլարի, ապա նոր որոշմամբ այն համապատասխանեց 2,4 դոլարի: Անգլիայում, փաստորեն, դոլարի կուրսը բարձրացավ 16,7 տոկոսով:



Այսպիսով, ֆունտ ստեռլինգի նոյեմբերյան դևալվացիայի հիմնական պատճառները՝ ա) ռազմական ծախսերի պարբերական աճն էր, բ) պասիվ վճարային հաշվեկշիռն ու պետական բյուջեի դեֆիցիտը, թղթադրամի լրացուցիչ բացթողման անհրաժեշտությունը, գ) արտաքին առևտրի պասիվ բալանսը (1967 թ. ներմուծումը ավելացել էր 8 տոկոսով, կրճատվել արտահանումը, որի հետևանքով արտաքին առևտրի դեֆիցիտը կազմեց 1,2 միլիարդ ֆունտ ստեռլինգ), դ) ապրանքների արտահանման խթանման և դեմպինգի կիրառման անհրաժեշտությունը, ե) ոսկու պաշարի անհամաչափ բաշխումը կապիտալիստական երկրների միջև:

Ֆունտ ստեռլինգի դևալվացիան գլխավոր կապիտալիստական երկրներում ոսկու գնման արտակարգ պահանջ առաջացրեց: Ամենից առաջ ոսկու արտասովոր տագնապ սկսվեց Լոնդոնի ֆոնդային բիրժայում: Միայն նոյեմբերի 26-ին ոսկու վաճառքը կազմեց 200 տոննա: Եթե մինչև ֆունտ ստեռլինգի դևալվացիան մեկ ունցիա (31,1 գրամ) ոսկու գինը հավասար էր 35,2 դոլարի, ապա դևալվացիայից հետո այն բարձրացավ 41,5 դոլարի, իսկ արծաթի գինը՝ 11-ից 17 շիլինգի:

Ոսկու գնման տագնապը տարածվեց Ֆրանսիայում, Շվեյցարիայում, Արևմտյան Գերմանիայում, Հարավ-Աֆրիկյան հանրապետությունում և այլ երկրներում: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը 1968 թվականի մարտի 29-ին հանդես գալով Մոսկվայի քաղաքային կուսակցական կազմակերպության կոնֆերանսում, նշեց, որ «Կապիտալիստական սիստեմի շրջանակներում ճգնաժամային երևույթների խտացված արտահայտությունն եղավ ներկայումս բռնկած վալյուտաֆինանսական ճգնաժամը: Իսկ այդ իրադարձության նշանակության մասին կարելի է դատել թեկուզ այն բանից, որ անգլիական ֆունտը սպասարկում է միջազգային բոլոր հաշվային գործարքների մոտ 30—35 տոկոսը: Պատահական չէ, որ ֆունտից անմիջապես հետո արժեզրկվեցին ավելի քան 25 կապիտալիստական պետությունների վալյուտաները: Այժմ հերթը ամերիկյան դոլարինն է, որի դևալվացիան, փաստորեն, սկսվել է»:

Վալյուտաֆինանսական ճգնաժամի հետագա խորացումն ու տարածումը կանխելու համար, Անգլիան և Ամերիկան ձեռնարկեցին ոսկու միացյալ վաճառք: 1967 թվականի նոյեմբերին Փարիզում կայացավ 10 պետությունների (ԱՄՆ, Անգլիա, Ֆրանսիա, ԳՖՀ, Ճապոնիա, Իտալիա, Շվեյցարիա, Բելգիա, Հոլանդիա, Կանադա) ներկայացուցիչների խորհրդակցություն, որը որոշեց Անգլիային տրամադրել 1,4 միլիարդ դոլար վարկ:

Վալյուտաֆինանսական ճգնաժամը տարածվեց ԱՄՆ-ում և ոսկու առք ու վաճառքի մոլեխաղով վարակվեց նաև Ամերիկան: Չնայած հետպատերազմյան շրջանում դոլարը համաշխարհային վալյուտայի լայն ճանաչում էր ընտացել, նրա գնողունակությունը, այնուամենայնիվ, 1967 թվականին, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, իջավ մոտ 3 անգամ:

Ինչո՞ւ վալյուտաֆինանսական ճգնաժամը ցնցեց նաև տնտեսապես հզոր Ամերիկան: Ինչպես հայտնի է, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կապիտալի արտահանման ընագավառում Ամերիկան գրավեց առաջին տեղը և սկսեց իրականացնել իր նվաճողական քաղաքականությունը: Պատերազմից թուլացած կապիտալիստական մի շարք երկրներ՝ Անգլիան, Ֆրանսիան, ԳՖՀ-ն, Իտալիան վարկի կարիք զգալով, դիմեցին ԱՄՆ-ի օգնությանը: ԱՄՆ-ը օգտվեց այդ նպաստավոր իրադրությունից և արտահանելու նպատակով մեծ քանակությամբ թղթադոլար բաց թողեց: Դրանով դոլարի էքսպանսիան մեծ չափերի հասավ: Այն տարածվեց հատկապես եվրոպական երկրներում. 2000-ից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ, ակցիաների գնման հետևանքով անցան ամերիկյան մոնոպոլիստների ձեռքը: Ամերիկյան կապիտալը գլխավորապես ներխուժեց արդյունաբերության նորագույն՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ճշգրիտ գործիքների, ավտոշինարարության, սինթետիկ նյութերի և պլաստմասսային արտադրության ավելի հեռանկարային և շահութաբեր ճյուղերը:

Եվրոպայում ներդրված կապիտալից ամերիկյան մոնոպոլիստները հսկայական շահույթներ էին կորզում: Եթե 1945 թվականին նրանց

փոխառության տոկոսների վճարային գումարները 3,6 միլիարդ դոլար էին, ապա 1967 թվականին դրանք հասան 14 միլիարդի։ 1967 թվականին արտահանված թղթադոլարի ընդհանուր գումարը (որը կարելի էր փոխանակել ոսկու հետ) հասավ 29 միլիարդի, որից ավելի քան 20 միլիարդը բաժին էր ընկնում Եվրոպային։ Այսպիսով, թղթադոլարի «առատությունը» Եվրոպայում (հատկապես «ընդհանուր շուկայի» մասնակից երկրներում), նրա գնողունակության անկումը, ռազմական ծախսերի արագ աճը, պատերազմական գործողությունների անհաջողությունները Վիետնամում, պետական բյուջեի վճարային բալանսի խրոնիկական դեֆիցիտը, ապրանքների բարձր գներն՝ ԱՄՆ-ին կանգնեցրին վալյուտաֆինանսական ճգնաժամի փաստի առջև։ Եվ չնայած դոլարի դեվալվացիան պաշտոնապես չի հայտարարված, սակայն այն ակնհայտորեն սկսված է։ «Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ,— հայտարարեց ընկ. Բրեժնևը հիշյալ ելույթում,— դոլարը արժեզրկվել է երկուս ու կես-երեք անգամ։ Այդ պայմաններում չի կարելի բացառել կապիտալիստական սիստեմի տնտեսական խոր ճգնաժամի հնարավորությունը»։ Վալյուտաֆինանսական ներկա ճգնաժամի բնորոշ կողմերից մեկն այն է, որ դրան չնախորդեց համաշխարհային տնտեսական ճգնաժամը։

Սակայն, ավելի քան 18 տարի է, ինչ ԱՄՆ-ում տիրում է ֆինանսական լարվածություն։ Եթե 1960—1961 թթ. ֆինանսական տարում պետական բյուջեի դեֆիցիտը կազմում էր 11 միլիարդ դոլար, ապա 1966—1967 թթ. այն հասավ 17-ի, իսկ ընթացիկ տարում կհասնի 20 միլիարդ դոլարի։ Այս տարվա ռազմական ծախսերը կազմելու են 79,8 միլիարդ դոլար, որի նշանակալի մասը ծախսվում է վիետնամական ժողովրդի դեմ մղվող պատերազմում։

Ուշագրավ է Ամերիկայի ֆեդերալ բանկի կառավարիչների խորհրդի նախկին նախագահ՝ Մարիներ էքլսի կարծիքը երկրի ֆինանսական վիճակի մասին։ «17 տարի է,— գրում է նա,— ինչ Միացյալ Նահանգների դեֆիցիտային բյուջեն խարխլել է դոլարի միջազգային հաշվարկային վալյուտայի կայունությունը»։ Դոլարը կայուն պահելու համար ԱՄՆ-ը ձեռնարկեց մի շարք միջոցներ։ 1961 թվականին կազմակերպվեց, այսպես կոչված, «ոսկու պուլ» միջազգային միությունը, որի մեջ մտան 7 պետություն՝ ԱՄՆ-ը, Անգլիան, ԳՖՀ-ն, Ֆրանսիան, Բելգիան, Հոլանդիան և Շվեյցարիան (1967 թվականին Ֆրանսիայի փոխարեն միության կազմի մեջ մտավ Շվեդիան)։ «Ոսկու պուլի» հիմնական նպատակն է ապահովել նրա մասնակից երկրների ֆինանսական կայուն վիճակը։

Սակայն «ոսկու պուլի» ձեռնարկած կանխամիջոցները ո՛չ միայն չկասեցրին ոսկու գնման տագնապը, այլ ավելի ուժեղացրին։ Դոլարի նկատմամբ ընդհանուր անվստահության հետևանքով միայն մարտ ամսում Ամերիկայի ոսկու պաշարները կրճատվեցին մեկ միլիարդ 197 միլիոն դոլարով։ Դոլարի կուրսի պահպանման և վճարային բալանսի դեֆիցիտի կարգավորման համար պրեզիդենտ Լ. Ջոնսոնը դեռ հունվարին կոնգրեսի միացյալ պալատների նիստում առաջարկեց 10 տոկոսով բարձրացնել եկամտահարկը, հինգ հազար մարդով կրճատել դիվանագիտական ապարատը, սահմանափակել տուրիզմը և այլն։ Սակայն, այս միջոցառումների իրագործումը մեծ դժվարություններ հարուցեց։

«Նյու-Յորք Թայմս» թերթը Ջոնսոնի առաջարկությունները համարեց «դառն դեղ»։ Փաստերն ակնհայտ ցույց են տալիս, որ վալյուտաֆինանսական ներկա ճգնաժամը խոր հոռետեսության է մատնել ո՛չ միայն հասարակ մարդկանց, այլև ֆինանսական շրջաններին։ Վալյուտաֆինանսական ճգնաժամը լայնորեն տարածվեց, այսպես կոչված, «դոլարային» և «ստեռլինգյան» գոտիների մեջ ընդգրկված երկրներում։ Ֆունտ ստեռլինգի արժեզրկվելուց անմիջապես հետո ավելի քան 26 կապիտալիստական երկրների վալյուտաները ևս արժեզրկվեցին։ Ֆինանսական սիստեմի խրոնիկական ճգնաժամը բացասաբար ներգործեց զարգացող երկրների վալյուտային վիճակի վրա։

Կապիտալի աշխարհը ցնցող վալյուտաֆինանսական ճգնաժամն ավելի խորացրեց կապիտալիստական երկրների հակասությունները։ Հակասությունները սրվեցին հատկապես ԱՄՆ-ի և «ընդհանուր շուկայի» անդամ-պետությունների միջև։ Սա էլ հենց իրական հող է պատրաստում համաշխարհային տնտեսական ճգնաժամի առաջացման համար։

Վալյուտաֆինանսական ներկա ճգնաժամը խիստ բացասաբար անդրադարձավ բանվոր դասակարգի, աշխատավորության կենսամակարդակի վրա։ Անգլիական լեյբորիստական կառավարությունը, անտեսելով աշխատավորության շահերը, բարձրացրել է կենսամթերքների, առաջին անհրաժեշտության ապրանքների գները, փոքրացրել գոյամիջոցների ձեռք բերման հնարավորությունները։ Ամերիկայում, Անգլիայում, Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում և Իտալիայում զգալի չափով ավելացել է գործազրկությունը, որն ընդգրկում է շուրջ 6 միլիոն մարդ։

Կյանքը ցույց է տալիս, որ կապիտալիստական տնտեսությունը ֆինանսական ճգնաժամից դուրս բերելու մոնոպոլիաների ջանքերը դատապարտված են ձախողման։

ԶԱՔԱՐՅԱՆ Մ. Հ.





## ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՆՈՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի «Լույս» հրատարակչությունը ընթերցողին հանձնեց Երևանի պետական համալսարանի հայագիտական ամբիոնի վարիչ, պրոֆեսոր Վ. Ա. Պարսամյանի «Հայ ժողովրդի պատմություն» աշխատությունը, որը բարձրագույն ուսումնական հաստատությունների համար նախատեսված դասընթացի երրորդ հատորն է։

Նշված աշխատությունն ընդգրկում է մեր ժողովրդի պատմության կարևոր ժամանակաշըրջանը՝ 1801—1917 թթ.։ Ղեկավարվելով մարքսլենինյան մեթոդոլոգիայով, նա հասարակական երևույթները դիտել է իրենց կապակցության մեջ, շարադրել հայ ժողովրդի պատմությունը Ռուսաստանի, Թուրքիայի և այլ ժողովուրդների պատմության հետ առնչված։ Հեղինակը փորձել է տալ հայ ժողովրդի նոր շրջանի պատմության գիտական պերիոդիզացիան, պահպանելով դեպքերի ժամանակագրությունը։ Շարադրելով առավելապես արդեն մշակված դրույթներ, նա մատնանշել է նաև այն պրոբլեմները, որոնք տակավին քիչ են մշակված և դեռևս վիճելի են։ Հեղինակը չի բավարարվել սոսկ ակնարկումներով, այլ ձգտել է դրսևորել նաև իր վերաբերմունքն այս կամ այն պրոբլեմատիկ հարցի նկատմամբ։ Նա հայ ժողովրդի նոր շրջանի պատմությունը մասնատում է երեք բաժնի՝ 1801—1850, 1850—1900 և 1900—1917 թթ.։ Առաջին բաժնում բնութագրում է Հայաստանի երկու հատվածներում տակավին գերիշխող ֆեոդալական արտադրահարաբերությունները, արտացոլում հողատիրության պատկերը և գյուղացիության ֆեոդալական կախվածության տարբեր ձևեր և այն դժնդակ պայմանները, որոնցում ապրում էր հայ ժողովուրդը պարսկական և թուրքական լծի տակ։ Նշելով օտարների վայրագ բռնությունները հայերի նկատմամբ, հեղինակն ընդգծում է, որ նրանք հարկադրված թողնում էին հայրենիքը և գաղթում աշխարհի տարբեր մասեր։ Դրա հետևանքով քայքայվում էին երկրի արտադրաուժերը, ավերվում քաղաքներն ու գյուղերը, կրճատվում ցանքատարածությունները։

Վ. Ա. Պարսամյանն այնուհետև ցույց է տալիս, որ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին շրջադարձային կետ հանդիսացավ հայերի կյանքում։ Այդ միացման շնորհիվ ամայացած երկիրը վերստին կենդանացավ, աճեց բնակչության թիվը, բազմացան ու շենացան քաղաքները, հաստատվեց անձի ու գույքի ապահովություն։ Հեղինակը հանգամանորեն պատմում է նաև այն մեծ աջակցության մասին, որ արևելահայերը ցուցաբերում էին Ռուսաստանին՝ 1826—1828 թթ. պատերազմի տարիներին։ Ռուսների հաղթանակի մեջ էին նրանք տեսնում իրենց փրկությունը, ազատագրումը պարսկական նզովյալ լծից։

Գրախոսվող գրքի հեղինակը չի անտեսում նաև ցարիզմի գաղութային քաղաքականությունը։ Նա ցույց է տալիս, որ Նիկոլայ I-ը չվերականգնեց հայկական պետականությունը, չվերացրեց ադրբեջանական աղաների ու բեկերի իշխանությունը, Հայաստանը դարձրեց մետրոպոլիայի կցորդը։

Անդրադառնալով արևմտահայերին՝ հեղինակը նշում է, որ նրանք, դժբախտաբար, չկարողացան ազատվել թուրքական տիրապետության ծանր լծից։ Իրավ է, 30-ական թվականներից սկսած սուլթանները հրապարակեցին օրենքներ կայսրության ժողովուրդների, ինչպես և հայերի վիճակի բարեկարգման մասին, բայց դրանք մնացին թղթի վրա։ Այս բաժնի վերջում նա բնութագրում է հայ ժողովրդի կուլտուրան XIX դարի առաջին կեսին և նշում, որ օտարների տիրապետության հետևանքով մշակույթի զար-

գացման մակարդակը համեմատաբար ցածր էր։

Վ. Ա. Պարսամյանը գրքի երկրորդ բաժնում վերլուծում է ֆեոդալական հարաբերությունների քայքայման ու կապիտալիստական հարաբերությունների զարգացման և այդ տեղաշարժերի հետ առնչվող հասարակական-քաղաքական բազում հարցեր։ Նա առարկում է այն հեղինակներին, որոնք 1870-ական թվականներն են համարում բուրժուական հարաբերությունների զարգացման սկիզբը (այսինքն՝ կապում են այն գյուղացիական ռեֆորմի հետ) և գտնում է, որ այդ պրոցեսն սկսվել է 1850—1860-ական թվականներից։ Հեղինակի կարծիքով Անդրկովկասում, ինչպես և Արևելյան Հայաստանում, կապիտալիստական հարաբերությունների զարգացման գործում վճռական նշանակություն ունեցավ ռուսական կապիտալիզմը, իսկ ռեֆորմը ի վիճակի չեղավ արմատական տեղաշարժեր մտցնելու հայկական գյուղում։

Հեղինակն այնուհետև ընդգծում է, որ կապիտալիզմի զարգացմանը զուգընթաց հայ իրականության մեջ ձևավորվում են հասարակական-քաղաքական հոսանքները։ Համամիտ չլինելով այն պատմաբանների հետ, ովքեր առաջ են քաշում չորս հոսանքի տեսակետը (կղերա-աղայական, ազգային-պահպանողական, լիբերալ-բուրժուական և հեղափոխական-դեմոկրատական), նա պաշտպանում է երեք հոսանքի սկզբունքը (կղերա-ֆեոդալական, լիբերալ-բուրժուական և հեղափոխական-դեմոկրատական)։

Վ. Ա. Պարսամյանն այնուհետև ցույց է տալիս, որ XIX դարի կեսերին արդեն կազմավորվում է հայ բուրժուական ազգը և ծավալում ազատագրական պայքար։ Նա մատնանշում է, որ 50-ական թվականների վերջերից Կ. Պոլսում ծայր է առնում սահմանադրական շարժումը, որը որոշ արդյունքի է հասնում 60-ական թվականների սկզբներին. արևմտահայերը ձեռք են բերում ազգային սահմանադրություն։ Սակայն դա իսկական սահմանադրություն չէր, այլ պոլսահայերի ներքին կյանքին վերաբերող մի կանոնադրություն։ Այդուհանդերձ ազգային սահմանադրության նվաճումը դեմոկրատական ուժերի հաղթանակն էր կղերա-ամիրայական վերնախավի դեմ։

1862 թ. Զեյթունի ապստամբությունը խոշոր նշանակություն ունեցավ հայ ժողովրդի ազգային զարթոնքի և նրա ազատագրական պայքարի հետագա ծավալման համար։ Արևմտահայերի ազատագրական շարժումներն առանձնապես լիցքավորվեցին 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմում Ռուսաստանի տարած հաղթանակով։ Հայ առաջադեմ ուժերը, ոգևորված այդ հաղթանակով, ջանացին օգտագործել միջազգային հարաբերությունները և մեծ տերությունների օգնությամբ բարենորոգումներ մտցնել Թուրքիայի հայկական վիլայեթներում։ Սակայն նրանց երազանքները, բախվելով այդ պետությունների ներհակ շահերին, փշրվեցին։

Հայ ժողովուրդը Սասունում, Զեյթունում, Վանում և այլուր ցուցաբերեց հերոսական դիմադրություն։ Բայց ի վերջո տեղի տվեց թշնամու գերազանց ուժերի առաջ։ Հեղինակն իրավամբ նշում է, որ մեծ տերությունները, առաջնորդվելով իրենց իմպերիալիստական շահերով, հայ ժողովրդին դրին պատմության զոհասեղանին։

Վ. Ա. Պարսամյանը հատուկ ուշադրություն է նվիրում հայ քաղաքական խմբակների ու կազմակերպությունների առաջացմանն ու նրանց գործունեությանը, նշում, որ 1869 թ. Ալեքսանդրապոլում հիմնադրվում է «Բարենպատակ ընկերություն», 1872 թ. Վանում՝ «Միություն ի փրկություն», 1874 թ. Ղարաքիլիսայում՝ «Հայրենիքի սիրո գրասենյակ», 1881 թ. Էրզրումում՝ «Պաշտպան հայրենյաց», 1882 թ. Մոսկվայում՝ «Հայրենասերների միություն», 1882—1883 թթ. Թիֆլիսում՝ «Հայրենասիրական խմբակ» կազմակերպությունները։ Բնութագրելով դրանց միջև եղած ծրագրային և տակտիկական տարբերությունները՝ հեղինակն իրավամբ եզրակացնում է՝ դրանք բոլորը կոչված էին պայքարելու մի ընդհանուր նպատակի՝ իրենց ժողովրդի ու հայրենիքի ազատության համար։ Սակայն այդ խմբակներն երկար չեն գոյատևում. մի մասը հայտաբերվում ու ջախջախվում է թուրքական ու ցարական ոստիկանության կողմից, մյուսը՝ կազմալուծվում ներքին հակասությունների հետևանքով։

Հեղինակն այնուհետև բնութագրում է հայ քաղաքական կուսակցությունները։ Նշում է, որ 1885 թ. Մարսելում հիմնվում են արմենականների, 1887 թ. Ժնևում՝ հնչակյանների, իսկ 1890 թ. Թիֆլիսում՝ դաշնակցականների կուսակցությունները։ Ապա ցույց է տալիս դրանց գաղափարական տարբերությունները, վերապրած մակընթացություններն ու տեղատվությունները, պայքարի մեթոդներն ու եղանակները, մոտակա ու հեռավոր նպատակները։ Հեղինակը գտնում է, որ արմենականներն արտահայտում էին հայ բուրժուազիայի, ինչպես և գյուղացիության ու դեմոկրատական մյուս խավերի (էջ 324), հնչակյանները՝ մանր բուրժուազիայի, կիսապրոլետարականացած ու պրոլետարականացած շերտերի (էջ 325), իսկ դաշնակցականները՝ հայ բուրժուազիայի (էջ 330) շահերը։ Նա համամիտ չէ այն հեղինակներին, ովքեր հնչակյաններին համարում են ոչ հեղափոխական և նշում, որ այդ կուսակցությունը գտնվում էր, մի կողմից՝ մանր բուրժուական սոցիալիզմի ու նարոդնիկների, մյուս կողմից՝ մարքսիզմի ազդեցության տակ։ Հայ իրականության մեջ հնչակյաններն



այս կամ այն չափով պրոպագանդել են մարքսիզմի ու սոցիալիզմի գաղափարները (էջ 327)։ Գնահատելով այս կուսակցությունների պայքարը, հատկապես թուրքական բռնապետության դեմ՝ իբրև առաջադիմական երևույթ, հեղինակը, սակայն, դատապարտում է նրանց ակնկալությունները եվրոպական պետություններից, պայքարի տեռորիստական ու արկածախնդրական եղանակները, գտնելով, որ դրանք յուղ լցրին կոտորածների կրակին։

Անդրադառնալով Հայաստանում մարքսիստական խմբակների ու կազմակերպությունների գործունեությանը՝ Վ. Պարսամյանը նշում է, որ 1892 թ. Թիֆլիսում հիմնվում է «Հայ բանվոր հեղափոխականների ասոցիացիան», 1898 թ.՝ «Թիֆլիսի բանվորների միությունը», իսկ 1899 թ. Ջալալօղլիում (Ստեփանավան) առաջին մարքսիստական խմբակը։ «Ասոցիացիան», բացի արևելահայ բանվորության խնդրից, առաջ էր քաշում նաև արևմտահայերինը, հրատապ համարելով նրանց ազատագրումը թուրքական լծից։ Ի տարբերություն բուրժուական կուսակցությունների, «Ասոցիացիան» դատապարտում էր եվրոպական միջամտության գաղափարը և արևմտահայոց ազատագրումը հնարավոր էր համարում զինված ապստամբության միջոցով։ Համարյա նույն գաղափարներն էր արծարծում նաև «Թիֆլիսի բանվորների միությունը»։ Ինչ վերաբերում է Ջալալօղլու խմբակին, ապա այն հայ ժողովրդի ազատագրման հարցը կապում էր պրոլետարական հեղափոխության հաղթանակի հետ։

Հեղինակն այնուհետև բնութագրում է հայկական կուլտուրան XIX դարի երկրորդ կեսին, նշելով, որ հայ քանքարավոր մտավորականները, չնայած գործունեության խիստ անբարենպաստ պայմաններին, այնուամենայնիվ, շարունակում էին իրենց նախնիների լավագույն տրադիցիաները և, ծանոթանալով համաշխարհային կուլտուրայի, ռուս ժողովրդի ստեղծած հոգևոր արժեքներին, առաջ էին մղում ազգային գիտությունը, գրականությունը, արվեստը, մանկավարժությունը և այլն։

Գրքի երրորդ բաժինն ընդգրկում է հայ ժողովրդի պատմությունը իմպերիալիզմի էպոխայում։ Հեղինակն այս մասում շոշափում է երկրի սոցիալ-տնտեսական տեղաշարժերը, հասարակական-քաղաքական կյանքը, բնութագրում 1903 թ. դեպքերը և վերլուծում 1905—1907 թթ. բանվորա-գյուղացիական ու սովորող երիտասարդության հեղափոխական ելույթները, նշում, որ դրանք հաճախ ընթանում էին բոլշևիկների ղեկավարությամբ և ուղղված լինելով ցարական բռնապետության դեմ, ձգտում էին հասնել դեմոկրատական վերափոխումների։ Ամփոփելով 1905—1907 թթ. հեղափոխության դասերը, նա եզրակացնում է. այդ «...հեղափոխությունը ցույց տվեց, որ ինչպես մյուս ճնշված ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրությունը հնարավոր է միմիայն ռուսական հեղափոխության հաղթանակի շնորհիվ» (էջ 417)։

Վ. Ա. Պարսամյանն այնուհետև նկարագրում է արևմտահայերի վիճակը XX դարի սկզբին։ Ցույց է տալիս, որ 1908 թ. թուրքական հեղափոխությունը, տապալելով Համիդին, չստեղծեց բնակչության անձի ու գույքի ապահովություն, չլուծեց հողային հարցը, իսկ ազգային հարցն ավելի խճճեց։ Երիտթուրքերը, վարելով մոլի նացիոնալիստական քաղաքականություն, երազում էին թուրքացնել ոչ թուրք ժողովուրդներին, ստեղծել միատարր և ընդարձակ կայսրություն, հասցնելով նրա սահմանները մինչև Ալթայ։ Նրանք շարունակեցին զանգվածաբար բնաջնջել հայերին։ Բայց արևմտահայերը չձուլվեցին ու չընկճվեցին։ Ընդհակառակը՝ քաջաբար դիմադրեցին նորելուկների ազգակուլ վարքագծին։ Հեղինակը համառոտակի բնութագրում է իմպերիալիստական տերությունների վերաբերմունքը հայկական հարցի նկատմամբ և նշում, որ եթե 1878 թ. դրա լուծմանը խանգարեց Անգլիան, ապա 1912 թ.՝ Գերմանիան։ Մինչ Ռուսաստանը, շահագրգռված լինելով հայկական հարցում, ստիպեց թուրքերին 1914 թ. հունվարի 26-ին համաձայնագիր ստորագրել հայկական բարենորոգումների մասին։ Այդ համաձայնագիրը չէր լուծում հայերին հուզող հարցերը, բայց իր ժամանակի պատմական պայմաններում նրանց համար նպաստավոր մի քայլ էր։ Սակայն վրա հասած առաջին համաշխարհային պատերազմը խանգարեց անգամ այդ համաձայնագրի կենսագործումը։

Վ. Ա. Պարսամյանն այնուհետև նկարագրում է հայ ժողովրդի դրությունն առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Նա ցույց է տալիս Ռուսաստանի և Թուրքիայի շահերի բախումն Արևմտյան Հայաստանում, ապա անդրադառնում այն իրողությանը, որ պատերազմի հենց սկզբից երկու կողմերն էլ զորակոչեցին իրենց տիրապետության տակ գտնվող հայերին ու քշեցին ռազմաճակատ։ Զբաղվելով դրանով, ցարական իշխանություններն ստեղծեցին հայկական կամավորական գնդեր ընդդեմ Թուրքիայի, իսկ երիտթուրքերն առաջարկեցին դաշնակներին՝ կազմակերպել Կովկասի հայերին և տեղի մահմեդականների հետ միասին ապստամբություն բարձրացնել Ռուսաստանի թիկունքում։ Երկու կողմերն էլ, օգտագործելով հայերի հայրենասիրական զգացմունքներն ու ազատատենչ ձգտումները, աշխատում էին խաբել նրանց։

Հեղինակը նկարագրում է պատերազմական գործողությունները, խոսում այն մասին, որ

ռուսները, ջախջախելով թշնամուն, շպրտում են նրանց դեպի Անատոլիայի խորքերը, ազատագրում հայկական մի շարք քաղաքներ ու բազմաթիվ գյուղեր, հասնում Մուշ ու Բիթլիս, իսկ թուրքերը, օգտագործելով պատերազմի առիթը՝ կենսագործում են իրենց նախօրոք մշակած հանցագործ պլանը և տեղահանում ու կոտորում հայերին։

Արևմտահայերն այդ օրերին հավաքելով իրենց վերջին ուժերը, մի շարք վայրերում ինքնապաշտպանական մարտեր մղեցին թշնամու դեմ և դրա շնորհիվ շատերն ազատվեցին բնաջնջումից։

Հայ ժողովուրդն իմանալով փետրվարյան հեղափոխության մասին, սկզբում ուրախացավ, կարծելով, թե այն ի վերջո կփրկե իրեն ոչնչացումից, բայց ժամանակավոր կառավարությունը իր ազգակործան քաղաքականությամբ խորապես հիասթափեցրեց նրան։ Եվ հայերը կայսրության մյուս ժողովուրդների հետ միասին, ռուսական պրոլետարիատի ղեկավարությամբ, շարունակեցին ազատագրական պայքարը նաև ժամանակավոր կառավարության դեմ։

Չնայած իր ակներև արժանիքներին, հեղինակի աշխատությունն ունի վիճելի դրույթներ և որոշ թերություններ, որոնց հարկ ենք համարում անդրադառնալ։ Հայ ժողովրդի պատմության նոր, այսինքն՝ կապիտալիզմի շրջանը, պետք է սկսել ոչ թե 1801 թվականից—Վրաստանի՝ Ռուսաստանի միացումից, այլ XVIII դարի վերջին քառորդից, քանի որ, ինչպես արդեն ցույց են տալիս նորագույն ուսումնասիրությունները, կապիտալիզմի տարրերը հայ իրականության մեջ, հատկապես Ռուսաստանի հայկական գաղթօջախներում, թափանցել են Վրաստանի միացումից ավելի առաջ։ Թերևս կարելի է համաձայնել հեղինակի հետ, որ բուն Հայաստանում կապիտալիստական հարաբերությունները սաղմնավորվել են XIX դարի 50—60-ական թվականներից, սակայն այս թեզը հիմնավորման կարիք ունի։ Հատկապես պետք է ուսումնասիրել այդ երկու տասնամյակներում կատարված սոցիալ-տնտեսական տեղաշարժերը։

Շարադրելով արևմտահայերի մոտ 115 տարվա պատմությունը, նրա սոցիալ-տնտեսական և կուլտուրական ապրելակերպը, դժբախտաբար, Վ. Ա. Պարսամյանը չի լուսաբանել որոշ կարևոր հարցեր (XIX դարի առաջին երեք տասնամյակների սոցիալ-տնտեսական հարաբերությունները, ռազմա-լենային հողատիրության վերացումը, դերեբեյության բնաջնջումն ու սահմանափակումը, թերմշակ են որոշ հարցեր (հայդուկային շարժումը, սոցիալ-տնտեսական տեղաշարժերը XIX դարի վերջերին XX-ի սկզբին և այլն)։

Վերլուծելով դաշնակցության ղ սակարգային էությունը՝ հեղինակն այն անվանում է բուրժուական կուսակցություն (էջ 330), իսկ մի այլ տեղ դասում մանրբուրժուական կուսակցությունների շարքը (էջ 476)։ Այդպիսի բնութագրումներն ընթերցողին չեն հանգեցնում որոշակի եզրակացության։

Բայց այս դիտողությունները բնավ չեն նսեմացնում Վ. Ա. Պարսամյանի գրքի գիտական արժեքը, որի կարիքը վաղուց զգում էր ընթերցող հասարակությունը։

ՀԱՄԲԱՐՅԱՆ Ա. Ս.

Պատմական գիտությունների դոկտոր


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.։ Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 9/VII 1968 թ.։

ՎՖ 05830 Պատվեր 1554 Տիրաժ 11403 Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան Թումանյան փ. № 51։


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԱՖԱՐԳ ՊՈԼ.—Հիշողություններ Մարքսի մասին, Ե. Հայաստան հրատ., 1968, 143 էջ։
Կ. Մարքսի փեսան՝ Պոլ Լաֆարգը (1842—1911), այստեղ նկարագրել է նրա հեղափոխական և տեսական գործունեությունը, ցույց տալով նրա մարդկային լավագույն գծերը։

ՈՒՐՈԵՎԱ Ա. Վ.—Գիրք, որ դարեր է ապրում, Ե., Հայաստան հրատ., 1968, 355 էջ։
Նկարագրված է Մարքսի հանճարեղ ստեղծագործության՝ Կապիտալի ստեղծման պատմությունը, ցույց է տրված դրա խոշորագույն դերը։

ՅԱԿՈՒՇԵՎՍԿԻ Ի. Տ.—Լենինիզմը, հեղափոխությունը և «սովետագիտությունը»։ Փիլիսոփայական ակնարկ, Լ. Լենհրատ, 1968, 303 էջ։ Հեղինակը մերկացրել է հակակոմունիզմի նոր ճյուղը՝ «սովետոլոգիան», որի դիրքերից իմպերիալիզմի գաղափարախոսները փորձում են ժխտել սոցիալիստական հեղափոխության դերը, նվաճումներն ու միջազգային նշանակությունը։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ— Մ., Мысль հրատ., 1968, 397 էջ։
ՍՍՀՄ ԳԱ Համաշխարհային տնտեսագիտության և միջազգային հարաբերությունների ինստիտուտի գիտաշխատողների շարադրած այս գրքում վերլուծված են Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո մարդկային հասարակության զարգացման երկու հակադիր ուղղությունների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի հիմնական գծերը, ցույց է տրված սոցիալիզմի ներգործունության աննախընթաց աճը։

ՍՄԿԿ-Ն ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՈԳԵՇՆՉՈՂ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ (ուսումնական ձեռնարկ), Մ., Высшая школа հրատ., 1968, 124 էջ։
Այստեղ արտացոլված են սովետական ժողովրդի քաղաքական, տնտեսական, կուլտուրայի և այլ բնագավառներում ձեռք բերած խոշոր նվաճումները 50 տարում։

ԿՃՈՅԱՆ Ա. Ս. — Մխիթար Հերացի, Բժիշկ XII դարու (ծննդյան 850-ամյակի առթիվ), Ե., Հայաստան հրատ., 1968, 73 էջ։
Հեղինակն այստեղ համառոտակի շարադրում է մեծ բժշկապետի կյանքը, վերհանում նրա խոշոր ծառայությունները բժշկագիտությանը։

ՄԵՏԵԼԻՑԱ Լ. Վ. ԵՎ ՈՒՐԻՇՆԵՐ— Գիտական կոմունիզմ, սեմինար պարապմունքների ուսումնա-մեթոդական ձեռնարկ, Մ., Московский рабочий հրատ., 1968, 160 էջ։
Նախատեսված է մարքսիզմ-լենինիզմի հիմունքները, գիտական կոմունիզմն ուսումնասիրողների համար։

ԼՈԳՎԻՆՈՎԱ Տ. Գ., ՍԵՄԻՋԱԵՎՍԿԻ Մ. Ա.— ՍՄԿԿ պատմության քրեստոմատիա (Օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների ունկնդիրներին)։
Ջետեղված են քաղվածքներ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Լենինի հիմնական աշխատություններից, ՍՄԿԿ համագումարների, ԿԿ պլենումների և այլ որոշումներից։

ԽԵՅՖԵՑ Ա. Ն.— Սովետական դիվանագիտությունը և արևելքի ժողովուրդները, 1921—1927, Մ., Наука հրատ., 1968, 327 էջ։
Գրքում վերլուծված են սովետա-մոնղոլական, սովետա-չինական, սովետա-թուրքական, սովետա-իրանական և այլ հարաբերություններ։

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ԿԱՐՏՈՖԻԼԻ ՔԻՄԻԱԿԱՆ ՄԱՔՐՈՒՄԸ*

*Գերմանացի քիմիկոսներին (ԳԴՀ) հաջողվել է ստանալ հատուկ հեղուկ, որը կարտոֆիլը, գազարը և ճակնդեղը ավելի արագ ու լավ է մաքրում, քան մեխանիկական բոլոր հարմարանքները։*

## *ԾՈՎԸ ԵՎ ՆԱՎԸ*

*Գիտնականները վաղուց են ծովաջուրը նավթից մաքրելու եղանակներ որոնում։ Մի շարք քիմիական նյութերի օգնությամբ փորձել են ջրից անջատել նավթը։ Վերջերս առաջարկել են ծովաջուրը նավթից մաքրել մանրացված պենոպոլիուրետանով։ Այդ նյութի մեկ խորանարդ մետրը ներծծում է մոտ մեկ տոննա հում նավթ։ Ըստ որում, 80 տոկոսը մամլակի միջոցով կարելի է պենոպոլիուրետանից «քամել»։*

## *ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑ ՇՐՋՎՈՂ ԷԿՐԱՆՈՎ*

*Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետության ֆիրմաներից մեկը ձեռնամուխ է եղել 59 և 65 սանտիմետր անկյունագիծ ունեցող էկրաններով արտասովոր հեռուստացույցերի թողարկմանը։ Այդ հեռուստաընդունիչների կինեսկոպը մոնտաժված է կորպուսի շարժական այն մասի վրա, որը կարող է որոշ անկյան տակ շրջվել։ Կոնստրուկցիան հնարավորություն է տալիս էկրանը հեշտ ու հասարակ ձևով հարմարեցնել դիտողներին։*

## *ԹՈՒՂԹ՝ ՈՒՌԵՆՈՒՑ*

*ԼԽՀ գիտնականներն առաջարկել են որպես թղթարդյունաբերության հումք օգտագործել ուռենին։ Այն հեշտ ու արագ է բազմանում, միջավայրի նկատմամբ պահանջկոտ չէ, աճում է նաև ավազուտներում, ճահճուտներում, ու էռոզիայի ենթարկված հողամասերում։ Ուռենիները ո՛չ միայն դաշտերը պաշտպանում են քամուց, այլև ապաստան տալիս բազմաթիվ օգտակար թռչուններին։*

## *ՑՏՈՐԱՑՎԱԾ ՀԱՑ*

*Հայտնի է, որ խմելու ջրին ավելացված ֆտորը պահպանում է երեխաների ատամները։ Ստոկհոլմ քաղաքի իշխանությունները չկարողացան այդ բարդ միջոցառումը կարճ ժամանակամիջոցում կիրառել։ Սակայն ելքը գտնվեց։ Հացի խանութներում հայտնվեց անհրաժեշտ քանակությամբ ֆտոր պարունակող հաց։*

## *ՀԻՎԱՆԴԱՆՈՑԱՅԻՆ ՄԱՀՃԱԿԱԼ ԿՈՆԴԻՑԻՈՆԱՑՎԱԾ ՕԴՈՎ*

*Անգլիական ֆիրմաների ստեղծած հարմարանքը կարելի է տեղադրել ցանկացած հիվանդանոցային մահճակալի վրա։ Այն բաղկացած է օդափոխիչ ջեռուցիչից (որը կանոնավորվում է ջերմակայիչով) և ջերմություն պահպանող ծածկից։ Այդպիսի մահճակալն ունի միայն սավան ու բարձ. վերմակն ավելորդ է։ Մահճակալը կարևոր և խիստ հարմարավետ է հատկապես այրվածքների դեպքում։ Ծածկի ներսում միկրոկլիմատի կանոնավորման շնորհիվ բուժում են ինֆեկցիոն հիվանդությունները, ինչպես և ասթման ու բրոնխիտը։*

## *ՄՇՏԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԱԳԱՑՆՈՒՄ Է ԾԱՌԵՐԻ ԱՃԸ*

*Կանադացի գիտնականները եկել են այն եզրակացության, որ ցերեկային լուսավորվածությունն երկարաձգելով, կարելի է արագացնել ծառերի աճը։ Վաղուց է հայտնաբերված լրացուցիչ լույսի այս բարերար ազդեցությունը այգեգործության համար, բայց անտառային տնտեսության մեջ այն համարյա անտեսվել է։ Կեչին, արհեստական լուսավորության շնորհիվ մեկ տարում հասել է 3,6 մետր բարձրության, իսկ դանդաղ աճող եղևնին երկու և կես տարում՝ մեկ մետրի։ Լրացուցիչ գիշերային լուսավորությունից հրաժարվում են ցրտերն սկսելուց երկու շաբաթ առաջ, աճը ժամանակին դադարեցնելու և ծառերը սառնամանիքից ապահովելու համար։*

